ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԿՈՒՐՍՈՎ

**Վ. Ի. ՄՈՐՈԶՈՎ**

*ԱՐՄԱՏԱԿԱՆ ՇԱՀԵՐՈՎ ԵՎ ՆՊԱՏԱԿՆԵՐՈՎ, գաղափարախոսության ընդհանրությամբ համախմբված, ընկերական համերաշխության ու փոխօգնության կապերով շաղկապված սուվերեն պետությունների միջազգային հարաբերությունների նոր տիպ են սոցիալիստական ընկերակցության երկրների միջև ստեղծված հարաբերությունները, որոնք ժողովուրդների հավասարության և բարեկամության լենինյան գաղափարների կենսագործման ցայտուն օրինակ են։ Այդ հարաբերությունների նյութական հիմք են ծառայում իրավահավասարության և փոխշահավետության սկզբունքների վրա խարսխված սոցիալիստական երկրների փոխադարձ տնտեսական ու գիտատեխնիկական կապերը։ Հայտնի է, որ արտաքին տնտեսական կապերը քաղաքական և տնտեսական խնդիրների լուծման արդյունավետ միջոց են, կարևոր դեր են խաղում սոցիալիստական ընկերակցության զարգացման գործում։ Անընդհատ մեծանում է ինչպես ընկերակցության, այնպես էլ նրա մեջ մտնող յուրաքանչյուր երկրի տնտեսական պոտենցիալը։ Որքան ավելի լայն ու ավելի սերտ է նրանց եղբայրական համագործակցությունը, այնքան ավելի լիովին են բացահայտվում սոցիալիզմի՝ որպես առաջավոր հասարակարգի, առավելությունները։*

*Ներկայումս սոցիալիստական երկրների տնտեսական և գիտատեխնիկական կապերը հասել են բարձր մակարդակի և բնութագրվում են խոշոր մասշտաբայնությամբ և լայն ընդգրկումով։ Կենսագործելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարները, ընկերակցության կոմունիստական և բանվորական կուսակցություններն ամենօրյա ուշադրություն են դարձնում այդ կապերի զարգացմանն ու խորացմանը։ Դա հատկապես վերաբերում է վերջին տասնամյակին, երբ Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրները ձեռնամուխ եղան սոցիալիստական լայն տնտեսական ինտեգրացման նպատակով համաձայնեցված կուրսի իրականացմանը։ ՏՓԽ-ի երկրների ձեռք բերած հաջողությունները սերտորեն պայմանավորված են նրանց կոմունիստական և բանվորական կուսակցությունների ղեկավար դերով, նրանց ժողովուրդների անձնվեր աշխատանքով, դրանք կոնկրետ ազգային պայմաններում սոցիալիստական կարգի վիթխարի ստեղծարար հնարավորություններն օգտագործելու, սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները յուրաքանչյուր երկրում ստեղծագործաբար կիրառելու արդյունք են։*

*Սոցիալիստական տնտեսական ինտեգրացիան բազմաբնույթ հարաբերությունների ամբողջ սիստեմի նյութական հիմքն է, որը դարձել է ՏՓԽ-ի յուրաքանչյուր անդամ-երկրի և ողջ սոցիալիստական ընկերակցության առաջընթացի*

կարևոր գործոն, նրա մեջ մտնող երկրների կյանքի օրգանական տարրը։ Այստեղ կոմունիստական և բանվորական կուսակցությունները մշտական ուշադրություն են հատկացնում սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի զարգացման հարցերին։ Մասնավորապես այդ հարցերը քննարկվում են եղբայրական կուսակցությունների ղեկավարների հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի հանդիպումների ժամանակ, Վարշավայի պայմանագրի անդամպետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի նիստերում։ Ունենալով հայացքների սկզբունքային միասնություն, ՏՓԽ-ի երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունները որոշում են սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի պրակտիկ իրականացման խնդիրներն ու միջոցները, նպաստում նրանց էկոնոմիկաների կայուն և դինամիկ զարգացմանը։

Սովետական Միությունը, ինչպես վերստին հաստատվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, հետևողականորեն վարում է սոցիալիզմի մյուս երկրների հետ արտաքին տնտեսական կապերն ամեն կերպ զարգացնելու և ամրապնդելու կուրս, որն օրգանապես բխում է մարքս-լենինյան ինտերնացիոնալիստական գաղափարներից։ Տասներորդ հնգամյակի տարիներին զգալիորեն խորացան և ընդլայնվեցին ՍՍՀՄ-ի ինտեգրացիոն տնտեսական կապերը ՏՓԽ-ի մյուս անդամ-երկրների հետ։ Այստեղ կարևոր տեղ է զբաղեցնում սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագրի և երկարաժամկետ նպատակային ծրագրերի կենսագործման նպատակով համագործակցությունը։ Այդ ծրագրերը մշակվել և ընդունվել են ՏՓԽ-ում։ Այդ երկրների համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերը նոր աստիճան են եղբայրական երկրների տնտեսական կապերի զարգացման գործում, մարմնավորում են մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանը համագործակցելու համաձայնեցված ստրատեգիան։

Այստեղ առանձնապես կարևորվում է ՍՍՀՄ-ի դերը, քանզի մեր երկիրը, ունենալով խոշոր տնտեսական, տեխնիկական և գիտական պոտենցիալ, սոցիալիզմի մյուս երկրներին մատակարարում է վառելիք, հումք, մեքենաներ, սարքավորումներ և այլ ապրանքներ, տեխնիկապես լայնորեն աջակցում տարբեր օբյեկտների կառուցման գործում, հաղորդում իր առաջավոր արտադրական և գիտատեխնիկական փորձը։ Տարեցտարի սովետական շուկան ՏՓԽ-ի երկրներին հնարավորություն է ընձեռում կայուն կերպով իրացնելու իրենց մեքենաշինական և այլ արտադրատեսակները։

Սովետական տեխնիկական աջակցության ողջ ծավալի գրեթե $2/3$-ը բաժին է ընկնում սոցիալիզմի երկրներին։ Այն, առաջին հերթին, ընդգրկում է այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են էլեկտրաէներգետիկան (այդ թվում՝ ատոմային), մետաղագործությունը, նավթավերամշակումը, քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը, շինարարական ինդուստրիան։ Այդ աշխատանքի արդյունքները քիչ չեն։ Օրինակ, ՍՍՀՄ-ի օգնությամբ ստեղծված մետաղագործական ձեռնարկությունների արտադրանքը 1981 թ. կազմել է Բուլղարիայի և Կուբայի պողպատի գրեթե ողջ ծավալը, Լեհաստանի՝ կեսից ավելին, Հարավսլավիայի՝ $1/3$-ը։ Քիմիական արդյունաբերության արտադրանքի շուրջ 60 տոկոսը ՏՓԽ-ի երկրներում թողարկվում է այն ձեռնարկություններում, որոնք կառուցվել են ՍՍՀՄ-ի համագործակցությամբ։

Գյուղատնտեսության, ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման գործում ՏՓԽ-ի մի շարք երկրների համար մեծ նշանակություն ունի Սովետական Միության օգնությունը։ Այսպես, Մոնղոլիայում ՍՍՀՄ-ի աջակցությամբ իրականացվում են անասնապահության կերի բազայի ամրապնդման միջոցառումներ, ստեղծվել են մի շարք պետական տնտեսություններ, անասնապահական ֆերմաներ, յուրացվել են խոպան հողերի զգալի տարածություններ։ Վիետնամին օգնություն է ցույց տրվել պետական տնտեսությունների կազմակերպման և բազմամյա արևադարձային կուլտուրաների մշակման, իսկ Կուբային՝ նրա շաքարի արդյունաբերության զարգացման գործում։ Հարկ է նշել, որ գյուղատնտեսական արտադրանքի թողարկման և վերամշակման բնագավառում ՏՓԽ-ի մյուս երկրների հետ ՍՍՀՄ-ի տնտեսական ինտեգրացիայի հետա-





գա խորացումը, այդ հարցում ձեռք բերված պայմանավորվածությունների իրականացումը նպաստում են ՍՍՀՄ պարենային ծրագրի կատարմանը։

Ինչպես նշվեց ՏՓԽ-ի 36-րդ նստաշրջանում (1982 թ. հունիս) ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ա. Տիխոնովի ելույթում, սովետական կողմը շահագրգռված է այն բանում, որպեսզի ՏՓԽ-ի անդամ-երկրները, որոնք ունեն կաթի, մսի և բանջարեղենի արտադրանքի, շաքարի ճակնդեղի, ձիթապտղի կուլտուրաների վերամշակման, համակցված կերի արտադրության, սառնարանների, պահեստարանների, էլևատորների, ալրաղաց ձեռնարկությունների և հացի գործարանների կառուցման ու շահագործման փորձ, մասնակցեն ՍՍՀՄ-ում համապատասխան օբյեկտների կառուցմանն ու վերակառուցմանը։

Սովետական Միությունը ՏՓԽ-ի մյուս երկրներից ստանում է նրանց այն ձեռնարկությունների արտադրանքի մի մասը, որոնք ստեղծվել են ՍՍՀՄ-ի մասնակցությամբ։ Դա կատարվում է վճարման կարգով։ Այդ արտադրատեսակներից են պղնձի և մոլիբդենի կոնցենտրատները, ֆլյուորիտը, ծածկոցները, բրդե շալերը և գորգերը՝ Մոնղոլիայից, կրածնավորած սոդան, տրակտորները, հնձիչ մեքենաները, էլեկտրասայլակները՝ Բուլղարիայից, անագը, թեյը, սուրճը, անանասը, ցիտրուսային պտուղները՝ Վիետնամից, նիկելի կոնցենտրատը՝ Կուբայից։ ՏՓԽ-ի երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցությունը հարստանում է նոր ձևերով. օրինակ, համատեղ ֆիրմաների և ձեռնարկությունների ստեղծումը։ Այսպես, 1981 թվականին ՍՍՀՄ-ի և Վիետնամի միջև կնքվեց նավթի և գազի հետախուզման ու հանույթի համատեղ ձեռնարկություն հիմնելու մասին պայմանագիր, որի գործունեությունն իրականացվել է սովետամոնղոլական համատեղ ուժերով կառուցված «Էրդենեթ» ձեռնարկության կուտակած փորձը հաշվի առնելով։

ՏՓԽ-ի 36-րդ նստաշրջանում, որ տեղի ունեցավ 1982 թ. հունիսին Բուդապեշտում, ՏՓԽ-ի անդամ-երկրների կառավարությունների ղեկավարների մակարդակով, շեշտվեց այդ երկրների տնտեսական զարգացման գործում նրանց միջև տնտեսական ինտեգրացիայի հետագա խորացման, փոխադարձ արտադրական, գիտատեխնիկական և առևտրական կապերի ընդլայնման աճող դերը։ ՏՓԽ-ի երկրների փոխադարձ համագործակցությունը դառնում է համաշխարհային էկոնոմիկայում նրանց դիրքերի ամրապնդման առավել էական գործոն։ Դա հատկապես կարևոր է այն նկատառումով, որ վերջին ժամանակներս ՏՓԽ-ի երկրների տնտեսական զարգացումը և նրանց համագործակցությունը տեղի են ունենում համաշխարհային շուկայում կոնյունկտուրայի վատթարացման պայմաններում, իմպերիալիստական պետությունների՝ ուժի քաղաքականության, սպառազինությունների մրցավազքի ուժեղացման, ռազմական ծախսերի մեծացման, այլ պետությունների ներքին գործերին ակտիվորեն միջամտելու պայմաններում։ Մասնավորապես, ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մի շարք այլ երկրների կառավարող շրջանները ՏՓԽ-ի երկրների նկատմամբ սրել են խտրականությունը, սկսել են կիրառել «պատժամիջոցներ», սահմանափակել առևտրատնտեսական կապերը հատկապես ԼԺՀ-ի և ՍՍՀՄ-ի հետ, ուժեղացրել են Կուբայի տնտեսական բլոկադան։ 1982 թվականին Վերսալում առաջատար կապիտալիստական պետությունների խորհրդակցությունում ընդունված դեկլարացիան ցույց տվեց, որ նրանք մտադիր են ՏՓԽ-ի անդամ-երկրների հետ է՛լ ավելի բարդացնել առևտրական, վարկային և այլ տնտեսական հարաբերությունները։ Հիրավի, նման գործողություններն ուղղված են միջազգային լարվածության սրմանը, խանգարում են համաշխարհային փոխշահավետ համագործակցության զարգացմանը, հակասում աշխարհի բոլոր ժողովուրդների շահերին։

ՏՓԽ-ի երկրներն իրենց 36-րդ նստաշրջանում հավանություն տվեցին 1986—1990 թվականներն ընդգրկող ժամանակաշրջանում իրենց ժողովրդատնտեսական պլանները կոորդինացնելու կոնկրետ ծրագրին։ Այն նպատակ է հետապնդում արտադրության ինտենսիվացման միջոցով բարձրացնել ՏՓԽ-ի երկրների բնակչության բարեկեցությունը, համաձայնեցված բնագավառներում և օբյեկտներում կոորդինացնել կապիտալ ներդրումները, առավել զար-

գացնել գիտատեխնիկական և արտադրական կոոպերացիան, դրա հիման վրա արմատավորել գիտության ու տեխնիկայի նորույթները։ Ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերում, Վիետնամի, Մոնղոլիայի և Կուբայի էկոնոմիկաների զարգացման արագացման և արդյունավետության բարձրացման նպատակով, ծրագրում նախատեսված է նրանց ավելի լայն մասնակցությունն աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանմանը։ Նկատի է առնվում ՏՓԽ-ի այդ երկրների նկատմամբ հետագայում ևս կիրառել համագործակցության համաձայնեցված արտոնյալ պայմաններ։

Գիտատեխնիկական առաջընթացի հիմնական ուղղություններում հատկապես կարևորելով ուժերի միավորումը, ՏՓԽ-ի երկրներն իրենց 36-րդ նստաշրջանում գլխավոր համաձայնագրեր ստորագրեցին ժողովրդական տնտեսության մեջ միկրոպրոցեսորային տեխնիկայի զարգացման և լայնորեն օգտագործման, ինչպես նաև արդյունաբերական ռոբոտների մասնագիտացված ու կոոպերացված արտադրություն մշակելու և ստեղծելու վերաբերյալ։ Միկրոպրոցեսորների հարցում նստաշրջանում հավանության արժանացած աշխատանքների ծրագիրը և ռոբոտատեխնիկայի բնագավառում համագործակցելու համաձայնեցված միջոցառումները նախատեսում են գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական համատեղ մշակումների իրականացում, էլեկտրոնիկայի նորագույն միջոցներով հագեցած մեքենաների, սարքերի ու կառավարման համակարգերի ավտոմատ տեխնոլոգիական կոմպլեքսների մասնագիտացված սերիական արտադրության կազմակերպում։ Այս համաձայնագրերի, ինչպես նաև հաշվողական տեխնիկայի համար միկրոէլեկտրոնային սարքերի արտադրության մասնագիտացման ու կոոպերացման հարցերի վերաբերյալ այդ նույն ժամանակ ստորագրված համաձայնագրերի իրականացումը ՏՓԽ-ի երկրներին հնարավորություն կընձեռի ամրապնդելու իրենց ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ կառավարման ոլորտում արտադրական պրոցեսների ավտոմատացման հիմքը, կրճատելու ձեռքի աշխատանքի կիրառումը, տնտեսելու էներգիա, հումք և նյութեր։

Հաշվի առնելով կենցաղային տեխնիկայի ժամանակակից տեսակների նկատմամբ բնակչության աճող պահանջարկը, ՏՓԽ-ի երկրները գունավոր հեռուստատեսության ասպարեզում բազմակողմանի համագործակցության ծրագիր են ընդունել։ Միջազգային մասնագիտացման հիման վրա նախատեսված է մշակել և կազմակերպել գունավոր հեռուստացույցների, կինեսկոպների, տեսագրող տեխնիկայի սարքավորումների, ինչպես նաև դրանց արտադրության անհրաժեշտ տեխնոլոգիական սարքավորումների ու հսկող-չափող ապարատների արտադրությունը։

Ներկայումս ՏՓԽ-ի երկրներում կուտակված է սոցիալիստական շինարարության, էկոնոմիկայի կառավարման, արտադրության կոնկրետ տեսակների կազմակերպման, ժողովրդատնտեսական առանձին պրոբլեմների լուծման հարուստ փորձ։ Այդ են վկայում գյուղատնտեսական կոոպերատիվների և ձեռնարկությունների հմտորեն կազմակերպված աշխատանքը Հունգարիայում, արտադրության, էներգիայի, հումքի և նյութերի տնտեսման ռացիոնալացման մեթոդները ԳԴՀ-ում, սոցիալական ապահովության սիստեմի կատարելագործումը ՉՍՍՀ-ում, ագրոարդյունաբերական կոոպերացիայի ձևերը Բուլղարիայում։ Արժեքավոր է եղբայրական երկրների պատվերների ժամկետից շուտ և բարձրորակ կատարման, ինտերնացիոնալ կոլեկտիվների մասնակցությամբ ինտեգրացիոն օբյեկտների ստեղծման ասպարեզում ՏՓԽ-ի երկրներում ձեռնարկությունների կոլեկտիվների ծավալած սոցիալիստական մրցության փորձը։ Այստեղ իսկ կոնկրետ կերպով դրսևորվում է ՏՓԽ-ի երկրների աշխատավորական լայն մասսաների՝ ժողովուրդների համախմբվածության և բարեկամության ամրապնդմանը նպաստող, ակտիվ մասնակցությունն ինտեգրացիոն պրոցեսի իրականացմանը։

ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ ՏՓԽ-ի երկրների ծրագրած համագործակցության միջոցառումները հաջողությամբ մարմնավորվում են կոնկրետ գործերում. ՏՓԽ-ի երկրների էկոնոմիկայի, գիտության ու տեխնիկայի



բոլոր ճյուղերում նկատելի են այդ աշխատանքի պտուղները։ Արտադրության միջպետական մասնագիտացման և կոոպերացման հարցերի վերաբերյալ արդեն կնքվել են ավելի քան 100 բազմակողմ և 1.000-ից ավելի երկկողմ համաձայնագրեր։ Գործնականում ավարտվել է ՏՓԽ-ի անդամ-երկրների 1981—1985 թթ. ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը։ ՍՄԿԿ XXVI համագումարում որպես եղբայրական երկրների հաջող համատեղ աշխատանքի առավել բնորոշ օրինակներ նշվեցին այնպիսի խոշոր օբյեկտներ, ինչպիսիք են գրեթե 3 հազար կիլոմետր երկարությամբ «Սոյուզ» գազամուղը, «Խաղաղություն» էներգասիստեմը, որը համալրվել է էլեկտրահաղորդման նոր գծերով, Ուստ-Իլիմսկի ցելյուլոզի գործարանը ՍՍՀՄ-ում, «Էրդենեթ» հանքահարստացուցիչ կոմբինատը Մոնղոլիայում, նիկելի գործարանները Կուբայում։

ՏՓԽ-ի անդամ-երկրները հանդիսանում են աշխարհի առավել դինամիկ զարգացող խումբը։ 1971—1980 թթ. նրանց գումարային ազգային եկամուտն աճեց 66, իսկ արդյունաբերական արտադրության ծավալը՝ 84 տոկոսով, մինչդեռ «Ընդհանուր շուկայի» երկրներում նշված ժամանակաշրջանում ազգային եկամտի աճը կազմեց 28 տոկոս, իսկ այս երկրների արդյունաբերական արտադրությունը, ՏՓԽ-ի երկրների համեմատությամբ, զարգացավ գրեթե 3 անգամ դանդաղ։ Անցած տասնամյակի ընթացքում ՏՓԽ-ի երկրների տնտեսական աճի տեմպերը կրկնակի բարձր են եղել, քան զարգացած կապիտալիստական երկրներինը։ ՏՓԽ-ի երկրներին բաժին է ընկնում էլեկտրաէներգիայի համաշխարհային արտադրանքի 21 տոկոսը, քարածխի և անտրացիտի հանույթի՝ 27, նավթի հանույթի՝ գրեթե 20, պողպատի ձուլման՝ ավելի քան 28, հանքային պարարտանյութերի արտադրման 35 տոկոսը։ Այս երկրները «Ընդհանուր շուկայի» երկրներից ավելի են արտադրում. էլեկտրաէներգիա՝ 1,4 անգամ, գազ՝ 2,7, քարածուխ՝ 3,1, պողպատ և չուգուն՝ 1,6, ցելյուլոզա՝ 2,9, բրդյա գործվածք և կոշիկ՝ 1,4 անգամ։

ՏՓԽ-ի երկրների հետազոտական և նախագծային-կոնստրուկտորական բազան բավականին հզոր է (աշխարհում նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արտոնագրերի 20 տոկոսը), որը նրանց հնարավորություն է ընձեռում լուծելու ամենաբարդ տեխնիկական խնդիրները։ Եղբայրական երկրների մշտական ուշադրությունը գյուղատնտեսական արտադրության նկատմամբ, դրա փոխադրումը արդյունաբերական հիմքի վրա տվել են շոշափելի արդյունքներ. ՏՓԽ-ի մի շարք երկրներում հեկտարից ստացվող հացահատիկային կուլտուրաների տարեկան միջին բերքը 40 ցենտների է հասնում, որը փոքր-ինչ բարձր է «Ընդհանուր շուկայի» երկրների միջին բերքատվությունից։ 1976—1980 թթ. ՏՓԽ-ի երկրներում գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը 25 տոկոսով գերազանցեց անցած հնգամյակի համանման ցուցանիշը։ ՏՓԽ-ի երկրներում իրականացվում է բնակչության նյութական բարեկեցության անշեղ վերելք։ ՏՓԽ-ի եվրոպական երկրներում բնակչության մեկ շնչի հաշվով սպառումը հասել է արդյունաբերապես զարգացած մի շարք կապիտալիստական երկրների մակարդակին։

ՏՓԽ-ի երկրներում մեծ ուշադրություն է դարձվում արդյունաբերության կառուցվածքի արդիականացմանը։ Վերջինս գերազանցապես կատարվում է ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նորագույն հասումների առավել արագ ներդրմանը նպաստող ճյուղերի՝ էներգետիկայի, էլեկտրոնիկայի, մեքենաշինության, ռադիոտեխնիկայի, քիմիական արդյունաբերության աճի հաշվին։ Դա անհրաժեշտ նախադրյալներ է ստեղծում արտադրության ինտենսիվացման և աշխատանքի արտադրողականության աճի համար։ Տնտեսական հաջողությունների շնորհիվ նրանք վերածվել են զարգացած ինդուստրիալ-ագրարային երկրների։ Սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի իրականացումը նպաստում է ՏՓԽ-ի արդյունաբերապես ավելի պակաս զարգացած անդամ-երկրների (Վիետնամ, Կուբա, Մոնղոլիա) էկոնոմիկաների զարգացման արագացմանն ու արդյունավետության բարձրացմանը։ Դրանց ցույց է տրվում համակողմանի տնտեսական օգնություն և տեխնիկական օժանդակություն, ընդ որում, որոշ դեպքերում, անհատույց։ Այստեղ հաջողությամբ ստեղծվում է սոցիալիզմի կայուն նյութատեխնիկական բազա։

Հարկ է նշել, որ նյութական արտադրության զարգացումը ՏՓԽ-ի երկրներում տեղի է ունենում բարդացած պայմաններում, և նրանք ստիպված են լինում գործ ունենալ դժվարին պրոբլեմների հետ։ Դա, մասնավորապես, կապված է հումքի, վառելիքի և էներգիայի ստացման վրա կատարվող ծախսումների աճի հետ, համաշխարհային անբարենպաստ տնտեսական իրավիճակի հետ, համաշխարհային շուկայում հումքի և էներգակիրների գների բարձրացման, ՏՓԽ-ի երկրներում էկոնոմիկայի զարգացման ներքին ռեզերվների հնարավորությունների անբավարար օգտագործման հետ։ Բացի այդ, մի շարք եղբայրական երկրներում սպառվել էին աշխատանքային ռեսուրսների լրացուցիչ հոսքի աղբյուրները։ Արտադրության ցածր արդյունավետությունը, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի համեմատաբար դանդաղ յուրացումը արգելակեցին էկոնոմիկայի փոխադրումը զարգացման ինտենսիվ ուղու վրա, առաջացրին մի շարք ապրանքների պակաս։ Վերջին տարիների դաժան ձմեռներն ու ամառային երաշտները նույնպես անբարենպաստ էին նրանց տնտեսական շինարարության համար։ Այդ գործոնների ազդեցության ներքո 70-ական թվականների երկրորդ կեսին ՏՓԽ-ի երկրների տնտեսական աճի տեմպերը փոքր-ինչ նվազեցին։

Սակայն անհրաժեշտ է շեշտել, որ ՏՓԽ-ի երկրների կրած դժվարությունները ոչ մի ընդհանուր բան չունեն կապիտալիզմի շարունակական հիվանդությունների՝ տնտեսական և էներգետիկ ճգնաժամերի, աճող գործազրկության, ինֆլյացիայի, միջազգային վալյուտային սիստեմի խանգարումների և այլնի հետ։ Միևնույն ժամանակ ՏՓԽ-ի երկրների առջև ծագած պրոբլեմները նվազ կարևոր չեն և իրենց նկատմամբ պահանջում են հատուկ ուշադրություն ու ջանքեր, միջոցառումների կիրառում՝ ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի ձեռքբերումների առավել լրիվ և առավել արագ օգտագործման, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման առավելությունների, աշխատավորների ստեղծագործական ակտիվության ուժեղացման նպատակով։

Ահա թե ինչու, էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման ուղիներին վճռական նշանակություն տալով, Սովետական Միությունը և մյուս եղբայրական երկրները կուրս են վերցնում՝ առաջիկա տասնամյակը վերածելու ինտենսիվ արտադրական ու գիտատեխնիկական կոոպերացիայի ժամանակաշրջանի։ Այժմ բուն կյանքն է խնդիր դնում՝ ՏՓԽ-ի երկրների ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը լրացնել նրանց տնտեսական ողջ քաղաքականության համաձայնեցվածությամբ։ Օրակարգի հարց են դառնում տնտեսական մեխանիզմների կառուցվածքների մերձեցումը, փոխադարձ կոոպերացիային մասնակցող մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների միջև գոյություն ունեցող ուղղակի կապերի հետագա զարգացումը, համատեղ ֆիրմաների ստեղծումը, ինչպես նաև եղբայրական երկրների ջանքերի ու ռեսուրսների միավորման այլ ձևերի օգտագործումը։

ՏՓԽ-ի երկրների 80-ական թվականների ստրատեգիական կողմնորոշումը նախատեսում է առանձնահատուկ ուշադրություն դարձնել նրանց տնտեսական զարգացման հիմնական գործոններին։ Ինչպես հայտնի է, այդպիսի զարգացման համար անհրաժեշտ են համապատասխան ռեսուրսներ. բանվորական ուժ, հիմնական ֆոնդեր, օգտակար հանածոներ։ Բայց դա գործոնների մի խումբն է։ Մյուս խմբի մեջ մտնում են արտադրության արդյունավետությունը, աշխատավորների ստեղծագործական ակտիվությունն ու որակավորումը, պրոգրեսիվ տեխնիկան և տեխնոլոգիան, արտադրության կառավարման կատարելագործումը, ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, միջազգային համագործակցության արդյունքը։ Արդի ժամանակաշրջանում գործոնների հատկապես երկրորդ խումբն է վճռական նշանակություն ստանում։ Բանն այն է, որ 80-ական թվականներին ՏՓԽ-ի երկրների տրամադրության տակ գտնվող էներգիայի, հումքի, բանվորական ուժի ռեսուրսները սահմանափակ են։ Ուստի պահանջվում է արտադրության և տեխնոլոգիայի ստեղծած ճյուղային կառուցվածքի էական վերակառուցում ու արդիականացում։ Խնդիրն այն է, որ-



պեսզի բնական հումքն ու էներգիան խնայողաբար օգտագործվեն, դրանք ավելի խնամքով և խորապես վերամշակվեն, կրճատվեն ձեռքի ու նվազ որակավորված աշխատանքի ծախսերը։

Ինքնին հասկանալի է, որ տնտեսական շինարարության կոնկրետ պայմանները ՏՓԽ-ի տարբեր երկրներում ունեն իրենց յուրահատկությունները. Օրինակ, Վիետնամում և Կուբայում լրացուցիչ բանվորական ուժի ընդգրկմամբ էկոնոմիկայի էքստենսիվ աճի ռեսուրսները սպառված չեն։ Այստեղ հատուկ նշանակություն ունեն ինդուստրիալ հիմքի վրա գյուղատնտեսական արտադրության ընդլայնումը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի զարգացումը։ Պատմական փորձը վկայում է, որ սոցիալիզմի օրոք աշխատանքի միջազգային բաժանումը կարող է համեմատաբար կարճ ժամկետում ապահովել ագրարային պետությունների վերածումը ինդուստրիալի, նպաստում է երկրների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցմանը։ Այս կապակցությամբ Վիետնամին, Կուբային և Մոնղոլիային սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով մեծ օգնություն են ցույց տալիս ՏՓԽ-ի մյուս երկրները։

Սոցիալիստական ընկերակցության յուրաքանչյուր երկրի տնտեսական զարգացումը անխզելիորեն կապված է նրանց տնտեսական փոխհամագործակցության խորացման ու ընդլայնման, տնտեսական և գիտատեխնիկական փոխներգործության համատեղ երկարաժամկետ ծրագրերի հետևողական իրականացման հետ։ Տնտեսական զարգացման ինտենսիվացման կուրսը ՏՓԽ-ի երկրների ինտեգրացիոն համագործակցության առաջին պլանն է մղում այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են՝ արտադրության արդյունավետության, արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարձրացումը։ Այս առումով հետևողականորեն աճում է արտադրության միջազգային մասնագիտացման ու կոոպերացման, ժողովրդատնտեսական կարևոր օբյեկտների համատեղ շինարարության դերը։

Սովետական Միությունը և ՏՓԽ-ի մյուս երկրները, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երիտասարդ պետությունների հետ զարգացնում են լայն տնտեսական և գիտատեխնիկական կապեր։ Դրանք երկու կողմերի համար էլ շահավետ են։ Զարգացող երկրների հետ ունեցած հարաբերություններում կարևոր տեղ է գրավում ՏՓԽ-ի երկրների մասնակցությունը խոշոր տնտեսական և այլ օբյեկտների ստեղծմանը։ 1980 թվականին ՏՓԽ-ի երկրները առևտրատնտեսական հարաբերություններ ունեին 90 զարգացող պետությունների հետ, ընդ որում ՏՓԽ-ի երկրներն ընդլայնում են նրանց հետ համագործակցելու մասին երկարաժամկետ միջկառավարական համաձայնագրեր կնքելու պրակտիկան։

Զարգացող երկրների քաղաքական և տնտեսական ինքնուրույնության ամրապնդմանը էապես նպաստում է արդյունաբերական, էներգետիկ, գյուղատնտեսական և այլ օբյեկտների կառուցման գործում ՏՓԽ-ի երկրների աջակցությունը։ ՍՍՀՄ-ի մասնակցությամբ կառուցված օբյեկտների թվում քիչ չեն այդ երկրների էկոնոմիկայի համար առաջատար համալիրները։ Օրինակ, հիդրոէներգետիկ կոմպլեքսը Սիրիայում տալիս է այդտեղ արտադրվող էլեկտրաէներգիայի 70 տոկոսից ավելին, մինչև 2 միլիոն տոննա պողպատ արտադրելու հզորություն ունեցող մետալուրգիական գործարանը Ալժիրում, 2,5 միլիոն տոննա բոքսիտներ արդյունահանող ձեռնարկությունը Գվինեայում և այլն։ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երիտասարդ շատ երկրների ՍՍՀՄ-ը հնարավորին չափ աջակցում է ազգային կադրերի՝ ինժեներների, տեխնիկների, որակյալ բանվորների, բժիշկների, ուսուցիչների պատրաստմանը։ Արդեն պատրաստվել է շուրջ 1,5 միլիոն մարդ, որից 900 հազարը՝ զարգացող երկրներում։ ՍՍՀՄ-ի մասնակցությամբ այդ երկրներում ստեղծվել են մոտ 150 ուսումնական հաստատություններ և ստեղծվում են ևս շուրջ հարյուրը։ Այդ երկրներում աշխատում են տասնյակ հազարավոր սովետական մասնագետներ։ Հատկապես ամուր և բազմակողմանի են տնտեսական և գիտատեխնիկական կապերը Սովետական Միության և Հնդկաստանի միջև։

Սովետական Միությունը փոխշահավետ տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության մեջ է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի 65 զարգացող երկրների հետ։ Սոցիալիստական կողմնորոշման պետություններին աջակցելը օգնում է նրանց ապահովելու հրամանատարական բարձունքները էկոնոմիկայում, արտադրաուժերի պլանային զարգացմանը, ամրապնդելու ժողովրդական տնտեսությունը որակավորված ազգային կադրերով։ Զարգացող երկրներին ՍՍՀՄ-ի աջակցությունը ամենից առաջ նպաստում է արդյունաբերական և էներգետիկ հզորությունների ստեղծմանը, գյուղատնտեսության զարգացմանը, ընդերքի հետախուզմանը, ազգային կադրերի պատրաստմանը։ Շատ երիտասարդ պետություններ ՍՍՀՄ-ի օգնությամբ կարողացան ստեղծել ազգային արդյունաբերության կայուն հիմքեր։ Ներկայումս սովետական աջակցությամբ կառուցված օբյեկտները տալիս են Հնդկաստանում ձուլվող ամբողջ պողպատի մոտ 35 տոկոսը, Իրանում՝ 70, Սիրիայում արտադրվող էլեկտրաէներգիայի ամբողջ արտադրանքի 70, Աֆղանստանում՝ 60, Իրաքում՝ մինչև 55 տոկոսը։ Ընթացիկ հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, նախատեսված է ՍՍՀՄ-ի աջակցությամբ զարգացող երկրներում էլեկտրաէներգիայի արտադրության հզորությունները մեծացնել 16 տոկոսով, պողպատի ձուլմանը՝ 1,5 անգամ, չուգունինը՝ 2,2, ածխի հանույթինը՝ 3,6 անգամ։ Զարգացող երկրներում ծանր արդյունաբերության զարգացման գործում ՍՍՀՄ-ի աջակցության առավել վառ օրինակ է Բհիլայի մետաղագործական գործարանը։ Այն ո՛չ միայն սովետա-հնդկական տնտեսական համագործակցության առաջնեկն է, այլև զարգացող երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցության առաջին մեծ մասշտաբի օբյեկտը։

Գյուղատնտեսության բնագավառում երիտասարդ պետություններին ՍՍՀՄ-ի աջակցությունը նպաստում է նրանց մոտ ստեղծելու գյուղատնտեսական արտադրանքի սեփական արտադրության նյութական բազա։ Դա սկզբունքորեն տարբերվում է կապիտալիստական երկրների «օգնությունից», որը սովորաբար սահմանափակվում է միայն ընթացիկ պահանջմունքների բավարարման համար ապրանքներ մատակարարելով։

Զարգացող երկրների հետ ՍՍՀՄ-ի տնտեսական կապերի բնորոշ առանձնահատկությունն է պետական սեկտորի՝ որպես այդ երկրների անկախ զարգացման հիմքի, ամրապնդման միտումը, ծնվող ազգային էկոնոմիկայի պաշտպանությունը կապիտալիստական երկրների տնտեսական էքսպանսիայից, երկրներ, որոնք ձգտում են երիտասարդ պետությունների էկոնոմիկան ներգրավել իրենց ազդեցության ոլորտը, դրանցում ամենից առաջ զարգացնել մասնավոր ձեռնարկատիրությունը։

ՏՓԽ-ի երկրները, ինչպես նախկինում, ջանում են կապիտալիստական երկրների հետ փոխշահավետ կապերը զարգացնել կողմերի ստանձնած փոխադարձ պարտավորությունները խստորեն կատարելու հիման վրա։ Փաստ է, սակայն, որ որոշ կապիտալիստական պետությունների արդի քաղաքականությունը չի նպաստում սոցիալիզմի երկրների հետ նորմալ առևտրատնտեսական հարաբերությունների զարգացմանը։ Այսպես, օրինակ, նախաձեռնողը ՍՍՀՄ-ը չէ, որ ԱՄՆ-ի հետ առևտուրը չի զարգանում, կրճատվում կամ լճացում է ապրում։ Դա հետևանք է այլ երկրների հետ ունեցած առևտրատնտեսական հարաբերությունները քաղաքական նպատակներով օգտագործելու ամերիկյան քաղաքականության։

Սովետական կողմը միշտ պատրաստակամություն է հայտնել հավասարության և փոխշահավետության սկզբունքներով զարգացնելու տնտեսական հարաբերությունները ԱՄՆ-ի և մյուս կապիտալիստական պետությունների հետ։ Նման կապեր երկար ժամանակ կայունորեն պահպանվում են, օրինակ, Ֆինլանդիայի, ԳՖՀ-ի, Իտալիայի հետ։ Այսպես, սովետա-ֆիննական փոխադարձ առևտրի ծավալը 1979 թ. կազմել է շուրջ 3 միլիարդ ռուբլի, 5 տարում ավելանալով 3 անգամ։ Տասը տարում (1970—1979 թթ.) ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի առևտրի ծավալն աճել է գրեթե 8 անգամ, հասնելով ավելի քան 4 միլիարդ ռուբլու։ ԳՖՀ-ն կապիտալիստական երկրների մեջ ՍՍՀՄ-ի խոշորագույն առևտրական պարտնյորն է։ ՍՍՀՄ-ի հետ համագործակցությանը մասնակցում են շուրջ 1.500 արևմտագերմանական ֆիրմաներ։ Միլիարդավոր ռուբլիների երկարաժամկետ համաձայնագրեր են կնքվել ԳՖՀ-ից ՍՍՀՄ խողովակներ և նավթագազամուղների համար սարքավորումներ մատակարարելու վերաբերյալ։ Այդ համաձայնագրերով նախատեսվում է ՍՍՀՄ-ից գազ մատակարարել ԳՖՀ-ին։ Սովետական պատվերների շնորհիվ ԳՖՀ-ում ապահովվում է 350 հազար աշխատատեղ, իսկ ամբողջությամբ վերցրած՝ ՏՓԽ-ի երկրների հետ համագործակցությունը հնարավորություն է ընձեռում ապահովելու կես միլիոն մարդու զբաղվածություն, որը շատ կարևոր է ԳՖՀ-ի համար, եթե հաշվի առնենք երկրում գոյություն ունեցող զանգվածային գործազրկությունը։ Կնքվել են ավելի քան 130 սովետա-արևմտագերմանական լիցենզիոն համաձայնագրեր, որոնցով իրականացվում է ժամանակակից տեխնոլոգիայի փոխշահավետ փոխանակում։ Ներկայումս Մոսկվայում բացված են 30-ից ավելի արևմտագերմանական ֆիրմաների և բանկերի ներկայացուցչություններ։ Սովետա-ֆրանսիական առևտրի ծավալը վերջին հնգամյակում ավելացավ գրեթե 3 անգամ։

1970—1979 թթ. զարգացած կապիտալիստական երկրների հետ ՍՍՀՄ-ի առևտուրն աճեց 5,5 անգամ՝ 4,7 մլրդ ռուբլուց հասնելով 25,8 միլիարդի։ Ներկայումս այդ երկրներին բաժին է ընկնում ՍՍՀՄ-ի ամբողջ արտաքին առևտրական շրջանառության 30 տոկոսից ավելին։ Վերջին տարիներին սկսվել է կիրառվել արևմտյան երկրների հետ համատեղ ՍՍՀՄ-ի մասնակցությունը զարգացող երկրներում արդյունաբերական օբյեկտների կառուցմանը։ Այս ասպարեզում առաջին քայլերն արվեցին ԳՖՀ-ի, Ֆինլանդիայի, Ճապոնիայի, Շվեդիայի ֆիրմաների հետ։ Սովետական կազմակերպություններն այդ ֆիրմաների հետ կնքել են պայմանագրեր, որոնք նախատեսում են սովետական սարքավորումներ մատակարարել ու սովետական մասնագետներով ծառայություններ մատուցել զարգացող երկրներում էներգետիկ, արդյունաբերական, տրանսպորտային և այլ օբյեկտների շինարարության պրոցեսում։ Այս ամենը աշխատանքի միջազգային բաժանման ընդլայնման ու խորացման օբյեկտիվ պրոցեսով պայմանավորված փոխադարձ ապրանքային հոսքերի մեծացման օրինաչափ արդյունք է։

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները, 1983 թ. հունվարի 4—5-ին Պրագայում տեղի ունեցած խորհրդակցությունում, անդրադառնալով իրենց պաշտպանական քաղաքական դաշինքի գործունեությանը, դրական գնահատական տվեցին արտաքին գործերի մինիստրների կոմիտեի և պաշտպանության մինիստրների կոմիտեի՝ 1980 թ. մայիսին Վարշավայում տեղի ունեցած նախորդ խորհրդակցության պահից ի վեր անցած ժամանակաշրջանի աշխատանքին և նախատեսեցին հետագա խնդիրները։

«Սոցիալիզմի խոշորագույն նվաճումներից մեկը,— շեշտված է այդ երկրների ընդունած քաղաքական դեկլարացիայում,— հանդիսացավ նոր տիպի միջազգային հարաբերությունների կազմավորումը, որոնք հիմնված են սովեբեն սոցիալիստական պետությունների կամավոր իրավահավասար համագործակցության և ինտերնացիոնալ համերաշխության վրա։ Խորհրդակցության մասնակիցները, արտահայտելով իրենց կոմունիստական կուսակցությունների ու ժողովուրդների կամքը, հավաստում են իրենց վճռականությունը՝ այսուհետև էլ ամրապնդելու սոցիալիզմի երկրների համախմբվածությունը, զարգացնելու և խորացնելու քաղաքական, տնտեսական, մշակութային համագործակցությունը, միավորելու ջանքերը խաղաղության ու առաջադիմության գործի համար մղվող պայքարում»։

Նրանք շեշտեցին, որ անհրաժեշտ է երկարաժամկետ հիման վրա ՏՓԽ-ի շրջանակներում ընդլայնել սոցիալիստական երկրների տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցությունն ու կոոպերացումը՝ նպատակ ունենալով աջակցել յուրաքանչյուր երկրի տնտեսական ու սոցիալական զարգացմանը, առաջացող տնտեսական պրոբլեմների լուծմանը, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության ծրագրերի իրականացմանը, նրանց ժողովուրդ-

*ների կյանքի նյութական և հոգևոր մակարդակի բարձրացմանը։ Դա կարևոր ավանդ կհանդիսանա տնտեսական բնագավառում սոցիալիստական երկրների փոխգործողության ասպարեզում։*

*ՍՄԿԿ XXVI համագումարում հաստատված առաջիկա տարիներին ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում առաջադրվում է հետևյալ խնդիրը. «Ելնելով սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքներից և միջազգային լարվածության թուլացումն ամրապնդելու անհրաժեշտությունից, առևտրատնտեսական և գիտատեխնիկական փոխշահավետ հաստատուն կապեր իրականացնել կապիտալիստական այն զարգացած երկրների հետ, որոնք շահագրգռություն են հանդես բերում համագործակցելու Սովետական Միության հետ։ Շարունակել վառելիքային, մետալուրգիական, քիմիական արդյունաբերության մեջ և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում խոշոր մասշտաբի նախագծերի իրագործման ասպարեզում եղած պայմանավորվածությունների իրականացումը և նոր համաձայնագրերի կնքումը։ Գտնել այդ երկրների հետ համագործակցությունը զարգացնելու այլ ուղիներ»* (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 316)։*

*Սովետական Միությունը շահագրգռված է նշված համագործակցությամբ, քանի որ այն հնարավորություն է ընձեռում արագացնելու իր բնական ռեսուրսների շահագործումը (իսկ դա հատկապես կարևոր է դժվարամատչելի շրջանների համար), ստեղծելու և վերակառուցելու առանձին արդյունաբերական օբյեկտներ, բարելավելու սովետական արտահանության կառուցվածքը, մասնավորապես, արտաքին շուկայի պահանջներին համապատասխանող մեքենաշինության և այլ պատրաստի արտադրանքների արտադրությունն ու մատակարարումները մեծացնելու միջոցով։ Այսպիսով, աշխատանքի միջազգային բաժանման հնարավորություններն օգտագործվում են սովետական ժողովրդական տնտեսության տարբեր սարքավորումների և մեխանիզմների նկատմամբ պահանջմունքների, ինչպես նաև սպառողական ապրանքների նկատմամբ բնակչության պահանջարկի առավել լիովին բավարարման համար։*

*Այդ իսկ պատճառով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, ինչպես նաև մեր կուսակցության ու կառավարության մյուս միջոցառումները, մեծ նշանակություն ունեն ՍՍՀՄ արտաքին տնտեսական կապերի հետագա կոմպլեքսային զարգացման համար, որոնք նպաստում են առաջադրված սոցիալ-տնտեսական խնդիրների արագ լուծմանը։*

Մոսկվա

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Ա. Գ. ԱՂԱԲԱԲՈՎ**
Հայկական ՍՍՀ պետպլանի գիտության ու տեխնիկայի բաժնի պետ

*ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ, կենսագործելով կուսակցության կանխագծումները, զգալի հաջողությունների են հասել հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի որակի բարելավման գործում։ Հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման բնագավառում ձեռք բերված հասումները հիմնըված են ամենից առաջ գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա։*

*Արագ տեմպերով են զարգացել ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական առաջընթացը բնորոշող ճյուղերը։ Դրանք են՝ էլեկտրոնային և ռադիոտեխնիկական արդյունաբերությունը, ճշգրիտ հաստոցաշինությունը՝ թվային ծրագրային կառավարման կիրառմամբ և այլ ճյուղեր։ Հանրապետությունում նշանակալի աշխատանք է կատարվել արտադրության կառավարումը կատարելագործելու նպատակով։ Կազմակերպվել են 77 արտադրական և գիտաարտադրական միավորումներ, որոնք թողարկում են ամբողջ արտադրանքի 55 տոկոսը։ Անցած հնգամյակի տարիներին աճել է գիտական պոտենցիալը։ Գիտական հիմնարկություններում աշխատում են 18 հազարից ավելի գիտական աշխատողներ։*

*Վերջին տարիներս կազմակերպվել են մի շարք նոր գիտական հիմնարկություններ, որոնց թվում՝ Երևանի պետական համալսարանին կից կոնդենսացված միջավայրերի ֆիզիկայի գիտահետազոտական ինստիտուտը, կիրառական ֆիզիկայի, սփյուռքահայության մշակույթի պատմության բաժինները, ինչպես նաև հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական ինստիտուտը և կոնստրուկտորական մի շարք բյուրոներ՝ Հայկական ՍՍՀ ԳԱ համակարգում։ Երքաղսովետի գործկոմին կից կազմակերպվել է քաղաքային տնտեսության կառավարման ավտոմատացված սիստեմների գիտահետազոտական ինստիտուտ։*

*Հանրապետության գիտական հիմնարկությունները գիտահետազոտական աշխատանքներ են ծավալել ավելի քան 120 պրոբլեմների ու 1.500 թեմաների վերաբերյալ, որոնք հաստատված են ժողովրդատնտեսական պլանով, ավարտվել են 430 թեմաների հետազոտությունները։*

*1976—1980 թթ. Հայկական ՍՍՀ ԳԱ գիտական հիմնարկությունների շինարարության համար կապիտալ ներդրումները կազմել են 14,4 մլն ռուբլի։ Ավարտված է մանրէաբանության ինստիտուտի շենքի, ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտի պոլիմերների մասնաշենքի շինարարությունը, կառուցվել են հասարակական գիտությունների ինստիտուտի շենքը, հիմնակազմ գրադարանը և այլն։ Գիտությունների ակադեմիայի, մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից հինգ տարում ասպիրանտուրա է ընդունվել 1.094 մարդ, որոնցից այն ավարտել է 931-ը։ Ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է նոր տեխնիկայի ներդրման 3.093 կարևորագույն միջոցառում, այդ թվում՝ 2.465-ը միութենական-հանրապետական և հանրապետական մի-*

նիստրությունների ու գերատեսչությունների միջոցով։ Ձեռնարկություններում ներդրված են առաջավոր տեխնոլոգիայի, արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, արտադրության տեխնիկատնտեսական մակարդակի բարձրացման բազում առաջարկություններ։

Ժողովրդական տնտեսության զարգացման հոյակապ ծրագիր, զարգացման տնտեսական ու սոցիալական մակարդակի բարձրացում են նախատեսված հիմնական ուղղություններում նաև Հայկական ՍՍՀ-ի համար, որտեղ արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի 29—32 տոկոսով, կմեծանա ռադիոտեխնիկական արդյունաբերության, սարքաշինության և հաստոցաշինության բաժինը։ Կգործարկվեն Հրազդանի մեքենաշինական գործարանի կարողությունները։ Կառուցվել են ավտոբեռնիչների արտադրության գործարաններ և պարֆյումերիայի ֆաբրիկա։ Վերակառուցվել են մետալուրգիական և քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները։ Կավարտվի Իջևան—Հրազդան երկաթուղագծի շինարարությունը։

Գյուղատնտեսության մեջ նախատեսվում է համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը մեծացնել 10—12 տոկոսով։ Տասնմեկերորդ հնգամյակում Հայկական ՍՍՀ-ում ազգային եկամուտը կավելանա 28—30 տոկոսով։

Զարգացման պլանով նախատեսված է կառուցել խավավոր գործվածքների խոշոր կոմբինատ Ղափան քաղաքում, մեքենաշինական արդյունաբերության մի շարք գործարաններ։ Վերակառուցվելու են Քանաքեռի ալյումինի գործարանը, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը (ԳԱՄ), Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը, «Պոլիվինիլացետատ», Երևանի ավտոմոբիլի գործարանները, «Էլեկտրոն» արտադրամիավորումը (ԱՄ), «Հայէլեկտրալույս» ԱՄ-ը, Հրազդանի ցեմենտի գործարանը, Կիրովականի քիմիական, Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատները և շատ այլ ձեռնարկություններ։

Հանրապետությունը վառելիքաէներգետիկ ռեսուրսներով ապահովելու նպատակով նախատեսվում է ավարտել Սպանդարյանի ՀԷԿ-ի շինարարությունը և գործարկել երկու էներգաբլոկներ Հրազդանի ՊՇԷԿ-ում։ Գազի անխափան մատակարարումն իրականացվելու է Ղազախ—Երևան գազամուղով, որն իր հերթին միանալու է Նովոպսկով—Մոզդոկ—Մահոմեդ նոր հզոր գազամուղին։

Հանրապետության տնտեսական զարգացման տեմպերը կապահովվեն կապիտալ ներդրումներով, որոնք ընթացիկ հնգամյակում, տասներորդի համեմատությամբ, ֆինանսավորման բոլոր աղբյուրներով կաճեն ու կկազմեն մոտ 6,5 մլրդ ռուբլի։

ՍՄԿԿ XXVI համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ մատնանշված է, որ տնտեսական աճի առավել ինտենսիվ գործոնների անցնելու կողմնորոշումը, ամբողջ աշխատանքի արդյունավետությունը և որակը բարձրացնելու նպատակ է հետապնդում։ Այսպիսով, էկոնոմիկայի հետագա զարգացումը հիմնվելու է արտադրության ինտենսիվացման վրա, ուր հիմնական օղակը գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է։

Ինչպես նշել է ակադեմիկոս Տ. Ս. Խաչատուրովը, կարելի է տարբերել նոր տեխնիկայի երկու տեսակ։ Դրանցից առաջինին են պատկանում նոր տեխնիկայի արդեն հայտնի և իրենց արդարացրած այն նմուշները, որոնք դեռևս չեն արտադրվում բավարար քանակությամբ, և մեր խնդիրն է ապահովել դրանց մասսայական արմատավորումն ու լավագույն օգտագործումը։ Այստեղ, մասնավորապես, նկատի են առնվում էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն ու էլեկտրոնային այլ ապարատները, լազերները, սինթետիկ նյութերը, մետաղափոշիները և այլն։ Կարևոր խնդիր է նաև սկզբունքորեն նոր տեխնիկայի մի այլ տեսակի մշակման արագացումն ու արմատավորումը, ինչպիսիք են, օրինակ, ջերմամիջուկային էներգետիկան, կոմպակտ ու խնայողական շարժիչների նոր տեսակները, որոնք վառելիք չեն պահանջում, տիեզերքի յուրացումը, եղանակի ու կլիմայի կառավարումը և այլն։

Հիմնական ուղղություններում նախատեսված է նոր տեխնիկայի երկու տեսակների զարգացում, մեքենաների բարձրարդյունավետ սիստեմների ու տեխնոլոգիական պրոցեսների կիրառում, որոնք ապահովում են արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը՝ արդյունաբերական



ռոբոտների, ավտոմատ կառավարման ներկառույց սիստեմների լայն կիրառման և միկրոպրոցեսորների, մինի-ԷՀՄ-երի և այլ տեխնիկայի օգտագործման հիման վրա։ Նոր մեքենաներ ու սարքավորումներ ստեղծելիս կավելացվեն դրանց կարողությունները, միաժամանակ կփոքրացվեն ծավալները, կնվազեցվեն մետաղատարությունը, էներգասպառումը և կպակասեցվեն վերջնական արդյունքի մեկ միավորի վրա կատարվող ծախսումները։ Գիտատեխնիկական առաջընթացի հետագա արագացումը կորոշվի ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացման աճի տեմպերով։

Համապետական տեխնիկական քաղաքականության իրականացումն անխզելիորեն կապված է ծանր ինդուստրիայի և, ամենից առաջ, մեքենաշինության զարգացման հետ։ Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է զգալիորեն բարելավել մետաղամշակման սարքավորումների թողարկման կառուցվածքը։ Առաջանցիկ տեմպերով կզարգանա ավտոմատների և կիսավտոմատների, թվային ծրագրային կառավարում ունեցող հաստոցների, ժամանակակից դարբնոցամամլակային սարքավորումների արտադրությունը։ Կաճի առավել դիմացկուն գործիքների արտադրությունը։

Գիտատեխնիկական պրոգրեսի կարևորագույն ուղղություններից մեկը արդյունաբերության քիմիական, նավթաքիմիական և նավթավերամշակման ճյուղերի առաջանցիկ զարգացումն է։

Հանրապետությունում աշխատանքներ են տարվում 52 նպատակային ու կոմպլեքսային գիտատեխնիկական ծրագրերի գծով, որոնցով նախատեսվում է ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի, ՍՍՀՄ պետպլանի և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահության կողմից հաստատված առավել կարևոր գիտատեխնիկական նվաճումների մասշտաբային իրականացում ժողովրդական տնտեսության մեջ։

Կանխանշվում է նաև գիտահետազոտական աշխատանքներ կատարել հանրապետական նպատակային կոմպլեքսային հետևյալ գիտատեխնիկական ծրագրերի վերաբերյալ. էներգետիկայի զարգացում՝ հաշվի առնելով հանրապետության հելիո և գեոպոտենցիալը, գունավոր մետաղների առավել խոր կորզում, տեղական ոչ հանքային նյութերի հանքավայրերի կոմպլեքսային օգտագործում, Արարատյան դաշտի աղուտների յուրացում, շինմոնտաժային աշխատանքների հետագա ինդուստրացում, ձեռքի աշխատանքի մեքենայացում հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերում, շրջակա միջավայրի պահպանություն և բնական ռեսուրսների, այդ թվում նաև Սևանի ավազանի ռեսուրսների, ռացիոնալ օգտագործում, կառավարման ավտոմատացված սիստեմի մշակում ու արմատավորում ժողովրդական տնտեսության մեջ, արտադրանքի որակի և արտադրության արդյունավետության կառավարման կոմպլեքսային սիստեմ։

Միաժամանակ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի, մինիստրությունների ու գերատեսչությունների գիտական հիմնարկություններում ուսումնասիրվելու են գիտատեխնիկական կարևորագույն նոր պրոբլեմներ։ Ֆիզիկատեխնիկական գիտությունների բնագավառում. քվանտային էլեկտրոնիկայի տարրային բազայի ստեղծում ու կատարելագործում, նոր, կատարյալ բյուրեղների որոնում, դրանց աճի օպտիմալացում և դրանց հիման վրա օպտիկական քվանտային նոր գեներատորների ստեղծում, ավտոմատիկայի տեխնիկական նոր միջոցների ստեղծում և դրանց հուսալիության, վերարտադրության ապահովման մեթոդների զարգացում, ինչպես նաև լազերների, գերզգայուն սպեկտրոմետրերի, տվիչների և այլ միջոցների, նրբաթաղանթ էլեկտրոնիկայի և ինտեգրալ օպտիկայի համար նոր տարրերի ստեղծում։

Քիմիատեխնոլոգիական գիտությունների բնագավառում. պոլիմերային նյութերի ստեղծման համար մի շարք միացությունների սինթեզի պրոբլեմի լուծում, դժվարահալ նյութերի, բնական նյութերի հիման վրա հատուկ մաքուր նյութերի ստացում, սինթեզի նոր մեթոդների մշակում դեղապատրաստուկներ ստանալու համար, ալյումինապարունակող հումքի, բազմամետաղ սուլֆիդային կոնցենտրատների կոմպլեքսային վերամշակում, բարձր կպչունություն ունե-

ցող, ցրտադիմացկուն կաուչուկների ու լատեքսների ստացման ռեցեպտուրաներ ու տեխնոլոգիաներ։

Երկրաբանության և ինժեներային սեյսմոլոգիայի ասպարեզում. Հայկական ՍՍՀ կառուցվածքաֆորմացիոն քարտեզի կազմում՝ մետաղների ծագման, ջրաերկրաբանական, ինժեներաերկրաբանական և սեյսմոտեկտոնիկ շրջանացման ու օգտակար հանածոների որոնման համար, ստորգետնյա ջերմության գործնական կիրառման վերաբերյալ հանձնարարականների մշակում, երկրաշարժերի նախանշանների բացահայտում, սեյսմոակտիվ տարբեր շրջանների սեյսմիկ վտանգը կանխագուշակող ու քանակապես գնահատող մեթոդների ու տեխնիկական միջոցների մշակում։

Կենսաբանության մեջ. միկրոօրգանիզմների նոր, բարձրարդյունավետ ձևերի ստացում և կիրառում՝ կերի և սննդամթերքների, բույսերի պաշտպանության միկրոբային միջոցների և հողերի պարարտացման պրեպարատների արտադրության համար, անշարժացված բջիջների ու ֆերմենտների օգնությամբ մանրէաբանական սինթեզի և փոխակերպության մեթոդներով գործնականորեն արժեքավոր միացությունների ստացում, անտառների արդյունավետության բարձրացում, հակաէրոզիոն անտառների ստեղծման նոր ուղիների որոնում։

Առողջապահության բնագավառում. աշխատավորների առողջության պահպանման կարևորագույն խնդիրների լուծում, սրտանոթային հիվանդությունների, չարորակ նորագոյացությունների կանխարգելիչ, ախտորոշման ու բուժման, տրավմատիզմի, պրոֆեսիոնալ հիվանդացության նվազեցման մեթոդների ու միջոցների մշակում, բնակչության բուժսանիտարական սպասարկման կատարելագործում։

Գյուղատնտեսության մեջ. գենետիկայի ու սելեկցիայի նվաճումների օգտագործման միջոցով գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքի աճեցման մեթոդների կատարելագործում, հողաբարելավման լավագույն համակարգերի ստեղծում, հողային ռեսուրսների արդյունավետ օգտագործման, դրանց պահպանության ու հողերի պտղաբերության բարձրացման կոմպլեքսային միջոցառումների, գյուղատնտեսական կուլտուրաները վնասատուներից, հիվանդություններից ու մոլախոտերից պաշտպանելու միջոցների մշակում, նոր կերամիջոցների ստացում՝ գյուղատնտեսական մթերքների թափոնների օգտագործմամբ, լեռնային պայմաններում աշխատանքների առավելագույն մեքենայացմամբ ու ավտոմատացմամբ գյուղատնտեսական կուլտուրաների աճեցման տեխնոլոգիայի մշակում։

Շինարարության բնագավառում. քաղաքային ու գյուղական շինարարության զարգացման մեթոդոլոգիայի մշակում, բնակելի ու հասարակական շենքերի ու կառույցների նոր տիպերի ստեղծում, տեղական արդյունավետ շինարարական նյութերից ու արդյունաբերության թափոններից թեթև ու թեթևացրած շինարարական կոնստրուկցիաների մշակում ու արմատավորում, ուսումնասիրություններ շինարարության տեխնոլոգիայի ու կազմակերպման բարելավման, շինարարական աշխատանքների ինդուստրացման մակարդակի բարձրացման ուղղությամբ, նոր սեյսմակայուն կոնստրուկցիաների մշակում և շենքերի ու կառույցների սեյսմակայունության բարձրացում։

Շինանյութերի արդյունաբերության մեջ. բնական քարհանքերի մեքենայացված անթափոն շահագործման տեխնոլոգիայի, տուֆաբլոկներ ստանալու համար նոր քարհատ մեքենաների մշակում և առկա մեքենաների արդիականացում, ինչպես նաև տեխնոլոգիական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման համար այլ սարքավորումների մշակում։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ. նավերի համար OC սերիայի գեներատորների բազայի վրա անկոնտակտ սինխրոն գեներատորների 8—30 կվտ կարողությամբ դիզելային և բենզաէլեկտրական ագրեգատների ու կայանների, ծովային նավերի համար սնման կոմպլեքսային աղբյուրի, 500 և 800 կվտ-անոց էներգաբլոկների համար մեկ և երկու արագություն ունեցող ասինխրոն էլեկտրաշարժիչների, ավտոնոմ էներգետիկայի էլեկտրական մեքենաների ավտոմատացված նախագծման համակարգի երկրորդ հերթի մշակում։



Հաստոցաշինական արդյունաբերության ասպարեզում. վիբրոդիագնոստիկայի հիման վրա մեխանիզմների ու մեքենաների, այդ թվում տատանման առանցքակալների վրա ռոտորային սիստեմների ճշգրտության, հուսալիության ու երկարակեցության գնահատման ու կանխատեսման մեթոդների, ԷՀՄ-երի կիրառմամբ հաստոցների ու մեքենաների վիբրացիայի ու աղմուկների դիագնոստիկ հետազոտությունների մեթոդների ու միջոցների մշակում։

Հայկական ՍՍՀ ԳԱ գիտական հիմնարկությունների գիտական ու փորձարարական բազայի ընդլայնման նպատակով 1981—1985 թթ. նախատեսված են 14 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ, որոնք հիմնականում կծախսվեն փորձարարական բազաների կառուցման ու ընդլայնման համար, դրանց թվում՝ ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտի բյուրեղների փորձնական արտադրության մասնաշենքի, ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտի հատուկ կոնստրուկտորական բյուրոյի մասնաշենքի, ստորգետնյա գեոֆիզիկական դիտարանի, բուսաբանության ինստիտուտի կոլեկցիոն ջերմոցի և այլ օբյեկտների կառուցման համար։

Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվելու են նոր տեխնիկայի 3.400 կարևորագույն միջոցառումներ, այդ թվում՝ 2.680-ը միութենական-հանրապետական և հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների գծով, դրանցից 290-ը՝ արդյունաբերական արտադրանքի նոր տեսակների յուրացման, 600-ը՝ առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, 500-ը՝ արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, 440-ը՝ արտադրության և թողարկվող արտադրանքի կարևորագույն տեսակների տեխնիկական մակարդակի հիմնական ցուցանիշների, 140-ը՝ հաշվողական տեխնիկայի, 660-ը՝ աշխատանքի գիտական կազմակերպման արմատավորման վերաբերյալ և այլն։ Նախատեսվում է զգալիորեն մեծացնել արդյունաբերական արտադրության ծավալը հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ, միաժամանակ բարելավելով թողարկվող արտադրանքի որակը, իջեցնելով ինքնարժեքը։

Նշված խնդիրները կլուծվեն մի շարք նոր, հայրենական ու արտասահմանյան լավագույն նմուշներին համապատասխանող արտադրատեսակների յուրացման միջոցով։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ. 4Ա սերիայի, POM5 և P3OM5 տիպերի նոր էլեկտրաշարժիչներ, ձկնավերամշակող նավերի համար ասինխրոն եռաֆազ շարժիչներ, 15-ից մինչև 80 վտ հզորությամբ լուսային հոսանքի բարձր կայունություն ունեցող լյումինեսցենտային լամպեր, ինչպես և գործարկումը կարգավորող ապարատների սերիա՝ գազալիցքաթափման լամպերի համար։

Հաստոցագործիքային արդյունաբերության մեջ. մետաղահատ հաստոցների և դարբնոցամամլակային սարքավորումների տիպերի նորացում, հատուկ գերճշգրիտ հաստոցների ու ծրագրային կառավարում ունեցող հաստոցների թողարկման ընդլայնում, արդյունաբերական մանիպուլյատոր ռոբոտների, դետալների բազմագործիք մշակման համար նոր բազմանպատակ հաստոցի, ավելի բարձր ու գերճշգրիտ, թվային ինդիկացիա ունեցող ունիվերսալ գործիքային ֆրեզերային հաստոցի, գերճշգրիտ խառատապտուտակահան հաստոցի արտադրության յուրացում։

Ռադիոտեխնիկական արդյունաբերության մեջ. «Նաիրի—41», «Նաիրի—4В», «ЕС—1045» ԷՀՄ-ներ և հաշվողական կոմպլեքսներ։

Շինանյութերի արդյունաբերության մեջ. շինանյութերի նոր տեսակների, մասնավորապես ապակեպրոֆիլիտի, բարձրորակ մոզաիկ սալիկների, մեծ տրամագծի ասբոցեմենտե և կերամիկական խողովակների, հատակների համար խոշոր չափսերի (150×150 մմ) կերամիկական սալիկներ, ակուստիկ դեկորատիվ-մեկուսիչ պեռլիտային սալիկներ։

Թեթև արդյունաբերության մեջ. գործվածքներ, նոր խառը գործվածքներ, քրոմակաշիներ, ինչպես և կուլտուր-կենցաղային նշանակության և տնտեսական գործածության այլ ապրանքներ։

Հանրապետության ձեռնարկություններում արմատավորվելու են սկզբուն-







քորեն նոր տեխնոլոգիական պրոցեսներ, մեքենայացման ու ավտոմատացման միջոցներ։ Էներգետիկայի բնագավառում նախատեսվում է բոլոր պրոցեսների ավտոմատացում ջերմաէլեկտրակայաններում, բեռնվածությունների բաշխման, ռեզերվների միացման, հոսանքների կարգավորման պրոցեսների ավտոմատացում՝ էներգասիստեմի դիսպետչերական կառավարման մեջ կառավարող ԷՀՄ-երի արմատավորման, առավել խնայողական ռեժիմների ընտրության միջոցով։

Քիմիական արդյունաբերության մեջ արմատավորվելու է քլորոպրենի պոլիմերացման և կաուչուկների զատման նոր պրոցես, յուրացվելու է մեմբրանային մեթոդով քլորի և մաքուր կաուստիկ սոդայի փորձնական արդյունաբերական արտադրությունը, սննդարդյունաբերության համար օքսիթթուների և մակերեսային ակտիվ նյութերի արտադրությունը, կազմակերպվելու է կոֆերմենտ պրեպարատների փորձնական արտադրությունը և այլն։

Գունավոր մետալուրգիայի բնագավառում արմատավորվելու են 8 խմ տարողությամբ շերեփ ունեցող բարձրարտադրողական էքսկավատորներ, 40 և ավելի տոննա բեռնատարության ավտոինքնաթափեր, կվերամշակվեն աղքատ հանքավայրերը, որը հնարավորություն կընձեռի մեծացնելու Քաջարանի հանքավայրի պաշարները։

Շինանյութերի արդյունաբերության մեջ մեծ ուշադրություն է նվիրվելու բնական նյութերի անթափոն արդյունահանմանն ու մշակմանը, կատարելագործված քարհատ մեքենաների ու սարքավորումների արմատավորմանը, որը հնարավորություն կընձեռի աշխատանքի արտադրողականությունը ճյուղում բարձրացնելու 2 անգամ և 1981—1985 թթ. ստանալու մոտ 3 մլն ռուբլու տնտեսական արդյունք։

Փայտամշակման արդյունաբերության մեջ նախատեսվում է լայնորեն կիրառել երեսպատման նոր նյութեր, պատրաստի դետալներ և կահույքի տարրեր՝ պլաստմասսայից։

Նախատեսվում է տեղական արդյունաբերության ձեռնարկությունները հագեցնել ժամանակակից սարքավորումներով, արմատավորել մետաղների ուլտրաձայնային, լուսային և էլեկտրաճառագայթային համաչափ մշակում։

Սննդարդյունաբերության մեջ նախատեսվում է բարձրացնել աշխատանքների մեքենայացման մակարդակը ինչպես հումքի մշակման ու տարայի տեղամասերում, նույնպես և պատրաստի արտադրանքի բեռնման ու բեռնաթափման ժամանակ՝ անընդմեջ փոխադրամիջոցների նոր տեսակների արմատավորման միջոցով։ Պահածոների արդյունաբերության մեջ պահածոների, ինչպես և մրգահյութերի արտադրությունն ավելացնելու հետ մեկտեղ նախատեսվում է լայնորեն կիրառել մթերքների պահածոյացման նոր, առաջավոր ձևեր— պտուղների ու բանջարեղենի սառեցում, հումքի պահպանման առաջավոր մեթոդների կիրառում, նպատակ ունենալով վերացնել պահածոների գործարանների աշխատանքի սեզոնայնությունը։ Նոր տեխնիկայի ներդրումից սպասվող տարեկան տնտեսական արդյունքը 1981—1985 թթ. կկազմի մոտ 15 մլն ռուբլի։

Գյուղատնտեսության մեջ արմատավորվելու են հողի հակաէրոզիոն մշակում հողմային էրոզիայի ենթակա շրջաններում, հացահատիկային կուլտուրաների նոր տեսակների ու հիբրիդների ցանք, նոր ոռոգվող ինտենսիվ այգիներ, պտուղների պահպանում տնտեսություններում՝ արհեստական ցրտի կիրառմամբ։ Նախատեսվում է արմատավորել բարձր բերքատու բանջարեղենի, մասնավորապես հեկտարից 500 և ավելի ցենտներ բերքատվություն ունեցող պոմիդորների նոր սորտեր։ Նախատեսվում է արտադրության համակողմանի մեքենայացում և հետևողական ինտենսիվացում, որը կապահովի բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացումը և արտադրանքի արտադրության ավելացումը նվազագույն ծախսումներով։

Կոլտնտեսություններում և պետտնտեսություններում կբարձրանա անասնապահական աշխատանքների մեքենայացման աստիճանը։ Գյուղատնտեսական արտադրության մեջ նոր տեխնիկայի միջոցների արմատավորումից



սպասվող տարեկան տնտեսական արդյունքը 1985 թվականին կհասնի 25 մլն ռուբլու։

Առևտրի կազմակերպման բնագավառում նախատեսվում է մինչև 1985 թվականն ավարտել բանջարեղենի ու պտուղների պահեստի շենքերի կառուցումը այնպիսի ծավալներով, որոնք ապահովեն բնակչության մատակարարումը ամբողջ տարվա ընթացքում։

Մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության մեջ կավարտվի պոլիմերային թաղանթներով պանիրների արտադրությունը, կզարգանա կողմնակի հումքի՝ յուղազերծված կաթի, թանի և կաթի շիճուկի արդյունաբերական վերամշակումը, նախատեսվում է գործարկել մսի բոլոր տեսակի կիսաֆաբրիկատների, ինչպես և շոռի արտադրության հոսքային և կոմպլեքսային մեքենայացման գծեր։

Կոմունալ տնտեսությունում կատարվելու են մեծածավալ աշխատանքներ քաղաքների ու բնակավայրերի ինժեներական բարեկարգման ասպարեզում, կիրականացվեն և շրջակա միջավայրի արմատական բարելավման հետ կապված միջոցառումներ, մասնավորապես նախատեսվում է հանրապետության բոլոր քաղաքներում կառուցել կենցաղային ու արդյունաբերական կեղտաջրերի մաքրման կառույցներ։

Ավտոմոբիլային տրանսպորտում նախատեսվում է կիրառել բեռների կենտրոնացված փոխադրումների կազմակերպման նոր առաջավոր ձևեր։ Մեծ ուշադրություն է նվիրվելու ժողովրդական տնտեսության ճյուղերում արտադրության տեխնիկատնտեսական մակարդակի բարձրացմանը։

Թեթև արդյունաբերության մեջ, բամբակեղենի արդյունաբերության ձեռնարկություններում նախատեսվում է օդային, ինքնալորվող, ռոտորային ու ցենտրիֆուգային մանող մեքենաների հետագա արմատավորում։

Կապի բնագավառում նախատեսվում է ընդլայնել հանրապետության քաղաքների միջքաղաքային, ինչպես և շրջանային կենտրոնների և գյուղական վայրերի հեռախոսային կապը։ Մինչև 1985 թվականը հեռուստատեսային հաղորդման միջոցների զարգացումը կապահովի կենտրոնական հեռուստատեսության 2 ծրագրերի և հանրապետական հեռուստատեսության 2 ծրագրերի ընդունումը հանրապետության ողջ տարածքում։ Կատարելագործվելու է փոստի ձեռնարկությունների, արտադրամասերի ու տեղամասերի կոմպլեքսային մեքենայացումը, պլանավորվում է արմատավորել քվազիէլեկտրոնային ավտոմատ հեռախոսացանցը, որն զգալիորեն կբարձրացնի հեռախոսացանցի աշխատանքի որակը, կկրճատվեն արտադրական տեսակարար տարածությունները ու սպասարկող անձնակազմը։

Շինարարության մեջ շարունակվելու են շինարարական աշխատանքների հետագա ինդուստրացումն ու մեքենայացումը։ Կաճի խոշոր չափսի տարրերից, հանգույցներից, պանելներից և կրող ու պահպանող կոնստրուկցիաներ պարունակող բլոկներից կատարվող շինարարության ծավալը։ Բնակարանային-քաղաքացիական շինարարության ինդուստրացման հիմքը կլինի խոշոր պանելային տնաշինության ընդլայնումը։ Պլանավորվում է խոշոր պանելային և կարկասապանելային բազմահարկ տների, ինչպես և միջին հարկայնությամբ լրիվ հավաքովի տների շինարարությունը գյուղական վայրերում։ Լրիվ հավաքովի շենքերի կրող ու պահպանող կոնստրուկցիաներում նախատեսվում է լայնորեն կիրառել թեթև բետոններ՝ զանազան ծակոտկեն լիցքերով, տուֆով, պեմզայով, խարամով և այլն։

ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ կուսակցությունը և պետությունը մեծ ջանքեր են գործադրում մարդու աշխատանքը դարձնելու ո՛չ միայն ավելի արտադրողական, այլև ավելի բովանդակալի, հետաքրքրական, ստեղծագործական։ Կարևոր է ձեռքի սակավ որակյալ, ծանր ֆիզիկական աշխատանքի վերացումը։ Վերջինս ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական լուրջ պրոբլեմ է։

Հաշվի առնելով ձեռքի աշխատանքի մեքենայացման մարզում առաջադրված խնդրի ողջ կարևորությունը, նախատեսվում է հանրապետության արդյունաբերության մեջ մեքենայացված ու ավտոմատացված աշխատանքը 42,9

տոկոսից 1985 թվականին հասցնել 50,6-ի, համապատասխանաբար՝ գունավոր մետալուրգիայում՝ 49,6-ից 58-ի, շինանյութերի արդյունաբերության մեջ՝ 50,9-ից 65-ի, թեթև արդյունաբերության մեջ՝ 54,9-ից 75-ի, սննդարդյունաբերության մեջ՝ 32,9-ից 60-ի, փայտամշակման արդյունաբերության մեջ՝ 48,2-ից 65-ի, տեղական արդյունաբերության մեջ՝ 57-ից 58 տոկոսի։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման պրոբլեմն անմիջականորեն պայմանավորված է դրա պլանավորման ու կառավարման կատարելագործման մակարդակով։ Այստեղ կարևոր տեղ են գրավում տնտեսական խթանման հարցերը, որոնք ենթադրում են գիտահետազոտական կազմակերպությունների գործունեության կազմակերպման տնտհաշվարկային համակարգը՝ գիտությունն արտադրության հետ կապող շղթայի բոլոր օղակների տնտհաշվարկի հետ մեկտեղ։

Տնտեսական խթանման արդյունավետ համակարգ ստեղծելիս հետազոտություններ կատարողների նյութական խրախուսումը պետք է համապատասխանի ժողովրդական տնտեսության մեջ գիտական մշակումների արմատավորումից ստացվող փաստական արդյունքի չափին։ Գիտատեխնիկական առաջընթացի կառավարման արդյունավետությունը պայմանավորված է նաև դրա կազմակերպմամբ, մասնավորապես կառավարման համակարգի հետ պլանավորման համաձայնեցվածությամբ։

Գիտատեխնիկական առաջընթացի կառավարումը կազմակերպելու գործում կարևոր տեղ է գրավում ճյուղային գիտական հիմնարկությունների և արտադրության միջև կապերի հաստատումը, ուստի այստեղ անհրաժեշտ է օգտագործել դրական փորձը՝ գիտատեխնիկական նորամուծությունն ամենաարագ կերպով գաղափարից հասցնել մինչև նոր արտադրանքը։ Գիտատեխնիկական առաջընթացի կառավարման կատարելագործման ձևերը պայմանավորված են առաջիկա երկու-երեք տարում արտադրամիավորումների՝ որպես արդյունաբերության հիմնական տնտհաշվարկային օղակի, ձևավորման ավարտմամբ, քանի որ դրանք ունակ են լուծելու գիտատեխնիկական առաջընթացի նվաճումներն արտադրության մեջ արմատավորելու հետ կապված բարդ խնդիրներ։ Հայկական ՍՍՀ-ում կազմակերպվել են 77 միավորումներ մեքենաշինության, թեթև և սննդի արդյունաբերության և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում։

Գիտաարտադրական միավորումներ են ստեղծվել նաև քիմիական արդյունաբերության մեջ («Նաիրիտ»), հաստոցագործիքային արդյունաբերության («Հայհաստոց»), գյուղատնտեսական մեքենաշինության մեջ («Հայգյուղտնտմեքենայացում») և այլուր։ Ինչպես փորձը ցույց է տալիս, դրական արդյունքների կարելի է հասնել՝ օգտագործելով նաև աշխատանքների կազմակերպման այնպիսի ձևը, ինչպիսին է գիտական ստորաբաժանումները արտադրամիավորումների կազմում ներառնելը։ Այսպես, «Հայէլեկտրամեքենա» միավորման մեջ ներառված է կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը։

Հանրապետության գյուղատնտեսության մեջ գործում են տասը գիտական հիմնարկություններ, բայց չկա գիտաարտադրական և ոչ մի միավորում։ Մինչդեռ նպատակահարմար ու հնարավոր է գիտաարտադրական միավորումներ կազմակերպել այնպիսի մասնագիտացված գիտական հիմնարկությունների բազայի վրա, ինչպիսին են՝ անասնապահության, գինեգործության և խաղողագործության ինստիտուտները, բանջարեղենի ու բոստանային կուլտուրաների հանրապետական սելեկցիոն կայանը։

Գիտատեխնիկական առաջընթացի կառավարումը կատարելագործելու պրոբլեմը միութենական հանրապետություններում ունի կարևոր նշանակություն, քանի որ դրա լավագույն լուծումը կնպաստի արագացնելու ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրների իրագործումը։

---

# ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ՈՐՊԵՍ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՈԼՈՐՏԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՆ

**Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐՈՒՄ ստեղծվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ, որտեղ առկա են հսկայական բնական հարստություններ, արդիական ինդուստրիա, բարձրմեքենայացված գյուղատնտեսություն, զարգացած ինֆրակառուցվածք, բանվորների, կոլտնտեսականների, մասնագետների, գիտնականների հիանալի կադրեր, հզոր հոգևոր պոտենցիալ։ Մեր ստեղծարար աշխատանքը գլխավորում է լենինյան կոմունիստական կուսակցությունը՝ սոցիալիստական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը։

Արդի փուլում հասարակական առաջընթացի գրավականը առկա հնարավորությունների լրիվ օգտագործումն է, մարդկային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների խելամիտ տնօրինումը։ Այս խնդրի իրականացման գործում վճռական դերը պատկանում է կառավարման գիտությանն ու պրակտիկային, որը դարձել է տնտեսական շինարարության կենսական լծակը։ «Մեր փորձը ցույց է տալիս,— Կ. Մարքսին նվիրված հոդվածում նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը,— որ սոցիալիստական շինարարության հաջողությունները ձեռք են բերվում այն ժամանակ, երբ կառավարող կոմունիստական կուսակցության քաղաքականությունը հենվում է գիտական ամուր հիմքի վրա»։

Սոցիալական կառավարումը կոչված է ապահովելու հասարակական պրոցեսների հետևողական և պլանաչափ գործառնությունը։ Դա սուբյեկտիվ գործունեության ընթացքում կառավարվող օբյեկտին բնութագրական օբյեկտիվ օրենքների, օրինաչափությունների ու առաջադիմական միտումների իմացության, գիտակցական հաշվառման և նպատակադիր օգտագործման պրոցես է։ Սոցիալական կառավարումը կառավարչական ֆունկցիաներն իրականացնող սուբյեկտի և համապատասխան ներգործման առարկա օբյեկտի փոխազդեցության պրոցես է։ Որպես սոցիալական կառավարման սուբյեկտներ հանդես են գալիս պետական և հասարակական կազմակերպությունները։ Սոցիալական կառավարման օբյեկտներն են սոցիալական այն կապերն ու հարաբերությունները, որոնք մարդկանց միջև ստեղծվում են նրանց արտադրական, սոցիալ-քաղաքական, հոգևոր գործունեության պրոցեսում։

Հասարակական գործունեության բոլոր օղակներում կառավարման համակարգի մշտական կատարելագործումը, գիտական կառավարման հետագա ընդլայնումն ու խորացումը զարգացած սոցիալիստական հասարակության բնորոշ գիծն է։ Եվ բնական է, որ հասարակության զարգացման արդի փուլի կարևորագույն խնդրի՝ նոր հասարակարգի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների միացման հարցի լուծումը հետզհետե ավելի է պայմանավորվում հասարակական պրոցեսների սոցիալ-քաղաքական կառավարման կատարելագործմամբ։

Հասարակական պրոցեսների գիտական կառավարման՝ որպես պետական սոցիալական ֆունկցիայի, տեսական հիմունքները մշակել են գիտական կո-

մունիզմի հիմնադիրները։ Կառավարման հարցերը համակողմանիորեն զարգացվեցին և հանգամանորեն մշակվեցին Վ. Ի. Լենինի աշխատություններում։

Հասարակական պրոցեսների կառավարման պրոբլեմը Վ. Ի. Լենինը դիտում էր որպես նոր հասարակության կառուցման կենտրոնական հարց։ Մանրակրկիտ կերպով մշակելով գիտական կառավարման սկզբունքները և այն հաստատակամորեն կիրառելով ամենօրյա պրակտիկայում, նա պահանջում էր, որ գիտական կառավարման հիմունքներին տիրապետեն ոչ միայն կուսակցության և պետության ղեկավար գործիչները, այլ նաև աշխատավորական լայն զանգվածները։ «...Սոցիալիզմը,— գրել է Լենինը,— կարող է գոյավորվել և ամրապնդվել միայն այն ժամանակ, երբ բանվոր դասակարգը կսովորի կառավարել...» (ԵԼԺ, հ. 37, էջ 168)։

Մեր հասարակության կառավարման համակարգի միջուկը կոմունիստական կուսակցությունն է, որն իրականացնում է կառավարող բոլոր մարմինների գործունեության քաղաքական ղեկավարման ֆունկցիաները։ Զինված մարքս-լենինյան առաջավոր տեսությամբ, կուսակցությունը մշակում է գիտականորեն հիմնավորված գլխավոր քաղաքական գիծ, դրան համապատասխան կառավարման ողջ համակարգի խնդիրներն ու գործունեության ուղղությունները որոշող սկզբունքներ։ Կուսակցությունն է իրականացնում կառավարման ապարատի ղեկավար կադրերի ընտրությունը, տեղաբաշխումն ու դաստիարակումը։ Կուսակցությունը կառավարման կատարելագործումը զուգակցում է սոցիալիստական դեմոկրատիայի, մասսաների սոցիալական ակտիվության հետագա զարգացման հետ։

Մեր օրերում կուսակցությունը մեծ ու բացառիկ ուշադրություն է նվիրում հասարակության կյանքի հոգևոր ոլորտին, դրա կառավարման կատարելագործմանը։ Կուսակցության XXVI համագումարը աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի, գաղափարաքաղաքական բարձր հատկանիշների և կոմունիստական բարոյականության նորմերի ձևավորումը համարեց կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական գործունեության առանցքային հարցը։

Սոցիալիզմի պայմաններում հասարակության կյանքի հոգևոր ոլորտը, որպես բարդ ու դինամիկ սիստեմ, ուր ձևավորվում է սոցիալիստական հասարակության անդամների գաղափարաբարոյական կերպարը, տարողունակ է և ընդգրկուն։ Մեր հասարակության սոցիալ-տնտեսական պրոցեսների դինամիզմով, մարդկանց աճող կուլտուր-կրթական մակարդակով, իրազեկությամբ, ներկա փուլի որակական առանձնահատկություններից բխող սուբյեկտիվ գործոնի դերի աննախադեպ կարևորմամբ անհրաժեշտ է դառնում արմատապես բարելավել և օրվա պահանջներին համահունչ դարձնել գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ինչպես բովանդակությունը, այնպես էլ ներգործման ձևերը, միջոցներն ու մեթոդները։

Հասարակության գաղափարախոսական ոլորտի կառավարման գլխավոր նպատակը սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամի աշխարհայացքի, հոգևոր արժույթների համակարգի ձևավորումն է։ Կառավարել մարդկանց, նշանակում է ճիշտ որոշել նրանց սոցիալական դերն ու յուրաքանչյուրի տեղը հասարակության մեջ, նրանց ֆունկցիաները, իրավունքներն ու պարտականությունները, գիտական հիմնավորվածություն հաղորդել նրանց աշխատանքի, հոգևոր կյանքի, կենցաղի կազմակերպման, նրանց դաստիարակության պրոցեսին, ողջ ապրելակերպին։ Կառավարումը մասսաների կազմակերպումն է, նրանց շահերի ուսումնասիրումը և համատեղումը, ստեղծագործական պրոցեսների ակտիվացումը։ Այլ կերպ ասած, հասարակական կյանքը պետք է այնպես կազմակերպել, որ անհատն ըստ ամենայնի ծավալի իր սոցիալական գործունեությունը, ճիշտ գիտակցի իր իրավունքներն ու պարտականությունները, առաջնորդվի հասարակության իրավական ու բարոյական նորմերով։ Իսկ քանի որ անհատը յուրօրինակ հատկանիշներ, պահանջմունքներ, շահեր ունեցող որոշակի կոլեկտիվի, սոցիալական խմբի, դասակարգի անդամ է, հետևապես մարդկանց կառավարումը միաժամանակ աշխատանքա-



յին կոլեկտիվների, սոցիալական խմբերի, դասակարգերի միջև եղած հարաբերությունների կարգավորումն ու կառավարումն է։

Հոգևոր ոլորտը կազմված է կառավարման օբյեկտ հանդիսացող բազմաթիվ ենթասիստեմ-գումարելիներից։ Այդ ենթասիստեմներից կարևորվում է սոցիալիստական գաղափարախոսությունը՝ որպես բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների ապրելակերպը, նրանց արմատական շահերն արտահայտող փիլիսոփայական, տնտեսագիտական, քաղաքական, իրավական, բարոյական, գեղագիտական և այլ հայացքների ու գաղափարների միագումար։ Գաղափարախոսական պրոցեսն իրականացվում է համապատասխան ֆունկցիաներով օժտված և աշխատավորների կոմունիստական դաստիարակությամբ զբաղվող մարմինների և կազմակերպությունների ենթասիստեմի միջոցով։

Ելակետ ունենալով լենինյան այն հիմնադրույթը, թե մարքս-լենինյան գաղափարախոսությունը նյութական ուժ է դառնում այն ժամանակ, երբ նրա սկզբունքներն ու դրույթները համակում են միլիոնավոր մասսաներին, հարկ է առանձնացնել գաղափարախոսական ոլորտի ևս մեկ կարևոր ենթասիստեմ՝ գաղափարադաստիարակչական պրոցեսը։ Ըստ լենինյան բնորոշման, դա մասսաների մեջ սոցիալիստական գիտակցության ներդրման պրոցես է։ Ինչպես հայտնի է, այս բարդ պրոցեսի գործառության հիմնական նպատակն է աշխատավորների մոտ սոցիալիստական հասարակական գիտակցականության ձևավորումը, հոգևոր և նյութական գործունեության համար մարդուն անհրաժեշտ աշխարհայացքային գիտելիքներ հաղորդելը։ Դա դաստիարակության, մարդկանց գիտելիքները համոզմունքի վերածելու, նրանց գիտակցության մեջ կոմունիստական իդեալների ու բարոյականության սկզբունքների ձևավորման, միաժամանակ մարդու ուսուցման, կրթության, ինքնադաստիարակության, անձի մտածելակերպի, վարքի վրա ինքնավերահսկման պրոցես է, որի գործառության համար անհրաժեշտ է գաղափարախոսական ֆունկցիաներով օժտված և աշխատավորների կոմունիստական դաստիարակության նպատակին կոչված օրգանների ու կազմակերպությունների միագումար կազմող գաղափարախոսական, գիտական, դաստիարակչական հիմնարկների ենթասիստեմ։ Դա կուսակցական և պետական օրգանների ու հասարակական կազմակերպությունների համապատասխան ստորաբաժանումներն են, գաղափարախոսական աշխատանքի՝ իրենց բնորոշ սիստեմներով (կուսակցական և կոմերիտական ուսուցում, պրոպագանդայի և ինֆորմացիայի մասսայական ձևեր, գաղափարախոսական պրոֆիլի գիտական հիմնարկներ և այլն)։ Սոցիալիստական գաղափարախոսությունը, գաղափարադաստիարակչական պրոցեսը, գաղափարախոսական հիմնարկները, օրգաններն ու կազմակերպությունները, գաղափարախոսական հարաբերությունները միասին վերցրած գոյավորում են հասարակության կյանքի գաղափարախոսական ոլորտը, կազմում նրա գումարելի-ենթասիստեմները։ Իր հերթին դրանցից յուրաքանչյուրը օժտված է իրեն յուրահատուկ գծերով, առանձնահատկություններով, կատարում է որոշակի ֆունկցիաներ։

Գաղափարաքաղաքական, դաստիարակչական աշխատանքը կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների գործն է։ Գաղափարախոսական ոլորտում ևս կուսակցությունն է որոշում քաղաքական գիծը, առաջընթացի մայրուղին, ապահովում գաղափարախոսական աշխատանքի քաղաքական ղեկավարությունը։ Ելնելով հասարակության զարգացման պահանջներից ու հնարավորություններից, նա գաղափարախոսական ճակատի առջև խնդիրներ է դնում, կազմակերպում, կոորդինացնում և վերահսկում է գաղափարախոսական հիմնարկությունների գործունեությունը, միավորում նրանց ջանքերը, ընտրում, որակավորում և տեղաբաշխում է գաղափարախոսական կադրերին։ Կուսակցությունը, որպես գաղափարախոսական ոլորտի կառավարման սուբյեկտի գլխավոր տարր, քաղաքական ղեկավարությունից զատ, իրագործում է այդ ոլորտի կառավարումը։ Կուսակցական-քաղաքական օղակից բացի, այն ներառում է պետական-վարչական կառավարման օրգանները՝ սովետները, մինիստրություններն ու գերատեսչությունները, մասսայական ինֆորմացիայի միջոցների ու պրոպագանդայի կառավարումն ապահովող օրգանները և այլն։ Իրենց

որոշակի հայացքներով և համոզմունքներով։ Այստեղ գլխավոր ցուցանիշը կուսակցության քաղաքականության կենսագործման շուրջ աշխատանքային կոլեկտիվների համախմբվածությունն է, յուրաքանչյուրի կողմից կոմունիստական գաղափարախոսության և բարոյականության համակողմանի յուրացման աստիճանը, դրանք մարդկանց անձնական համոզմունքի, քաղաքական կուլտուրայի, ակտիվ կենսադիրքի վերածելը։ Դա առաջին հերթին աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ վերաբերմունքն է, միևնույն ժամանակ, անձի ստեղծագործական ակտիվության և պատասխանատվության աստիճանն է և այլն։ Հետևապես՝ ինչպիսին են անհատի աշխարհհայացքն ու արժույթային կողմնորոշումները, այդպիսին են նրա գործերը։

Գաղափարախոսական գործունեության արդյունավետությունը գիտականորեն գնահատելիս կարելի է առանձնացնել գնահատման առնվազն երեք մակարդակ՝ 1) բուն գաղափարադաստիարակչական ձեռնարկումների, 2) աշխատավորների կարծիքի և տրամադրությունների, գիտելիքների ու հայացքների, համոզմունքների և արժեքավորման չափանիշների, սոցիալական հոգեբանության միջոցով աշխատավորների գիտակցականության մեջ տեղի ունեցող փոփոխությունների, 3) գաղափարադաստիարակչական ձեռնարկումների ներգործությամբ հարուցված պրակտիկ գործողությունների և վարքի գնահատականները։

Հասարակության կյանքի գաղափարախոսական ոլորտի կառավարման գլխավոր օբյեկտը մարդն է, որի դաստիարակությունը բարդ ու դժվարին գործ է։ Յուրաքանչյուր անձի անհատական, տարբերակված մոտեցում ցուցաբերելը գաղափարադաստիարակչական աշխատանքի հաջողության գրավականներից մեկն է։ Հանդես գալով որպես միջավայրը ձևավորող ակտիվ գործոն, սոցիալական մեխանիզմի կարևորագույն ֆունկցիոնալ օղակ, մարդը նպաստում է այդ միջավայրի զարգացմանն ու հարստացմանը, ինչպես նաև սեփական ես-ի կատարելագործմանը։ Ըստ որում սոցիալական միջավայրը միատարր լինել չի կարող, այն ենթադրում է գերիշխող ներկան՝ սոցիալիստական հասարակական հարաբերությունները, անցյալի մնացուկները և ապագայի սաղմերը. Հասարակական գիտակցության զարգացման օրինաչափությունների գիտական ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում ավելի խոր հասկանալու գաղափարադաստիարակչական գործունեությունը խոչընդոտող, մեր ապրելակերպին խորթ երևույթների ծագման և գոյավորման հանգամանքները, ճշգրտել մեր գնահատականները։ Այսպես, սխալ կլիներ հասուն սոցիալիզմի պայմաններում մարդկանց մի մասի գիտակցության մեջ եղած նեգատիվ երևույթները համարել սոսկ նախկին, ոչ սոցիալիստական դասակարգերի և խմբերի ուղղակի ազդեցություն։ Այն փաստը, որ սոցիալիզմի օրոք անցյալի վերապրուկները ոչ միայն պահպանվում են, այլ նաև երբեմն կարող են ակտիվանալ (օրինակ՝ սպառողական և գռփողական տրամադրությունները, քաղքենիական որոշ ռեցիդիվներ և այլն), դրա պատճառը ոչ միայն սովորույթի ուժն է ու պատմական իներցիան, այլ նաև այն, որ մարդկանց գիտակցության մեջ և վարքում որոշ նեգատիվ երևույթներ գոյավորվում և վերարտադրվում են սոցիալիստական իրականությունում, չնայած որ դրանք ամենևին էլ չեն բխում նրա բնույթից։ Այս պարագայում սխալ է դրանք որակել միայն որպես մնացուկներ։ Թերևս ավելի ճիշտ կլիներ լայն առումով դրանք որակել սոցիալիստական իրականության պայմաններում գոյավորված բուրժուական և մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ։ Նման մոտեցումը հնարավորություն կընձեռի հստակորեն պարզաբանելու, թե որ դեպքում են դրանք գաղափարադաստիարակչական աշխատանքի բացթողման ու թերացման հետևանք, և որ դեպքում՝ սոցիալական ու տնտեսական պրակտիկայի բացթողումների, բաշխման հարաբերությունների անկատարության հետևանք, վեր հանել դրանց առաջացման ու գոյության օբյեկտիվ և սուբյեկտիվ արմատները։

Զարգացած սոցիալիզմի ներկա փուլում գիտության մեջ ուրվագծվում է նոր բնագավառ՝ կոմունիստական դաստիարակության տեսությունը։ Դրա գո-



յավորումը հետևանք է գաղափարադաստիարակչական աշխատանքի ուժեղացման գործում զարգացած սոցիալիզմի օբյեկտիվ պահանջների։ Գաղափարադաստիարակչական պրոցեսի կառավարման համակարգում այսօր որոշակի տեղ է հատկացվում սոցիալական ծրագրավորմանը։ Վերջինիս ֆունկցիան անհատի զարգացման լավագույն պայմանների ապահովումն է, ի տարբերություն սոցիալական պլանավորման, որը ենթադրում է այդ պայմանների ստեղծման ուղիների ու միջոցների օպտիմալացում։ Սոցիալական ծրագրավորման օբյեկտ են դառնում սոցիալական օրգանիզմները (աշխատանքային կոլեկտիվները, քաղաքներն ու ռեգիոնները), ուր ձևավորվում են անհատի բազմակողմանի գործունեության պայմանները։

Արդյունավետ կառավարելու համար անհրաժեշտ է ունենալ կառավարվող համակարգի ներքին ու արտաքին վիճակն արտացոլող կոնկրետ, հավաստի, գիտականորեն մշակված ինֆորմացիա։ Վ. Ի. Լենինը նշել է, որ պետք է ձգտել ամբողջ ուժով ուսումնասիրել մեր քաղաքականության հիմքում ընկած փաստերը։

Բացահայտելով կառավարման համար անհրաժեշտ սոցիալական-քաղաքական ինֆորմացիայի աղբյուրները, Վ. Ի. Լենինը շեշտը դրել է կոնկրետ սոցիալական հետազոտությունների, վիճակագրության, սոցիալական էքսպերիմենտի վրա։ Այս առումով առավելապես կարևորվում է սոցիոլոգիական հետազոտությունների դերը։ Սոցիոլոգիան կուսակցական գիտություն է։ Կուսակցությունը մարքսիստ սոցիոլոգների առաջնային խնդիրն է համարում կառավարման պրոցեսի գիտական ապահովումը։ Որպես հասարակական գիտություն, մարքս-լենինյան սոցիոլոգիան ուսումնասիրում է հասարակությունը, վերջինիս առանձին երևույթներն իրենց ամբողջության մեջ՝ տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական, կուլտուրական գործոնների միասնությամբ։ Այն բոլոր մակարդակներում օրգանապես զուգակցում է էմպիրիկ, կոնկրետ հետազոտությունները տեսության հետ։

Արդեն հաղթահարվել ու անցյալի գիրկն են անցել սոցիոլոգիայի՝ որպես զուտ էմպիրիկ գիտության մասին միակողմանի, թյուր պատկերացումները։ Ներկայումս մեր երկրի հասարակական կյանքում չկա քիչ թե շատ կարևոր ոլորտ, որը չդառնա էմպիրիկ սոցիոլոգիական հետազոտությունների օբյեկտ։ Այդ հետազոտություններին մասնակցում են և՛ մասնագետ-սոցիոլոգները, և՛ կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական աշխատողների, ինժեներների, տարբեր մասնագիտությունների գիտնականների լայն շրջանակ։ Առաջին հերթին լայնամասշտաբ սոցիոլոգիական հետազոտման առարկա են դառնում կուսակցական շինարարության, գաղափարախոսական աշխատանքի, կոմունիստական դաստիարակության հրատապ հարցերը։ Գաղափարախոսական պրոցեսի կառավարման գործում եղած հաջողությունների կողքին դեռևս կան չլուծված խնդիրներ։ Տակավին չկան գաղափարադաստիարակչական աշխատանքի մեխանիզմների արդյունավետ մշակումներ, որոնց միջոցով կատարվում են գաղափարախոսական երևույթների ու պրոցեսների մասին ինֆորմացիայի հավաքում, գնահատում, համապատասխան որոշման ընդունում ու իրականացում և վերահսկում։

Ինչպես նշեց ՍՄԿԿ XXVI համագումարը, պետք է հաղթահարել գաղափարախոսական գործունեության մեջ լուսավորչականության հետևանքները։ Կուսակցությունը պահանջում է վճռականապես հաղթահարել աշխատանքի գնահատման չափանիշների գռեհկացման հետևանքով ստեղծված այն վիճակը, երբ գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը չափվում է միայն տնտեսական արդյունքներով։ Անհրաժեշտ է տարանջատվել այն մտածելակերպից, ըստ որի՝ գաղափարախոսները գիտելիք են հաղորդում, իսկ տնտեսական աշխատողները պլանների կատարման համար պատասխանատվություն են կրում։ Գաղափարախոսական աշխատանքի արդյունքը միայն արտադրական հաջողություններից արտածելը սխալ է նրանով, որ վերջիններս գոյավորվում են հանգամանքների ավելի լայն շրջանակից։ Իսկ գաղափարախոսությունը, որպես հասարակական կեցությունն արտացոլող վերնաշենքային

երևույթ, ունի դրսևորման իրեն յուրահատուկ ոլորտը, դա մասսաների գիտակցականության, աշխարհայացքի և համոզմունքների, անձի ակտիվության և վարքի, աշխատանքային կոլեկտիվների մոբիլիզացվածության, կուսակցության կանխագծումները կենսագործելու պատրաստականության ոլորտն է։

Գոյություն չունեն զուտ արտադրական-տնտեսական կամ էլ զուտ գաղափարախոսական-դաստիարակչական երևույթներ։ Դրանք հանդես են գալիս միահյուսված. տնտեսական երևույթներն ունեն խիստ արտահայտված գաղափարախոսական շեշտադրումներ, իր հերթին՝ գաղափարախոսությունն ունի տնտեսական երանգավորումներ։ Արտադրությունը տարերայնորեն չի բարելավվում, կանխորոշված չէ պատահական գործոններով։ Ամենևին չհրաժարվելով գաղափարախոսական գործունեության արդյունքը նաև տնտեսական ցուցանիշներով չափելու մտքից, ասենք, որ արտադրական հաջողությունները, վերջին հաշվով, համարվում են աշխատավորների սոցիալիստական գիտակցականության մակարդակի, արժութային ճիշտ կողմնորոշման կոնկրետ արտահայտությունը։

Դեռևս չի մշակվել գաղափարախոսական աշխատանքի հիմնական տեսակների, ձևերի ու միջոցների հետազոտման միասնական մեթոդիկա։ ԷՀՄ-ի բազայի վրա գաղափարախոսական աշխատանքի տեղեկատու-ինֆորմացիոն համակարգի ստեղծումը հնարավորություն կընձեռեր գաղափարական ներազդման վիճակի և արդյունավետության մասին հսկայական ինֆորմացիա ստանալու։ Նշենք նաև այն, որ շատ հետազոտություններ, այդ թվում՝ մեր հանրապետությունում, դեռևս հիմնականում հենվում են անկետային հարցման և հարցազրույցի մեթոդների վրա, որոնց ոչ լիարժեք լինելու մասին շատ է գրվել։

Մեր հանրապետությունում ամեն տարի լույս են տեսնում հասարակության կենսագործունեության տարբեր ոլորտներին, մասնավորապես գաղափարախոսական պրոցեսին, դրանց կուսակցական ղեկավարման պրակտիկային նվիրված բազմաթիվ հետազոտություններ։ Դրանց մեծ մասի հեղինակները արխիվային փաստաթղթերից, մամուլի նյութերից, վիճակագրական տվյալներից զատ ձեռքի տակ չունեն կոնկրետ սոցիոլոգիական, սոցիալ-դեմոգրաֆիական, սոցիոգրաֆիական, սոցիալ-հոգեբանական հետազոտությունների արդյունքներ, որը խիստ իջեցնում է ուսումնասիրությունների արդյունավետությունը։

Թերություններ կան կոլեկտիվներում, շրջաններում գաղափարադաստիարակչական աշխատանքների հեռանկարային պլանավորման գործում։ Դաստիարակչական աշխատանքում ոչ բոլոր դեպքում են կատարվում համակարգված մոտեցման պահանջները, որի հետևանքով տեսադաշտից վրիպում է պրոցեսի այս կամ այն կողմը։ Գաղափարադաստիարակչական աշխատանքը հաճախ պլանավորվում է վերացական, առանց որևէ ցուցանիշի, հանգամանք, որը բացառում է կատարման վերահսկումը և արգասավորության գնահատումը։ Չի որոշվում պլանավորման ելակետային մակարդակը, այսինքն՝ խմբային գիտակցության վիճակը, առանց որի դժվար է նկատի ունենալ գաղափարադաստիարակչական աշխատանքի կոնկրետ խնդիրները։ Ոչ բոլոր դեպքերում է հստակորեն փաստարկվում աշխատանքի այս կամ այն մեթոդների ու ձևերի ընտրությունը։

Գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևոր պայման է հասարակության, նոր մարդու դաստիարակության գիտական կառավարման կատարելագործումը։ Կառավարման գործում կարևոր դեր են խաղում գաղափարախոսական աշխատանքի ղեկավարման լենինյան սկզբունքները, որոնք դարձել են կուսակցական և հասարակական կազմակերպությունների ամենօրյա գործունեության կողմնորոշիչները, կուսկոմիտեների հաջող աշխատանքի երաշխիքը։

---

# ԱՆՀԱՏԸ ԵՎ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՈՒՄ

**ԱՍՅԱ ՎՈՐՈՊԱԵՎԱ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԱՌԱՆՁԻՆ ԱՆՀԱՏՆԵՐԻ գործունեության ազդեցությունը հասարակական կյանքի վրա պայմանավորված է այն բանով, թե այդ գործունեությունը որքանով է արտահայտում հասարակական պահանջարկը, և որքանով է համապատասխանում հասարակության զարգացման օրենքներին։ «...Ի՞նչ հատկանիշներով մենք պետք է դատենք ռեալ, անհատների ռեալ «խոհերի ու զգացմունքների» մասին,— գրել է Վ. Ի. Լենինը։— Հասկանալի է, որ այդպիսի հատկանիշ միայն մեկը կարող է լինել, այն է՝ այդ անհատների գործողությունները, և քանի որ խոսքը միայն հասարակական «խոհերի ու զգացմունքների» մասին է, ապա պետք է ավելացնել նաև՝ անհատների հասարակական գործողությունները, այսինքն՝ սոցիալական փաստերը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 514)։ Ճիշտ այդպես էլ կոլեկտիվի վրա անհատի ունեցած ազդեցության աստիճանը ամենից առաջ պայմանավորված է կոլեկտիվի սոցիալական նպատակներին համապատասխանող, կոլեկտիվի լուծելիք խնդիրների կատարմանը նպաստող անհատի գործունեությամբ։ Կոլեկտիվին ընդհանուր նպատակ, իսկ անուղղակիորեն՝ նաև կոնկրետ խնդիրներ է առաջադրում հասարակությունը, և կոլեկտիվի՝ որպես միագումար սուբյեկտի, գործունեությունը ենթարկված է հասարակական որոշակի ֆունկցիաների կատարման նպատակին։ Սակայն կոլեկտիվի ոչ յուրաքանչյուր անդամն է ընդհանուր կոլեկտիվ նպատակը գիտակցում որպես իր սեփական գործունեության նպատակ։ Առանձին անհատի ազդեցությունը կոլեկտիվի վրա պայմանավորվում է նրա անհատական նպատակների հումանիստական պաթոսով, կոմունիստական գաղափարայնությամբ, անհատի գործունեության սոցիալական նշանակալիությամբ։

Կոլեկտիվի այս կամ այն անդամի հեղինակությունն ու աշխատանքային ընկերների հարգանքն ապահովող հիմնական պայմաններից է աշխատողի բարձր պրոֆեսիոնալիզմը։ Վերջինս ենթադրում է բազում գործոնների միագումար՝ արտադրական առաջադրանքների հաջող կատարում, սեփական վարպետության մշտական բարձրացում, արտադրանքի բարձր որակ, նորարարական առաջարկություններով հանդես գալը, մասնակցությունը սոցիալիստական մրցությանը և այլն։

Կոլեկտիվի վրա առանձին անհատի ազդեցությունը որոշող կարևոր գործոն է անհատի հոգևոր կուլտուրան՝ հանրակրթական զարգացման մակարդակը, աշխարհայացքի խորությունը, հոգևոր հետաքրքրությունների շրջանակը, վարքագիծը։ Այս ամենը անհատին հնարավորություն է ընձեռում ավելի լավ գիտակցելու կոլեկտիվի դերն ու տեղը հասարակության սոցիալական կառուցվածքում, հասկանալու արտադրամասի, ձեռնարկության, հասարակության հեռանկարները և այլն։ Բարձր կուլտուրայով օժտված մարդը ի վիճակի է

ազդելու ընկերների մտահորիզոնի ընդլայնման վրա, նպաստելու նրանց գե-
ղագիտական ճաշակի ձևավորմանը և այլն։

Վերջապես, կոլեկտիվի վրա անհատի ազդեցության կարևոր գործոն է
նրա բարոյական կերպարը, որին բնորոշ է սեփական աշխատանքի հասարա-
կական կարևորության խոր գիտակցում, կարգապահություն, ազնվություն, շի-
տակություն, բարձր սկզբունքայնություն, կոմունիստական համոզվածություն,
անշահախնդրություն և այլն։ Սկզբունքային ու համոզված մարդը ունակ է
ներգործելու իր ընկերների վրա ինչպես աշխատանքային, այնպես էլ արտա-
աշխատանքային ոլորտներում։

Սովորաբար կարծում են, թե անհատի պրոֆեսիոնալիզմը, բարձր կուլ-
տուրան և բարոյական կերպարը, փոխկապակցված են ու միահյուսված։ Ընդ-
հանուր առմամբ դա, իհարկե, ճիշտ է։ Պրոֆեսիոնալիզմը ենթադրում է ընդ-
հանուր կուլտուրայի բարձր մակարդակ, որը հաճախ առնչվում է բարոյակա-
նության հետ։ Սակայն երբեմն մարդու մեջ գերակշռում է դրանցից մեկը,
որը և ապահովում է անհատի հեղինակությունը կոլեկտիվում և հասարակու-
թյան մեջ։

Հեղինակություն ասելով սովորաբար հասկանում են առանձին անհատի,
քաղաքական կամ սոցիալական խմբի, նյութական ու հոգևոր կուլտուրայի
տարրերի ազդեցությունը կամ իշխանությունը։ Այստեղ քննարկենք սոցիա-
լիստական հասարակության մեջ անհատի հեղինակության ստեղծման ու դի-
նամիկայի հարցերը։ Նկատենք, որ անհատի հեղինակությունն արտահայտում
է որոշակի հասարակական հարաբերություն՝ ղեկավարման ու ենթարկման
հարաբերություն։

Ամեն մի հեղինակություն սահմանափակված է առնվազն երեք առումով.
ըստ իր ազդեցության արեալի, ըստ բովանդակության և ըստ ժամանակի վեկ-
տորի։ Դա նշանակում է, որ ամեն մի հեղինակություն միշտ էլ հեղինակու-
թյուն է «ինչ որ մեկի համար»— առանձին մարդկանց, պրոֆեսիոնալ կամ
սոցիալական խմբերի համար։ Չկա հեղինակություն «բոլորի համար», չկա
վերացական հեղինակություն։ Այս կամ այն անհատը կարող է հեղինակություն
լինել մարդկանց մեկ խմբի համար, բայց բոլորովին էլ ոչ հեղինակավոր մեկ
այլ խմբի համար։ Այդ նույնը ճշմարիտ է նաև ժամանակի առումով. հեղի-
նակությունը հաճախ ունի իր գոյության սահմանափակ ժամանակը, այսինքն՝
այսօր հեղինակություն ունեցող անհատը վաղը կարող է կորցնել այն։ Այս-
պիսով, «համապարփակ» հեղինակություններ չկան, յուրաքանչյուր հեղինա-
կություն ունի սահմանափակ անձանց մի խումբ, որի վրա տարածվում է նրա
ազդեցությունը, և որից նա օգտվում է սահմանափակ ժամանակով։ Թվում է,
թե էյնշտեյնի հեղինակությունը ֆիզիկայի կամ Շեքսպիրի հեղինակությունը
դրամատուրգիայի բնագավառում համընդհանուր և հավերժական բնույթ ունի։
Բայց նույնիսկ ներկայումս շատերը չեն լսել ո՛չ Շեքսպիրի, ո՛չ էլ էյնշտեյնի
մասին, կան նաև այնպիսիք, որոնք ղեկավարվում են այլ պատկերացումնե-
րով ճշմարտության, գեղեցկության օրենքների մասին և իրենց կենսագոր-
ծունեությունում ենթարկվում են հասարակական կարծիքի տեղական օրենս-
դիրների հեղինակությանը։

Հարկ է նշել նաև հեղինակության հետ կապված մեկ այլ սահմանափա-
կում։ Ամեն մի հեղինակություն սահմանափակված է ոչ միայն քանակապես՝
նրա ազդեցության տակ գտնվող մարդկանց թվով և այդ ազդեցության գոյա-
տևմամբ, այլև առարկայապես, այսինքն՝ մարդկային գործունեության այն
կոնկրետ բնագավառով, որտեղ դրսևորվում է նրա ազդեցությունը։ Ամեն մի
հեղինակություն ոչ միայն հեղինակություն է «ինչ-որ մեկի համար», այլև
հեղինակություն է «ինչ-որ բանում»։ Առանձին անհատը միշտ էլ հեղինա-
կություն է որոշակի հարցերի լուծման գործում, որոշակի բնագավառում և այդ
բնագավառից դուրս կարող է ամենևին էլ հեղինակավոր չլինել։ Ուստի ամեն
մի հեղինակություն սոսկ «մասնակի հեղինակություն է»։ Հեղինակությունը
ինքնաբերաբար չի փոխանցվում մի բնագավառից մյուսը, յուրաքանչյուր նոր
բնագավառում այն պետք է վերստին նվաճել։ Իհարկե, առանձին անհատ կա-



րող է հեղինակություն լինել մի քանի բնագավառներում, սակայն, եթե նկատի ունենանք մարդու հետաքրքրությունների, պրոֆեսիաների, կենսագործունեության ոլորտների շրջանակը, ապա նրա հեղինակության բնագավառը միշտ էլ չափազանց փոքր կլինի, այսինքն՝ յուրաքանչյուր հասարակությունում գոյություն ունի «ազդեցության ոլորտների» բաժանում հեղինակավոր անհատների միջև։

Ամեն մի հեղինակության մասնակի բնույթը ակնհայտ է, սակայն այդ ճշմարտությունը ոչ միշտ է դառնում լուրջ վերլուծության առարկա։ Սոցիալական պրակտիկան քիչ վկայություններ չունի այն բանի, որ իմացության կամ գործունեության որևէ նեղ բնագավառում հեղինակություն շահած մարդը, դրա համար չունենալով բավականաչափ հիմքեր, սկսում է հեղինակության հավակնություն ունենալ նաև այլ բնագավառներում։

Կոլեկտիվի վրա առավել մեծ է այն մարդու ազդեցությունը, որն ունի թե՛ բարձր պրոֆեսիոնալիզմ, թե՛ բազմակողմանի կրթվածություն, թե՛ կոմունիստական բարոյականություն։ Նման անհատը «լիակատար» հեղինակություն է վայելում։ Որպես կանոն, հենց այդպիսի մարդիկ են որոշում կոլեկտիվի դեմքը, նրա հոգեբանական ու բարոյական մթնոլորտը, այն սկզբունքները, որոնց վրա է կոլեկտիվը հենվում իր արտադրական ու հասարակական գործունեությունում։ Այդպիսի մարդկանցից են ձևավորվում կոմունիստական աշխատանքի հարվածայիններ, առաջավոր բրիգադների բրիգադավարներ, համաժողովրդական նախաձեռնության հեղինակներ, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպիչներ, արտադրության հրամանատարներ։ Նույնիսկ չունենալով որևէ պաշտոն, նման մարդիկ, ըստ էության, դառնում են կոլեկտիվի իսկական ղեկավարները, քանի որ նրանք են որոշում կոլեկտիվի վերաբերմունքը իր կենսագործունեության ոլորտում ծագող բոլոր բախումների ու պրոբլեմների նկատմամբ։ Լավ աշխատող, ձեռներեց կոլեկտիվներում միշտ էլ կան այդպիսի անհատներ՝ կոլեկտիվի լիդերներ, որոնք տոն են տալիս նրա ողջ գործունեությանը։

Խոսելով կոլեկտիվի վրա առանձին անհատների ազդեցության մասին, հարկ է ասել նաև, որ անհատի ազդեցությունը կարող է և բացասական լինել սոցիալիստական հասարակության իդեալների տեսանկյունից։ Կոլեկտիվը կազմավորվում է տարբեր մարդկանցից՝ տարբեր իդեալներով, ձգտումներով, նպատակներով, կյանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքով, ճաշակներով և այլն։ Միևնույն ժամանակ, կոլեկտիվի իդեալներն ու նպատակները պայմանավորվում են նրա անդամների զարգացման մակարդակով, այդ պատճառով էլ, երբ կոլեկտիվը կազմված է լինում պրոֆեսիոնալ ու հոգևոր ոչ մեծ պաշար ունեցող, պակաս ձեռներեց մարդկանցից, այդպիսի անհատի մասնակի հեղինակությունը կարող է վերաճել լիակատար հեղինակության։ Նա կարող է շըրջապատում հեղինակություն նվաճել իր դատողություններով «գեղեցիկ կյանքի» մասին, «տեսականորեն հիմնավորել» իր անտարբեր վերաբերմունքը աշխատանքի, բարոյական վսեմ նորմերի ու հոգևոր արժույթների նկատմամբ։ Եթե նրան հաջողվի կյանքի նկատմամբ ունեցած իր հայացքները ներարկել կոլեկտիվի մյուս անդամներին, ապա մի շարք հարցերի մասին նրա ունեցած կարծիքը կարող է դառնալ վճռորոշ։ Բայց անհրաժեշտ է շեշտել, որ այդպիսի մարդը կարող է հեղինակություն վայելել միայն ժամանակավորապես և միայն քիչ զարգացած մարդկանցից կազմված կոլեկտիվում։

Կա հեղինակություն, որի ազդեցությունը կամ իշխանությունը հենվում է անհատի անձնական հատկանիշների վրա, հեղինակություն էլ կա, որն անմիջական կապ չունի անհատի անձնական հատկանիշների հետ, այսինքն՝ դա հասարակության անձնականացված հեղինակություն է՝ վերագրված առանձին անհատի։ Առաջին բնույթի հեղինակությունը մենք անվանում ենք «ներքին», իսկ երկրորդը՝ «արտաքին»։

Ներքին հեղինակությունը հիմնված է անհատի անձնական հատկանիշների և շրջապատի կողմից այդ հատկանիշների ընդունման վրա։ Ներքին հեղինակության ազդեցությունը պայմանավորված է, ամենից առաջ, գործունեության

այս կամ այն ոլորտում շրջապատող մարդկանց նկատմամբ նրա գերազանցության և վերջիններիս կողմից դրա գիտակցման վրա։ Այդպիսին է հեղինակությունը արտադրության լավ աշխատողի, իր գործի վարպետի, որի փորձն ու գիտելիքները բոլորին ստիպում են ուշադրությամբ լսել նրա հանձնարարականներն ու խորհուրդները։ Այդպիսին է հեղինակությունը տաղանդավոր գիտնականի, որն ընդունակ է առավել արագ, ավելի լավ ու խնայողաբար լուծել գիտության տվյալ բնագավառի առջև ծառացած պրոբլեմները։ Այդպիսին է հեղինակությունը փորձված երկրագործի, որն ուրիշներից ավելի լավ գիտե, թե երբ է ցանքսի կամ բերքահավաքի ժամանակը, ծիլերն ինչպես պահպանել ցրտահարությունից, երբ և ինչպես օգտագործել պարարտանյութերը և այլն։ Այդպիսին է հեղինակությունը յուրաքանչյուր մասնագետի, իր գործի ամեն մի գիտակի, յուրաքանչյուր ընդունակ, իր գործով ապրող ու փորձառու մարդու։ Այդպիսի հեղինակության ուժը որոշվում է համապատասխան պրոֆեսիոնալ հատկանիշների զարգացածության աստիճանով. մարդ որքան հմուտ է, փորձառու, գիտակ, այնքան ավելի մեծ հեղինակություն կունենա շրջապատում։

Ներքին հեղինակության առավել բնորոշ հատկանիշներից մեկն այն է, որ այն գոյանում է տարերայնորեն։ Այն չի կարելի պարտադրել կամ հրամանագրել։ Այն չի կարելի վերագրել մարդուն։ Լոկ անհատն ինքը սեփական աշխատանքով, ի հայտ բերելով իր ունակություններն ու գիտելիքները, կարող է նման հեղինակություն նվաճել։ Պարզ է, որ դրա համար որոշակի ժամանակ է պահանջվում։

Պրոլետարիատի մեծ առաջնորդներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հեղինակությունը հիմնված է հին աշխարհը վերափոխող այն հիմնադրույթների գիտական մշակման վրա, որոնցով ղեկավարվելով նրանց գործի մեծ շարունակող Վ. Ի. Լենինը ավելի խորացրեց ու զարգացրեց մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքը։ Վ. Ի. Լենինի հեղինակությունը մեր երկրում և ամբողջ աշխարհում պայմանավորված է նրա դարակազմիկ տեսական ժառանգությամբ և պրակտիկ գործունեությամբ։

Ներքին հեղինակության ձևավորումը ենթադրում է անձնական ծանոթություն նրա կրողի հետ, որովհետև նման հեղինակությունը ստեղծվում է լոկ այն դեպքում, երբ մարդ անձամբ համոզվում է նրա գերազանցության մեջ, զգում նրա գիտելիքների, փորձի ներգործությունը, այդ փորձը կամովին կի-
րառելով իր աշխատանքային ու սոցիալական կենսագործունեությունում։
Միաժամանակ կարևոր է խուսափել հեղինակություն ունեցող անհատի հետ
անձնական ծանոթության անհրաժեշտության հասարակացված ըմբռնումից։
Որոշ անհատների առավելությանը կարելի է համոզվել, ծանոթանալով նրանց
ստեղծագործություններին։ Գիտնականների, գրողների, նկարիչների հեղինա-
կությունը հաճախ առաջանում է նրանց ստեղծագործություններին ծանոթա-
նալու շնորհիվ։ Նույնիսկ ծանոթ չլինելով, օրինակ, Մ. Շահինյանի հետ, կա-
րելի է գնահատել նրա բարձր կուլտուրան, մտքերի խորությունը և գրողի
վարպետությունը։ Արվեստագետի կամ գիտնականի ստեղծագործու-
թյուններում բացահայտվում են նրա հոգին, փորձը, գիտելիքները, ուստի այդ
ստեղծագործություններին ծանոթանալը, ըստ էության, նշանակում է ծանո-
թանալ դրանք ստեղծողի հետ։

Քանի որ ներքին հեղինակությունը հենվում է անձնական կամ անուղղակի անձնական ծանոթության, անհատական գնահատման վրա, այն պարտադիր կարգով ներառում է հուզական տարր. ներքին հեղինակության կրողը հարուցում է հարգանք, սեր, հիացմունք, նրան հնազանդվելը հաճույք է։ Ուրիշ ոչ մի իշխանություն այնպես լիակատար և ուժեղ չի լինում, ինչպես ներքին հեղինակության իշխանությունը։ Այդպիսի հեղինակավոր անհատի խորհուրդներն ու ցուցումները կատարում են ոչ միայն հոժարակամորեն, այլև հաճույքով։ Ներքին հեղինակության կրողի հավանությունը, գովեստը ամենամեծ պարգևն են նրան ենթարկվող մարդկանց համար։ Անվերապահ հարգանքի, սիրո և նվիրվածության վրա հիմնված այդպիսի հարաբերությունների օրինակ



են ուսուցչի և աշակերտի հարաբերությունները, սիրելի գրողի, գիտական դպրոցի ղեկավարի նկատմամբ ունեցած վերաբերմունքը և այլն։ Բոլորին հայտնի է քվանտային մեխանիկայով զբաղվող ֆիզիկոսների ակնածանքը Ն. Բորի նկատմամբ։ Կարելի է հիշել ռուս մտավորականների վերաբերմունքը Լ. Ն. Տոլստոյի կամ գեղարվեստական թատրոնի արտիստներինը՝ Ա. Պ. Չեխովի նկատմամբ և այլն։ Ըստ էության, երբ մարդիկ խոսում են հեղինակության մասին, նկատի ունեն հենց ներքին, այսինքն՝ մարդու անհատական հատկանիշների ճանաչման վրա հիմնված հեղինակությունը։

Արտաքին հեղինակությունը կարելի է անվանել հասարակական դիրքի հեղինակություն։ Դրա հիմքում ընկած են անհատի ոչ անձնական ծանոթությունը, ոչ էլ նրա անձնական հատկանիշների գերազանցությունը, այլ նրա զբաղեցրած հասարակական դիրքը։ Այնտեղ, որտեղ կա հիերարխիա, ղեկավարություն ու ենթակայություն պահանջող կազմակերպություն, կա նաև արտաքին հեղինակություն։ Բրիգադավարը, արտադրամասի պետը, գործարանի դիրեկտորը օժտված են պաշտոնի արտաքին հեղինակությամբ։ Գիտական աստիճանները, կոչումները և այլն, նույնպես արտաքին հեղինակությամբ են օժտում։ Գիտության դոկտորը, պրոֆեսորը, ակադեմիկոսը, գիտության, արվեստի վաստակավոր գործիչը հեղինակություն են վայելում իրենց կոչումների շնորհիվ, անկախ նրանց անձնական հատկանիշներից։ Այսպիսով, ամեն մի հեղինակություն, որը պայմանավորված է ոչ թե բուն անհատի հատկանիշներով, այլ որոշ արտաքին հանգամանքներով, կարելի է դիտել որպես արտաքին հեղինակություն։

Արտաքին հեղինակությունը գոյություն ունի անկախ անհատի հատկանիշներին անձամբ ծանոթ լինելուց, օրինակ, գործարանի դիրեկտորը հեղինակություն է գործարանի բոլոր աշխատողների համար, անկախ այն բանից, թե նրանք անձամբ դիրեկտորի հետ ծանո՞թ են, թե՝ ոչ։ Հետևաբար, արտաքին հեղինակության համար անհատի անձնական հատկանիշները, ասես, ոչ մի դեր չեն խաղում։ Արտաքին հեղինակությանը ենթարկվելը զուրկ է զգացմունքային նրանգից, որն այնքա՜ն մեծ դեր է խաղում ներքին հեղինակությամբ օժտված մարդկանց հարաբերություններում։ Սակայն արտաքին հեղինակությունը, այնուամենայնիվ, հենվում է կամավոր ճանաչման և հնազանդվելու պատրաստակամության վրա։ Մարդն ընդունում է սոցիալական կառուցվածքը, ամբողջությամբ վերցրած, կամ որոշակի հիերարխիան, համաձայնում է որոշակի դեր կատարել դրանում, ուստի և ընդունում է տվյալ հիերարխիայի ներկայացուցիչների իշխանությունը։ Ներքին և արտաքին հեղինակությունների սկզբունքային տարբերությունն այն է, որ առաջինը հենվում է մարդու անհատական հատկանիշները ճանաչելու, իսկ երկրորդը՝ որոշակի սոցիալական կառուցվածքն ընդունելու վրա, բայց այդ երկու տեսակի հեղինակությունն էլ հենվում են ենթարկվելու կամավոր համաձայնության վրա։

Ըստ էության, ներքին հեղինակության հիմքում նույնպես ընկած է որոշակի հասարակական կառուցվածքի և դրանում ընդունված արժույթների ճանաչումը։ Ինչո՞ւ անհատի որոշ հատկանիշներ մենք համարում ենք հարգանքի և ընդօրինակման արժանի, իսկ այլ հատկանիշներ՝ դատապարտելի։ Ապրելով որոշակի հասարակության մեջ, մարդը յուրացնում է այնտեղ տիրապետող և պրոպագանդվող արժույթների սիստեմը, որում անհատի բազմազան հատկանիշներն ունեն հասարակական տարբեր նշանակություն և ստատուս։ Յուրաքանչյուր հասարակական սիստեմ սահմանում է արժույթների սեփական համակարգը։ Անհատական տարբեր հատկանիշների գնահատման վրա մեծ ազդեցություն է ունենում դասակարգային դիրքորոշումը, այն, ինչ գնահատելի է մի դասակարգի տեսանկյունից, մեկ ուրիշի կողմից կարող է ուշադրության չարժանանալ, կամ նույնիսկ վնասակար դիտվել։ Եթե խոսելու լինենք մի այնպիսի կոլեկտիվի մասին, որտեղ, հիրավի, ստեղծվում է ներքին հեղինակություն, ապա դրա հիմքում կարելի է տեսնել տվյալ կոլեկտիվի ընդունած հա-

սարակական արժույթների համակարգը: Այսպիսով, ինչպես ներքին, այնպես էլ արտաքին հեղինակությունները ամրակայվում են անհատի կողմից որոշակի հասարակական արժույթների համակարգի ճանաչման վրա:

Իրոք, կոլեկտիվը չի կարող գործել և նույնիսկ գոյություն ունենալ, եթե ցանկացած կոնկրետ հարցը լուծելիս նրան չմիավորի և ուղղություն չտա մի ինչ-որ միասնական կամք: Բայց կոլեկտիվն առնչվում է տարբեր տեսակի գործունեության հետ, որոնցից յուրաքանչյուրում կարող են լինել առանձին հեղինակություններ: Օրինակ, փականագործների բրիգադում մեկը կարող է ավելի փորձված լինել մի տեսակի դետալների պատրաստման գործում, իսկ մեկ ուրիշը՝ այլ, մեկը բոլորից ավելի լավ է հասկանում գծագրերից, մինչդեռ մեկ ուրիշը իր հավասարը չունի մետաղակմախքի պատրաստման գործում, իսկ երրորդը բոլորից ավելի լավ գիտե, թե ինչպես հասնել մակերեսի մշակման բարձր ճշգրտության և այլն: Կոլեկտիվում կարող են հեղինակություններ լինել խիստ յուրահատուկ և տարբեր պրոբլեմների հարցում: Եթե ելակետ ընդունենք կոլեկտիվի ռեալիստական մոդելը, հարկ է հաշվի առնել, որ հազվադեպ է լինում, երբ միայն մեկն է արտահայտում և իրավունք ունի արտահայտել իր կարծիքը, իսկ մյուսները լուռ ենթարկվում են նրան: Ավելի հաճախ յուրաքանչյուր կոլեկտիվում ցանկացած հարցում լինում են մի շարք հեղինակավոր մարդիկ, իսկ կոլեկտիվի մյուս անդամները չեն վախենում արտահայտել և պաշտպանել իրենց կարծիքը: Այդ բոլոր մարդկանց կարծիքները կարող են տարբեր լինել, բայց յուրաքանչյուրը մասնակցում է ընդհանուր կոլեկտիվ որոշումների մշակմանը: Սովորաբար, որևէ հարց քննարկելիս վճռական դեր են խաղում հեղինակավոր մարդիկ: Նրանք կարող են հիմնավորել իրենց կարծիքը կամ տեսակետը, կոլեկտիվին համոզել իրենց ճշմարտացիության մեջ:

Չնայած կոլեկտիվի առջև ծառացած պրոբլեմների լուծման գործում բոլորը ենթարկվում են իրենց առանձին հեղինակավոր անդամների կարծիքին, չպետք է գերագնահատել նրանց դերը կոլեկտիվի կյանքում: Առաջին հայացքից այնպես է թվում, թե ներքին հեղինակությամբ օժտված անհատները կոլեկտիվը տանում են այն ուղղությամբ, որն իրենք ճիշտ են համարում, իսկ կոլեկտիվը միայն հետևում է այդ անհատներին: Սակայն չմոռանանք, որ, վերջին հաշվով, կոլեկտիվն է հեղինակավոր դարձնում իր անդամներից որևէ մեկին: Կոլեկտիվն է որոշում, թե այդ անհատներից ով կարող է իր անձնական տվյալներով համակել մարդկանց:

Հազվադեպ չեն այն իրավիճակները, երբ մարդը, որն իր գիտելիքների և ունակությունների համար արժանի հեղինակություն էր վայելում կոլեկտիվում, դադարում է աճելուց, մնում է երբևէ հասած մակարդակին, իսկ կոլեկտիվն իր աճով առաջ է անցնում նրանից: Առանձնակի է այն դեպքը, երբ հեղինակավոր անհատը կոլեկտիվի ղեկավարն է: Այն հեղինակությանը, որ նա նվաճել է շնորհիվ իր պրոֆեսիոնալ վարպետության, հոգևոր հարստության կամ բարոյական վսեմ հատկանիշների, ավելանում է նաև վարչական իշխանության հեղինակությունը, այսինքն՝ արտաքին հեղինակությունը:

Սոցիալիստական հասարակության մեջ արտաքին հեղինակությունը համապատասխանում է ներքինին, այսինքն՝ որպես կանոն ղեկավարներ են դառնում բարձրորակ, բազմակողմանիորեն կրթված աշխատողները: Սակայն առանձին դեպքերում հնարավոր են շեղումներ. վարչական իշխանություն կարող է պատահականորեն ձեռք բերել ներքին հեղինակությունից զուրկ, գործնական ու բարոյական համապատասխան հատկանիշներ չունեցող մարդը: Երբ անհատի արտաքին հեղինակությունը չի ամրապնդվում ներքին հեղինակությամբ, այդպիսի հեղինակությունը կարելի է անվանել «կեղծ», «ուռճացրած» և այլն:

Սոցիալիստական հասարակության մեջ պաշտոնը, կոչումը, պարգևները



ենթադրում են բարձր պրոֆեսիոնալիզմ, գաղափարայնություն, բարեխղճություն, գիտելիքներ, տաղանդ: «Եվ այդ իսկ պատճառով էլ անհրաժեշտ է,— գրել է Վ. Ի. Լենինը,— որ ամբողջ կուսակցությունը սիստեմատիկորեն, աստիճանաբար և անշեղ կերպով իր համար... հարմար մարդիկ դաստիարակի, որպեսզի նա իր առջև, ինչպես ափի մեջ, տեսնի... բարձր պոստի յուրաքանչյուր թեկնածուի ամբողջ գործունեությունը, որպեսզի ծանոթանա նրանց նույնիսկ անհատական առանձնահատկություններին, նրանց ուժեղ և թույլ կողմերին...» (ԵԼԺ, հ. 8, էջ 116):

Ներքին հեղինակությամբ օժտված անհատը, որն ուժեղ ազդեցություն ունի կոլեկտիվի բոլոր անդամների վրա նրա կենսագործունեության բոլոր ոլորտներում, արդեն կոլեկտիվի փաստացի ղեկավարն է: Վ. Ի. Լենինը գրել է, որ մասսաներին ղեկավարելու գործում հաջողությունը որոշվում է «ոչ թե իշխանության ուժով, այլ հեղինակության ուժով, եռանդի, ավելի մեծ փորձառության, ավելի մեծ բազմակողմանիության, ավելի մեծ տաղանդավորության ուժով» (ԵԼԺ, հ. 7, էջ 17): Ուստի միանգամայն բնական է, որ հենց այդպիսի մարդը ստանում է նաև վարչական իշխանություն: Հեղինակավոր մարդուն այդ իշխանությունը հնարավորություն կընձեռի շատ ավելի արդյունավետ ներգործելու կոլեկտիվի զարգացման վրա: Այդպիսի կոլեկտիվում տիրում է բարեկամության ու փոխօգնության մթնոլորտ, բոլորն էլ գիտակցում են, որ իրենց աշխատանքը կգնահատվի ըստ արժանվույն, որ իրենք միշտ էլ կհանդիպեն բարյացակամ վերաբերմունքի:

Կոմունիստական կուսակցությունը մշտապես մեծ ուշադրություն է նվիրում ղեկավար կադրերի պատրաստման պրոբլեմի լուծմանը: Կուսակցությունը սովորեցնում է, որ ժամանակակից ղեկավարը պետք է իր մեջ օրգանապես միաձուլի կուսակցականությունն ու իրազեկությունը, կարգապահությունն ու նախաձեռնությունը, գործի նկատմամբ ունեցած ստեղծագործական մոտեցումը: Դրա հետ մեկտեղ, ցանկացած տեղամասում ղեկավարը պարտավոր է հաշվի առնել նաև սոցիալ-քաղաքական, դաստիարակչական ասպեկտները, լինել զգայուն մարդկանց, նրանց կարիքների ու պահանջների նկատմամբ, օրինակ ծառայել աշխատանքում և կենցաղում:

Այս ամենը վճռական նշանակություն է ստանում մեր կուսակցության առաջադրած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման առումով: Խոսելով այդ մասին, Յու. Վ. Անդրոպովը շեշտեց. «Այս ուղղությամբ տարվող աշխատանքին հատկապես հակացուցական են մերկ վարչարարությունն ու աղմկարարությունը, ռեալ գործի փոխարինումը խոսակցություններով: Այն ղեկավարը, ով չի հասկանում այդ, որը փորձում է սիստեմատիկ ու հետևողական կազմակերպչական ջանքերը փոխարինել էֆեկտավոր, բայց ոչ էֆեկտիվ կամպանիաներով, շատ բանի չի հասնի» («Коммунист» ամսագիր, 1983 թ., № 3, էջ 16):

Վերլուծական խոր ուսումնասիրության է արժանի այն իրադրությունը, երբ ղեկավարը կոլեկտիվ է գալիս դրսից և կոլեկտիվի անդամները ծանոթ չեն նրա բարոյական ու պրոֆեսիոնալ հատկանիշներին: Նման իրադրություն պատահում է հաճախակի և, ըստ երևույթին, դա անխուսափելի է, քանի որ եթե նույնիսկ ղեկավարը դուրս է եկել բուն այդ կոլեկտիվից, նրա հետագա աճը և վարչական սանդղակով բարձրանալը նրան դարձնում են ավելի մեծ կոլեկտիվների ղեկավար, կոլեկտիվներ, որոնց նա սկզբում շատ քիչ էր հայտնի կամ նույնիսկ ամենևին էլ հայտնի չէր: Օրինակ, երիտասարդ բրիգադավարը, որը լավ հայտնի է տվյալ կոլեկտիվին և առաջ է քաշվել նրա կողմից, որոշ ժամանակից հետո կարող է դառնալ տեղամասի, արտադրամասի պետ կամ ողջ ձեռնարկության դիրեկտոր: Պարզ է, որ մարդ ինչքան մեծ կոլեկտիվի ղեկավար է, կոլեկտիվի անդամներն այնքան քիչ գիտեն (համենայն դեպս՝ սկզբնական շրջանում) նրա գործարար ու բարոյական հատկանիշները: Ուստի սկզբնական շրջանում այդպիսի ղեկավարն օգտվում է միայն վարչական հե-

ղեկավարությունից, այսինքն՝ զուտ «արտաքին» հեղինակությունից և կարող է կոլեկտիվի վրա ազդել լոկ որպես վարչական ղեկավար։ Պրոֆեսիոնալ գործարար հեղինակություն նա դեռ պետք է նվաճի, քանի որ վարչական իշխանությունն ինքնին չի կարող նման հեղինակություն ապահովել։ Եթե դա նրան հաջողվի, ղեկավարի ազդեցությունը կոլեկտիվի վրա աստիճանաբար կաճի, և կոլեկտիվի գործառնությունն է՛լ ավելի հաջող կլինի։

Անհատի և կոլեկտիվի փոխազդեցության ներքին մեխանիզմը հասկանալու համար հարկավոր է տալ կոլեկտիվի վերլուծությունը, բացահայտել նրա ներքին բազմազան ազդեցությունները, հետազոտել նրա ներքին կառուցվածքը, որը տարբերայնորեն գոյանում է տարատեսակ հեղինակությունների բախման հետևանքով և այլն։ Կոլեկտիվի կառուցվածքի և գործառնության, ինչպես նաև առանձին անհատի հետ կոլեկտիվի ունեցած տարբեր փոխհարաբերությունների նկարագրությունը կարելի է ստանալ միայն փիլիսոփաների, սոցիոլոգների, հոգեբանների և հասարակական ու բնական այլ գիտությունների մասնագետների համատեղ աշխատանքի շնորհիվ։ Պրոբլեմի վերլուծության այսպիսի միջմասնագիտական մակարդակը հնարավորություն կընձեռի տեսականորեն նշելու այդ պրոբլեմի լուծման ուղենիշները, իսկ գործնականորեն կօգնի ավելի արդյունավետ ազդելու կոլեկտիվների դաստիարակության, նրա ավե՛լի հաջող գործառնության և նրանց պրոֆեսիոնալ, կուլտուրական, բարոյական աճի վրա, որն անհրաժեշտ պայման է ժողովրդատնտեսական խնդիրների լուծման և պետական պլանների կատարման համար։

Մոսկվա

---

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

**Ս. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ**
ՀԿԿ Թումանյանի շրջկոմի առաջին քարտուղար

ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՈՒ ՆՅՈՒԹԱԿԱՆ ռեսուրսների արդյունավետ օգտագործումը, խնայողության խստագույն ռեժիմի հետևողական կիրառումը, որպես սոցիալիստական տնտեսավարման բնորոշ հատկանիշներ, մեր օրերում դարձել են տնտեսական գործունեության վճռական բնագավառներից մեկը, կուսակցական կազմակերպությունների հոգածության առարկան։

Կուսակցության XXVI համագումարի այն դրույթը, թե «մեր հետագա առաջընթացն ավելի ու ավելի մեծ չափով կախված կլինի բոլոր առկա ռեսուրսների՝ աշխատանքի, հիմնական ֆոնդերի, վառելիքի և հումքի, դաշտերի ու ֆերմաների արտադրանքի հմուտ և արդյունավետ օգտագործումից», առանձնահատուկ կարևորություն է ստանում ներկա փուլում։ Պատահական չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումը համապետական նշանակության մի շարք արմատական խնդիրների շարքում անչափ կարևորեց նաև նյութական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և այն համարեց ժողովրդատնտեսական խոշոր ռեզերվ։ Պլենումը կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների, տնտեսական ղեկավարների առջև խնդիր դրեց՝ խնայել նյութական ռեսուրսները, վճռական պայքար ծավալել անտնտեսվարության ու շռայլումների դեմ։ «Այդ խնդիրը,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— լուծել կարելի է միայն մեր ձեռնարկությունների, մեր կոլտնտեսությունների և սովխոզների յուրաքանչյուր բանվորի, յուրաքանչյուր աշխատավորի մասնակցությամբ։ Հարկավոր է հասնել այն բանին, որ նրանք այդ խնդիրը ընկալեն որպես իրենց սեփական գործը»։

Ղեկավարվելով այդ պահանջներով՝ ՀԿԿ Թումանյանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները գլխավորում են խնայողության ռեժիմի կիրառման համար աշխատանքային կոլեկտիվների ծավալած պայքարը, բարձրացնում կոմունիստների ակտիվությունը, զարգացնում նրանց նախաձեռնությունը։

Աշխատանքային ու նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործման, խնայողության ռեժիմի կիրառման խնդիրներն իրենց արտահայտությունն են գտնում կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների, կոմունիստների, ձեռնարկությունների և տնտեսությունների կոլեկտիվների պրակտիկ գործերում և աշխատանքային առօրյայում։ Կուսշրջկոմի բյուրոյի նիստերում ու կուսակցական ժողովներում հանգամանորեն քննարկվել են «Հում-

քային, վառելիքաէներգետիկ և մյուս նյութական ռեսուրսների խնայողության ու ռացիոնալ օգտագործման աշխատանքն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կենսագործման առնչությամբ շրջանային և սկզբնական կուսկազմակերպությունների խնդիրները։ Գործարար էր նաև «1981—1985 թվականներին և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման մասին» ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշման քննարկումը։ Երկու դեպքում էլ շրջկոմը մշակել է այդ որոշումներից բխող միջոցառումների կոնկրետ պլան։ Մասնավորապես ստեղծել ենք էլեկտրաէներգիայի խնայողության գործը վերահսկող մշտական հանձնաժողով, որը կոորդինացնում է այդ ասպարեզում շրջանում կատարվող աշխատանքները։ Միջոցառումների իրագործման և հանձնաժողովի գործունեության նպատակն է ուժեղացնել հոգատարությունը ժողովրդական բարիքների նկատմամբ, վերացնել անարտադրողական ծախքերն ու կորուստները, անհանդուրժողական վերաբերմունք ցուցաբերել շռայլումների ու ամեն տեսակի բացասական փաստերի նկատմամբ։ Եվ ահա արդյունքը. շրջանում, ամբողջությամբ վերցրած, միայն 1982 թ. խնայվել է 7 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 3.218 հազար խմ բնական գազ, էներգետիկ այլ ռեսուրսներ։

Խնայողության ռեժիմը ամուր հիմքերի վրա է դրված Ալավերդու Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր լեռնամետալուրգիական կոմբինատում։ Ուսանելի է այդ նպատակով կուսկոմիտեի (քարտուղար՝ Գ. Իսրայելյան) ծավալած աշխատանքը։ Կոմիտեն պարբերաբար անդրադառնում է այդ խնդրին, միջոցներ ձեռնարկում նյութական և վառելիքաէներգետիկ ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու համար, յուրաքանչյուր եռամսյակ քննարկում մշտական միջոցառումների իրականացման ընթացքը։ Այսպես, անցած տարվա սկզբներին կուսկոմիտեի նիստերից մեկում քննարկվեց վառելանյութը և էներգառեսուրսները խնայողաբար օգտագործելու հարցը։ Կուսկոմիտեն նշեց, որ ձեռնարկությունում դեռևս անբավարար են օգտագործվում վառելիքի և էլեկտրաէներգիայի տնտեսման եղած ռեզերվները և երկրորդական էներգառեսուրսները։ Այդ գործը բարելավելու և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործման նկատմամբ մշտական հսկողություն սահմանելու նպատակով ստեղծվեց 9 մարդուց բաղկացած շտաբ, որտեղ ընդգրկվեցին արտադրության ղեկավարներ, կուսակցական և արհմիութենական աշխատողներ, առաջատար մասնագետներ և ռացիոնալիզատոր բանվորներ։ Սահմանվեցին վառելիքաէներգետիկ ռեսուրսների ծախսի նորմաներ, և ըստ արտադրամասերի կազմակերպվում է դրանց կատարման հաշվառումը։ Գլխավոր ինժեների, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների ներկայացուցիչների մասնակցությամբ վերլուծվում են վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման շաբաթական արդյունքները։

Նախկինում, որպես առաջին կարգի էներգիա սպառող ձեռնարկություն, կոմբինատի կուսկազմակերպությունը, դիրեկցիան հաճախ էին քննադատվում այն բանի համար, որ բավարար ուշադրություն չեն նվիրում երկրորդական էներգառեսուրսների օգտագործմանը։ Անոդային, վայերբարսային և գրանուլացման վառարաններում երկրորդական էներգիայի զգալի կորուստ էր լինում։ Ինչպե՞ս կանխել այդ կորուստը. այս հարցը հետաքրքրում էր ոչ միայն կոմբինատի և արտադրամասի ղեկավարությանը, այլև կուսկոմիտեին և արտադրամասի սկզբնական կուսկազմակերպությանը։ Հարցի գործարար քննարկումից հետո մասնագետներն ստացան կոնկրետ առաջադրանքներ և գործի անցան։ Նրանց ստեղծագործական պրպտումների արդյունքը եղավ այն, որ այդ վառարանների վրա տեղադրվեցին «Ռեկուպերատոր» կոչվող ագրեգատներ, որոնք հնարավորություն են ընձեռում խիստ վերացնելու էլեկտրաէներգիայի կորուստները արտադրության այդ տեղամասում։ Առավել էներգատար՝ մետալուրգիական, պղնձի ռաֆինացման, ծծմբաթթվի, պղնձարջասպի արտադրամասերի կուսկազմակերպությունները ևս պարբերաբար քննարկում են էներգառեսուրսների խնայողաբար օգտագործման հարցերը, հետևում այդ առթիվ ընդունած որոշումների կատարմանը։ Ընթացիկ տարվա հունվարին կոմբինատի կուսկոմիտեն նորից անդրադարձավ խնայողության ռեժիմի կիրառման խնդրին և մշակեց ու հաստատեց լրացուցիչ միջոցառումների պլան՝ վառելիքաէներգետիկ և նյութական ռեսուրսների խնայողության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը կենսագործելու համար։ Միջոցառումների պլանին համապատասխան՝ կազմվեց էներգառեսուրսների օգտագործմանը վերահսկող շտաբի 1983 թ. աշխատանքի պլանը։ Կուսկոմիտեի որոշմամբ և նախաձեռնությամբ հրավիրվել է արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություն, որտեղ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման լույսի ներքո քննարկվել են նրանց խնդիրները։

Կոմբինատի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում ևս հանգամանորեն արծարծվել է այդ որոշման կերնսագործման լրացուցիչ միջոցառումների հարցը և ստեղծվել են վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործմանը հսկող արտադրամասային հանձնաժողովներ։ Կուսկոմիտեի այդ նիստի որոշմամբ պարբերաբար անցկացվում են ժողովրդական վերահսկիչների և կոմերիտական լուսարձակայինների ստուգայցեր՝ էներգառեսուրսների, խնայողության ռեժիմն ուսումնասիրելու համար։ Խնայողության ռեժիմի կիրառման համար ծավալված պայքարում իրենց գործունեությունը նկատելիորեն աշխուժացրել են նաև կոմբինատի «Զոլող» բազմատպաքանակ թերթի և ռադիոհաղորդումների խմբագրությունները։ Նրանք բազմաբնույթ նյութեր են հրապարակում ու հաղորդումներ տալիս նյութական, վառելիքաէներգետիկ և աշխատանքային ռեսուրսների խնայողության առաջավոր փորձի մասին։

Խնայողության խստագույն ռեժիմի կիրառման խնդիրները հանգամանորեն արծարծվում են տնտեսագիտական կրթության և կոմունիստական աշխատանքի դպրոցների պարապմունքներում։ Կոմբինատում գործում են տնտեսագիտության հիմունքներն ուսումնասիրող 31 խմբակ և կոմունիստական աշխատանքի 13 դպրոց։ Կուսկոմիտեի որոշմամբ նրանց պրոպագանդիստներն ու ղեկավարները ծանոթացել են վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմանը և այն դարձրել ուսումնասիրության նյութ։ Նրանք պարապմունքներում տեսական հարցերը սերտորեն շաղկապում են կոմբինատում կատարվող գործնական աշխատանքի հետ, հիմնավորում կոնկրետ օրինակներով։ Ունկնդիրները ծանոթանում են հումքի ու վառելիքաէներգետիկ ռեսուրսների տնտեսման ուղիներին ու եղանակներին և կիրառում դրանք պրակտիկ աշխատանքում։ Կոմբինատի կուսկոմիտեի դասախոսական խմբի անդամները հաճախ են հանդես գալիս դասախոսություններով՝ վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործմանը վերաբերող թեմաներով։ Ցուցադրական ագիտացիայի տարբեր միջոցներով նույնպես պայքար է ծավալվում խնայողության ռեժիմի անշեղ կիրառման համար։ Ամենուրեք արտադրամասերում փակցված կոչերով ցույց է տրվում այդ գործի ժողովրդատնտեսական կարևոր նշանակությունը, հումքի, էլեկտրաէներգիայի, վառելիքի տնտեսման մեկ միավորի նշանակությունը ձեռնարկության համար։ Բոլոր արտադրամասերում ստեղծվել են ցուցադրական վահանակներ, որոնցում արտացոլվում է էներգիայի յուրաքանչյուր օրվա ծախսը։ Ցուցադրական միջոցները, անշուշտ, մոբիլիզացնում են մարդկանց, բարձրացնում նրանց պատասխանատվությունը ժողովրդական բարիքի պաշտպանության նկատմամբ։

Ճիշտ զուգակցելով քաղաքական և տնտեսական աշխատանքը՝ կոմբինատի կուսկոմիտեն կարողացել է կոլեկտիվի ուժերը նպատակամղել ոչ միայն պլանների ու ստանձնած պարտավորությունների կատարմանը, այլև խնայողության խստագույն ռեժիմի արմատավորմանը արտադրական բոլոր տեղամասերում ու օղակներում։ Բավական է ասել, որ տասներորդ հնգամյակում այստեղ խնայվել է 24 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 4.460 տոննա պայմանական վառելանյութ, ավելի քան 9.000 հեկակալորիա շոգի։

Ամրապնդելով նախորդ հնգամյակում ձեռք բերածը՝ մետալուրգները, քիմիագործները, լեռնագործները և ֆլոտատորները լավ գործերով սկսեցին

տասնմեկերորդ հնգամյակը: Բոլոր արտադրամասերում, հերթափոխություններում սոցմրցություն ծավալվեց հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների արդյունավետ օգտագործման, այդ ասպարեզում կուտակված առաջավոր փորձի արմատավորման համար: Այդ ամենի վկայությունը կոնկրետ արդյունքներն են. միայն անցած տարի կոմբինատի կոլեկտիվը խնայել է ավելի քան 4,5 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 423 հազար խմ բնական գազ, 293 տոննա պայմանական վառելանյութ, զգալի քանակությամբ շոգի:

Ձեռնարկությունում, որպես կանոն, միջարտադրամասային սոցմրցության արդյունքներն ամփոփելիս, առանձնահատուկ նշանակություն է տրվում վառելիքի, էլեկտրաէներգիայի խնայողությունը բնութագրող ցուցանիշներին, հաշվի են առնվում, թե ինչպես են կատարվում այդ առթիվ ստանձնած պարտավորությունները: Գերածախս տված արտադրական օղակները զրկվում են մրցանակային տեղերից, իսկ ինժեներատեխնիկական անձնակազմի լրացուցիչ վարձատրությունը նվազեցվում է գերածախսին համապատասխան: Այդ հանգամանքն իր բարերար ներգործությունն է ունենում խնայողության խստագույն ռեժիմի կիրառման, այդ գործում մետալուրգների պատասխանատվության բարձրացման և նախաձեռնության ու ստեղծագործական ակտիվության զարգացման վրա: Դրա վկայությունը ռացիոնալիզատորների և գյուտարարների ակտիվ գործունեությունն է: Տասնմեկերորդ հնգամյակի մեկնարկային տարում նրանք հանդես եկան նյութական ու էներգառեսուրսների խնայողությանը վերաբերող 183 առաջարկություններով: Դրանցից 84-ը ներդրվել է արտադրության մեջ և կոմբինատին բերել 280 հազար ռուբլու տարեկան պայմանական օգուտ:

Այժմ «Ցենտրէներգոցվետմետ» արտադրամիավորման հետ միասին մշակվում են տեխնոլոգիական սարքավորումների այնպիսի տեսակներ, որոնց ներդրումը հնարավորություն կընձեռի ընթացիկ հնգամյակում գործողության մեջ դնել երկրորդական էներգառեսուրսների 70 տոկոսը, նվազագույնի հասցնել կորուստները: Ահա մի օրինակ: Էլեկտրավառարանից արտանետվող ծծմբային գազերը տարիներ շարունակ աղտոտում էին մթնոլորտը: Կոմունիստներ, կոմբինատի տեխնիկական բաժնի պետ, հանրապետության վաստակավոր ինժեներ և ռացիոնալիզատոր Վ. Վերանյանը, գլխավոր ինժեներ Վ. Կարապետյանը և մետալուրգիական արտադրամասի պետ Ի. Լազարևը նախաձեռնեցին դրա վերացման գործը: Նրանք առաջարկեցին փոքրացնել էլեկտրավառարանի էլեկտրոդային կամարների միջև եղած տարածությունը: Առաջարկության ներդրումը տվեց ցանկալի արդյունք. նախ՝ կանխվեց մթնոլորտի աղտոտումը և ապա՝ մեծացավ արտադրության մեջ օգտագործվող գազի ծավալը: Մինչև վերջին ժամանակներս ծծմբային գազերի կորզումը հումքից չէր անցնում 55—58 տոկոսից, այժմ այն հասել է 68 տոկոսի: Իսկ դա հսկայական խնայողություն է: Կուսկոմիտեի հատուկ որոշմամբ ըստ բրիգադների, բաժանմունքների ու արտադրամասերի յուրաքանչյուր եռամսյակ անցկացվում են էներգառեսուրսների խնայողության լավագույն առաջարկությունների ստուգատես-մրցույթներ, որոնց արդյունքները հանրագումարի է բերում գործարանային շտաբը: Հաղթողները խրախուսվում են: Այդ մրցության առաջավորներից են էլեկտրավառարաններն սպասարկող բանվորներ, կոմունիստներ Ջ. Սարգսյանը, Է. Թոռոսյանը, Ղ. Գևորգյանը, Շ. Աբելյանը և ուրիշներ: Նրանք հետևողականորեն պաշտպանում են տեխնոլոգիական ռեժիմը, հսկողություն սահմանում ամեն մի կիլովատ-ժամ էներգիայի ծախսման նկատմամբ և այդ ամենի շնորհիվ անտեսում են մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա:

Կոմբինատի կոլեկտիվի սոցպարտավորություններում զգալի տեղ է հատկացվում հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության ցուցանիշներին: Օրինակ, 1983 թ. նախատեսված է նորմայի համեմատությամբ զգալիորեն նվազեցնել պղնձի կորուստը խարամի մեջ, ներկոմբինատային և ներարտադրամասային տնտհաշվարկի ամրապնդման և խնայողության խստագույն ռեժիմի կիրառման միջոցով ստանալ 350 հազար ռուբլու արտապլանային օգուտ: Պղնձագործները խոստացել են հիմնական և օժանդակ նյութերի խնայողաբար օգտագործման հաշվին տնտեսել 500 հազար կիլովատ-ժամ



էլեկտրաէներգիա, 200 տոննա պայմանական վառելիք, 1.000 հեկակալորիա ջերմային էներգիա, 50 հազար ռուբլու նյութական միջոցներ, երկաթուղային մեկ վագոնի օրական շրջապտույտը 1982 թ. համեմատությամբ կրճատել մեկ ժամով:

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմն անդրադարձավ տրանսպորտի աշխատանքի բարելավման հարցերին և ընթացիկ հնգամյակի կանխագծումներն իրականացնելու ասպարեզում լուրջ խնդիրներ դրեց նաև տրանսպորտայինների առջև: Այդ որոշումը ոգևորել է նաև Սանահին կայարանի դեպոյի կոմունիստներին, կոլեկտիվի բոլոր անդամներին: Եվ այսօր ուսանելի շատ բան կարելի է ընդօրինակել կայարանի երկաթուղայիններից: Դեպոյի կուսկոմիտեն (քարտուղար՝ Ս. Խեչումյան) պարբերաբար անդրադառնում է արտադրությանը, այդ թվում վառելիքաէներգետիկ ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանն առնչվող հարցերին, կոմունիստների ուշադրությունը սևեռում խնայողության ռեժիմի հետևողական կիրառման վրա: Էլեկտրաքարշավարներն ու ջերմաքարշավարներն անհատական սոցիալիստական պարտավորություններում, բացի բեռների ժամանակին փոխադրումներից, նախանշում են նաև վառելիքի ու նյութերի խնայողության բնագծեր: Ընդ որում բոլորն էլ ունեն խնայողության անձնական հաշվառման քարտեր: Նրանցից շատերը յուրաքանչյուր եռամսյակ 4—5 օր աշխատում են տնտեսված էլեկտրաէներգիայի ու վառելանյութի հաշվին: Կոմունիստ-մեքենավարներ Ս. Գևորգյանի, Ջ. Մալխասյանի, Պ. Ծուղուրյանի համար խնայողաբար աշխատելը դարձել է ամենօրյա գործելակերպ: Նրանց շնորհիվ է, որ հնգամյակի առաջին տարում երկաթուղայինների կոլեկտիվը անտեսել է 475 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 30 տոննա պայմանական վառելանյութ, պլանից ավելի տեղափոխել 125 հազար տոննա ժողովրդատնտեսական բեռներ: Հաշվի առնելով ներքին ռեզերվներն ու հնարավորությունները՝ երկաթուղայինները 1982 թ. սոցպարտավորություններով խոստացել էին տնտեսել 500 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 86 տոննա պայմանական վառելանյութ: Նրանք դարձան իրենց խոսքի տերը և ավելի բարձր բնագծեր նշեցին ընթացիկ հնգամյակի առանցքային տարվա համար: Կոմունիստները տոն են տալիս խնայողության համար ծավալված մրցությանը: Առջևից է ընթանում կոմունիստ-էլեկտրամեքենավար Արտաշ Համբարյանը: Արդեն քառորդ դար է, ինչ նա էլեկտրաքարշն անխափան վարում է Սանահին—Թբիլիսի, Սանահին—Լենինական երթուղիներում և քաջ գիտի երկաթուղու շահագործման կարգը, գնացքներն արդյունավետ վարելու ձևերն ու մեթոդները: Պատահական չէ, որ կուսկոմիտեն քննարկել է Ա. Համբարյանի փորձը, հավանություն տվել դրան և որոշել այն տարածել կոլեկտիվի անդամների շրջանում:

Խնայողության ռեզերվները քիչ չեն թեթև արդյունաբերության ձեռնարկություններում: Բնավ չվնասելով որակին՝ ռացիոնալ ձևման և թափոնների օգտագործման միջոցով այստեղ կարելի է տնտեսել հումքը և նյութերը: Եվ գովելի է, որ Ալավերդու կարի արտադրամիավորման կուսկազմակերպությունը (բյուրոյի քարտուղար՝ Ռ. Երիցյան), իր գործունեությունն ուղղում է հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների արդյունավետ օգտագործմանն ու խնայողության ապահովմանը: Քաղաքական-մասսայական աշխատանքի և նյութական ու բարոյական խրախուսանքի միջոցների կիրառմամբ այստեղ մարդկանց համակում են աշխատանքային ոգևորությամբ, բարձրացնում նրանց պատասխանատվությունը: Կարող բանվորուհիներն ունեն անձնական հաշվառման քարտեր, որտեղ գրանցվում են հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության արդյունքները: Բարձրարտադրողական և խնայողաբար աշխատանքի լավ օրինակ են ցույց տալիս կոմունիստներ, կարող բանվորուհիներ Դ. Ցխադիաշվիլին, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ա. Աթոյանը, ՀԿԿ շրջկոմի բյուրոյի անդամ Լ. Քառյանը, Ա. Սարիբեկյանը, Է. Գարգալաջևան և տասնյակ ուրիշներ: Նրանց և ուրիշների ջանքերով միավորման կոլեկտիվն անցած տարի խնայված հումքի և օժանդակ նյութերի հաշվին թողարկել է ավելի քան 100 հազար ռուբլու արտադրանք, տնտեսել 48 հազար կվտ/ժամ էլեկտրաէներգիա, 148 տոննա պայմանական վառելանյութ:

Խնայողության ռեժիմի հետևողական կիրառումը, նյութաֆինանսական

# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Օ. Ն. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
ՀԿԿ Լենինյան շրջկոմի երկրորդ քարտուղար

*ԱՆՅԱԾ ԱՇՆԱՆՆ ԷՐ: 20—21 տարեկան մի աղջիկ եկավ կուսշրջկոմ: Դեմքի խելացի արտահայտությամբ, համեստ ու ճաշակով հագնված այդ աղջիկը բարևեց, նստեց իրեն առաջարկված աթոռին և, փոքր-ինչ շիկնելով, առանց նախաբանի ասաց.*

*— Հարկավոր է ընկեր Արսենին պրոպագանդիստի պարտականությունից ազատել. նա մեր արտադրամասում այլևս հեղինակություն չի վայելում:*

*Ո՞վ է «ընկեր Արսենը». այս հարցը, իհարկե, կարող էի իսկույն ուղղել անծանոթ աղջկան, բայց նրան անզգուշորեն չկաշկանդելու նպատակով որոշեցի չմիջամտել և առայժմ միայն լսել:*

*— Ես բանվորուհի եմ,— շարունակեց աղջիկը,— ուզում եմ մեր գործարանի պրոպագանդիստներից մեկի մասին խոսել, ավելի շուտ՝ նկարագրել նրա դատապարտելի վարմունքն իր կնոջ նկատմամբ... Նա իմ հարևանն է...*

*Աղջիկը նկարագրեց իմացածը ամենայն մանրամասնությամբ: «Ընկեր Արսենը» գործարանի լավագույն աշխատողներից է, նրա լուսանկարը ձեռնարկության «Պատվո տախտակ»-ից գրեթե չի իջնում: Մարդն ակտիվ է նաև հասարակական աշխատանքում: Բայց ահա չորս—հինգ ամիս է, ինչ այդ նույն «ընկեր Արսենը» գժտվել է իր կնոջ հետ և «խեղճին օր ու արև չի տալիս»...*

*— Ընկեր Արսենն իմ հոր տարիքին է,— ձայնին նոր երանգ տվեց աղջիկը: Ես էլ, հայրս էլ, երբ հետաքրքրվում ենք, ամեն անգամ մի անմիտ պատասխան է հորինում: Մեր արտադրության պետին էլ հենց երեկ ասել է. «Քո ինչ գործն է, դու նայիր, թե ես ինչպես եմ աշխատում արտադրությունում, ինչպես եմ կատարում իմ հասարակական հանձնարարությունը...»:*

*— Այնինչ բոլորովին էլ այդպես չէ: Քաղուսուցման դպրոցի պարապմունքներին ես առաջվա նման ներկայանում եմ բարեխղճորեն, բայց երբեմնի հարգված մեր պրոպագանդիստի խոսքն այժմ կարծես այլևս նախկին ներգործությունը չունի: Գոնե ինձ համար այդպես է: Ա՛խր, ընկեր Արսենին արտադրամասում այլևս առաջվա պես չենք հարգում... Մեզ ուրիշ պրոպագանդիստ տվեք...*

*— Եվ վե՞րջ:*

*— Վե՛րջ:*

*— Բայց չասացիք՝ ո՞ր գործարանում եք աշխատում դուք էլ, այդ «ընկեր Արսենն» էլ:*

*Աղջիկը ներողություն խնդրեց և ժպտալով հայտնեց ձեռնարկության անունը: Երիտասարդ բանվորուհուն շնորհակալությամբ ճանապարհելով՝ ասացի, որ նրա ահազանգը, եթե ճշմարիտ է, համապատասխան ընթացք կստանա, պրոպագանդիստ «ընկեր Արսենի» հարցով մենք կզբաղվենք:*

*Եվ ինձ մոտ եկած բանվորուհու բանավոր դիմումի փաստերը նույն օրը շրջկոմի գաղափարական հանձնաժողովի համապատասխան սեկտորի միջոցով ստուգեցինք ու պարզեցինք, որ դրանք ճիշտ են: Համոզվեցինք, որ մենք և, մանավանդ, ձեռնարկության կուսկազմակերպությունն այդ պրոպագանդիստի ընտրության հարցում սխալվել ենք: Նրան, իհարկե, փոխեցինք և կուսբյուրոյին էլ հանձնարարեցինք անդրադառնալ կոմունիստի վարքագծին:*



*Այս դեպքը մեկ անգամ ևս հաստատեց այն ճշմարտությունը, որ պրոպագանդիստների ընտրության ժամանակ խիստ կարևոր է հաշվի առնել նաև ունկնդրի, շարքային աշխատողների կարծիքը: Եվ մենք հետագայում վարվեցինք հենց այդպես. պրոպագանդիստների թեկնածուների կապակցությամբ ուշի-ուշով խորհրդակցեցինք կուսակցական ակտիվի, բանվորների, ծառայողների հետ:*

*Մեկ ուրիշ կարևոր հանգամանք. այժմ արդեն շրջանի բոլոր պրոպագանդիստներն առանց բացառության հեղինակավոր մարդիկ են: Այս իրողությունը արդյունք է այն բանի, որ շրջկոմը քաղուսուցման և տնտեսագիտական կրթության գործն այժմ սկսում է, առաջին հերթին, պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրությունից: Վերջին տարիներին այդ ասպարեզում կատարվել են որոշակի դրական տեղաշարժեր, էապես բարելավել ենք պրոպագանդիստական կադրերի որակական կազմը: Այժմ նրանց թիվը շրջանի կուսակցական և կոմերիտական կազմակերպություններում հասնում է 3.006 մարդու: Նրանցից 2.988-ը ունեն բարձրագույն կրթություն, զգալի մասը՝ գաղափարախոսական աշխատանքի երկարամյա փորձ: Պրոպագանդիստական աշխատանքում լայնորեն ներգրավում ենք արտադրության հրամանատարներին ու առաջատար մասնագետներին: Տնտեսական 206 ղեկավարներից 182-ը կատարում են այդ պատասխանատու և պատվավոր պարտականությունը:*

*Մեր պարտքն է մշտապես ելնել կուսակցության XXVI համագումարի այն դրույթներից, որ պրոպագանդիստը գլխավոր դեմքն է կուսակցական ուսուցման համակարգում: Հենց նրանով է մեծապես պայմանավորված, թե ինչպիսին կլինեն սեմինարները, քաղդպրոցները, համալսարանները... Կուսակցության գաղափարախոսական, պրոպագանդիստական ակտիվով է առաջին հերթին պայմանավորված մարդկանց վերաբերմունքը կուսակցական ուսուցման նկատմամբ: Այդպիսի պրոպագանդիստի իսկական օրինակ է «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման գլխավոր ձեռնարկության՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի գլխավոր տեխնոլոգ Վիկտոր Ներսիսյանը: Արդեն մեկուկես տասնամյակից ավելի է, ինչ գլխավոր տեխնոլոգի բաժնի պրոպագանդիստն է և այժմ ղեկավարում է ՍՄԿԿ սոցիալական քաղաքականությունն ուսումնասիրող գիտական կոմունիզմի դպրոցը, որտեղ ընդգրկված են ՍՄԿԿ 24 անդամներ և անդամության թեկնածուներ: Պրոպագանդիստի գործունեության մեջ էականը նրա բարձր հեղինակությունն է, որն արդյունք է ինչպես մատուցվող նյութի խոր իմացության, այնպես էլ կյանքում ու աշխատանքում նրա օրինակելի վարքագծի, ունկնդիրների ու իր ենթակաների հետ հաստատած գործարար և մարդկային լավ փոխհարաբերությունների: Պրոպագանդիստ Վ. Ներսիսյանի գործունեության մեջ արժեքավոր են հենց այդ հատկանիշները: Եվ բնավ պատահական չէր, որ նրա պրոպագանդիստական ուսանելի փորձը քննարկեցինք կուսշրջկոմի բյուրոյի նիստում, պատրաստեցինք դրան նվիրված հատուկ բյուլետեն և հանձնարարեցինք սկզբնական կուսկազմակերպություններին՝ այն լայնորեն տարածել ու արմատավորել կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության բոլոր օղակներում:*

*Ո՞րն է Վ. Ներսիսյանի պրոպագանդիստական աշխատանքի, նրա փորձի լությունը, որը բացահայտվեց ու արժեքավորվեց կուսշրջկոմի բյուրոյի նիստում: Նախ՝ նա լավ գիտի իր ունկնդիրներին, ծանոթ է նրանց նախասիրություններին ու արտադրական գործունեությանը: Դա հնարավորություն է ընձեռում նրան՝ պատշաճ կերպով ներգործելու լսարանի վրա, ապահովելու թեմայի դյուրին ու խոր յուրացումը: Երկրորդ՝ նա աշխատում է անձնական ստեղծագործական պլանով, որի դրույթներին նախապես ծանոթացնում է իր ունկնդիրներին, ապա՝ այն ներկայացնում կուսկազմակերպության քննարկմանը: Ընդ որում պլանը կազմելիս պրոպագանդիստը հաշվի է առնում ունկնդիր-*

«Անդրկովկասկաբել» արտադրամիավորումներում, № 27 դպրոցում նկատվել են պարապմունքների ձախողման դեպքեր։ Դեռևս չի վերացվել այն արատավոր պրակտիկան, երբ առանձին օղակների պարապմունքները միավորվում են պրոպագանդիստների հարգելի և անհարգելի բացակայության պատճառով։ Այդպիսի դեպքեր նկատվել են հատկապես «Հայճենապակի» արտադրամիավորման և ռետինատեխնիկական իրերի գործարանի կուսկազմակերպություններում։ Մի շարք կուսկազմակերպություններում չի ստեղծված պրոպագանդիստների ռեզերվ, որի առկայությունը կբացառեր այդպիսի երևույթները։

Շատ հաճախ կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների քարտուղարները, արհմիութենական կոմիտեների նախագահները իրենք իրենց ազատում են պրոպագանդիստական աշխատանք կատարելուց։ Ջեթօճառ կոմբինատում և ռետինատեխնիկական իրերի գործարանում երբեմն ինքնակամ փոխվել են պարապմունքների օրերը։ Առանձին կուսկազմակերպություններում մեծ թիվ են կազմում ունկնդիրների բացակայությունները պարապմունքներից։ Դատապարտելի է այն երևույթը, երբ հաճախ պարապմունքներն անցկացվում են աշխատանքային կամ ընդմիջման ժամերին։ Կուսկազմակերպությունների թույլ հսկողության հետևանքով առանձին պրոպագանդիստներ պատշաճ կերպով չեն նախապատրաստվում պարապմունքներին, ներկայանում են առանց կոնսպեկտի, չեն մշակում ունկնդիրների ռեֆերատների հատուկ թեմատիկա, իսկ այդ ամենը բացասաբար է անդրադառնում պարապմունքների արդյունավետ անցկացման վրա։

Ժամանակին բացահայտելով նշված և այլ կարգի թերություններ՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները միջոցառումներ են մշակել նոր ուսումնական տարում դրանք խիստ կանխելու համար։

---

Տասնմեկերորդ հնգամյակի բնագծերում

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՖՈՆԴԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

**Գ. Վ. ԴԱՎԹՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳՅՈՒՂԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ հաջողությամբ կյանքի են կոչում գյուղատնտեսության զարգացման տասնմեկերորդ հնգամյակի խնդիրները։ Դա կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական իրականացման արդյունք է։ Այս գործում կարևոր են այն վիթխարի կապիտալ ներդրումները, որ ամեն տարի պետությունը տրամադրում է ժողովրդական տնտեսության ագրարային սեկտորին։

1982 թ. միայն մեր հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի զարգացմանը հատկացվել են 333 մլն ռուբլի. այդ թվում գյուղատնտեսությանը՝ 284,7 մլն ռուբլի։

Անցած հնգամյակում հանրապետության սովխոզներում կապիտալ ներդրումների ծավալը, իններորդ հնգամյակի համեմատությամբ, աճել է շուրջ 34 տոկոսով։ Դա նպաստեց գյուղատնտեսության հիմնական արտադրաֆոնդերի մեծացմանը։ 1981 թ. տվյալներով այն կազմել է ավելի քան 1,7 մլրդ ռուբլի՝ 1965 թ. 546 և 1975 թ. 1.214 մլն ռուբլու դիմաց։ Հիմնական արտադրաֆոնդերն ավելացել են ոչ միայն բացարձակապես, այլև 100 հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության (ֆոնդապահովվածություն) և միջին տարեկան աշխատողի (ֆոնդազինվածություն) հաշվով։ Ֆոնդապահովվածությունը, օրինակ, 1981 թ., 1970 թվականի համեմատությամբ, մեծացել է 3,3 անգամ։ Ընդ որում աճի առավել բարձր տեմպեր են ապահովվել պետական տնտեսություններում։ Տասներորդ հնգամյակում այդ ցուցանիշները, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացել են մոտ 50 տոկոսով։ 1981 թ. տվյալներով, 100 հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության հաշվով պետական տնտեսությունների ֆոնդապահովվածությունը կազմել է 107 հազար ռուբլի, իսկ միջին տարեկան աշխատողի հաշվով՝ 8,1 ռուբլի կամ կոլտնտեսությունների համեմատությամբ համապատասխանաբար՝ 1,1 և 1,9 անգամ ավելի։

Մինչդեռ ֆոնդերի աճի այս բարձր տեմպերը չեն ուղեկցվել նրանց օգտագործման արդյունավետության մեծացմամբ։ Ավելին, ֆոնդահատույցը նույնիսկ նվազել է։ Այսպես, կոլտնտեսություններում, սովխոզներում ու պետական մյուս տնտեսություններում ֆոնդահատույցը, 1970 թվականի համեմատությամբ, 1981 թ. իջել է 32,5 տոկոսով։ Այն առավել նվազել է սովխոզնե-

րում, որտեղ տասներորդ հնգամյակում, նախորդ հնգամյակի միջինի համեմատությամբ, ֆոնդահատույցն իջել է 16, իսկ ֆոնդերի արդյունավետության գործակիցը (գյուղատնտեսական նշանակության հիմնական արտադրաֆոնդերի մեկ ռուբլու հաշվով ստացված շահույթը)՝ 50 տոկոսով։

Հանրապետության սովխոզներում 1981 թ. ֆոնդահատույցը կազմել է 34 տոկոս, այսինքն՝ յուրաքանչյուր 100 ռուբլու արժողությամբ գյուղատնտեսական նշանակության հիմնական ֆոնդերի հաշվով ստացվել է 34 ռուբլու համախառն արտադրանք։

Այժմ մեծ կարևորություն է տրվում կատարված ծախսումների փոխհատուցմանը, արդյունավետության բարձրացմանը։ ՍՄԿԿ XXVI համագումարը որոշակիորեն նշեց, որ 80-ական թվականներին ագրարային քաղաքականության առանձնահատկությունն այն է, որ ծանրության կենտրոնը տեղափոխվում է կապիտալ ներդրումների փոխհատուցման վրա, գյուղատնտեսության մթերատվության աճի, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի հետ նրա կապի խորացման ու կատարելագործման վրա։

Սովխոզներում ֆոնդահատույցի ցածր մակարդակը հետևանք է այն բանի, որ վերջին 10—15 տարիներին այստեղ զգալիորեն մեծացել է կապիտալ ներդրումների ծավալը, և համախառն արտադրանքի աճի տեմպերը ետ են մնացել հիմնական ֆոնդերի աճից։ Այս երևույթը հատկապես նկատվում է նոր յուրացված, քարքարոտ հողերի վրա կազմակերպված սովխոզներում, որտեղ ֆոնդապահովվածությունը 1,5—2 անգամ բարձր է հարևան տնտեսություններից, սակայն արտադրական ցուցանիշները խիստ ցածր են, քանի որ այդ տնտեսությունների մեծ մասը չեն հասել արտադրության նախագծային մակարդակին։ Ցածր ֆոնդահատույցը հետևանք է նաև այն բանի, որ վերջին 20 տարիներին սովխոզների թիվը հիմնականում ավելացել է տնտեսապես թույլ, վնասով աշխատող կոլտնտեսությունների հաշվին։ Բացի դա, անհամամասնություններ են նկատվում միևնույն մասնագիտացումն ունեցող տնտեսությունների կապիտալ ներդրումների չափերի և ֆոնդապահովվածության մակարդակների միջև։ Այս կարևոր հարցի կարգավորման համար նպատակահարմար է կապիտալ ներդրումները պլանավորելիս հիմք ընդունել գիտականորեն հիմնավորված և ՍՍՀՄ պետպլանի հաստատած նորմատիվները։

Ֆոնդահատույցի ցածր մակարդակի մյուս պատճառը հիմնական ֆոնդերի աճի տեմպերի առաջ անցնելն է աշխատանքի արտադրողականության աճից։ 1975 թ. համեմատությամբ, հիմնական ֆոնդերն աճել են 45, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 12 տոկոսով։ Այս երևույթի պատճառներից մեկն էլ այն է, որ տնտեսությունների մի մասում ճիշտ չեն որոշվում կապիտալ ներդրումների ուղղությունները, քիչ միջոցներ են տրամադրվում հիմնական արտադրաֆոնդերի ակտիվ տարրերի ավելացմանը, արտադրանքի աճի առավել նպաստավոր պայմանների ստեղծմանը։ Կուսակցության արդի ագրարային քաղաքականության մեջ վճռական դեր է հատկացվում հողերի մելիորացմանը և ոռոգմանը՝ որպես գյուղատնտեսական մթերքների երաշխավորված արտադրության պայմաններից մեկի։ Մեր հանրապետությունում, օրինակ, ոռոգելի հողերը կազմում են գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության 21 տոկոսը, բայց տալիս են բուսաբուծության համախառն արտադրանքի ավելի քան 80 տոկոսը։ Հետևաբար, պետական կապիտալ ներդրումներին զուգահեռ, տնտեսությունները, հատկապես կոլտնտեսությունները, իրենց սեփական միջոցներից պետք է որոշակի հատկացումներ կատարեն ոռոգելի տարածությունների ընդարձակման, ներտնտեսային ցանցի կարգավորման, ջրային ռեսուրսների ավելացման (արտեզյան ջրհորների և այլն), ջրման առաջավոր տեխնիկայի ներդրման համար։

Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետության ցածր մակարդակի գլխավոր պատճառները պետք է փնտրել անտնտեսվարության, արտադրությունն անհաշվենկատ վարելու մեջ։ Խոսքն առաջին հերթին վերաբերում է գյուղատնտեսական տեխնիկայի ոչ արդյունավետ օգտագործմանը։ Հանրապետության յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի այժմ միջին հաշվով ընկնում է, համապա-



տասխանաբար, 13 և 17 տրակտոր (ֆիզիկական), 11 և 14 բեռնատար ավտոմեքենա, երկուական հացահատիկային կոմբայն և մեծ քանակությամբ գյուղատնտեսական այլ մեքենաներ, գործիքներ ու սարքավորումներ։ Վերջին տարիներին տեխնիկայի քանակական աճի հետ մեկտեղ բարելավվել են նաև գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների որակական ցուցանիշները։ Մեքենատրակտորային հավաքակայանները համալրվում են կատարելագործված տեխնիկայով։ Ինչ խոսք, որոշակիորեն բարելավվել են տեխնիկայի օգտագործման ցուցանիշները։ Վերջին հինգ տարիներին պայմանական էտալոնային տրակտորի տարեկան արտադրանքն աճել է 21,9, իսկ հերթափոխայինը՝ 35,1 տոկոսով։ Մեկ պայմանական էտալոնային հեկտարի հաշվով տրակտորային աշխատանքների ինքնարժեքն իջել է 14,8 տոկոսով և կազմել 4,78 ռուբլի։ Այդուհանդերձ, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ առանձին շրջաններում ու բազմաթիվ տնտեսություններում նվազում է տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը։ Այսպես, Աբովյանի շրջանի կոլտնտեսություններում տրակտորների օգտագործման գործակիցը կազմել է 0,57, իսկ հացահատիկային կոմբայններինը՝ 0,38 միավոր։ Տրակտորների ու կոմբայնների օգտագործման ցուցանիշները ցածր են նաև Թալինի, Ամասիայի, Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Իջևանի, Թումանյանի շրջաններում։

Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում գրեթե չի կիրառվում տրակտորների ու կոմբայնների երկհերթ աշխատանքը։ Տնտեսությունները հսկայական գումարներ են ծախսում հզոր, բարձր արտադրողական մեքենաներ ձեռք բերելու համար, սակայն դրանք օգտագործվում են կարճ ժամանակահատվածում՝ համապատասխան ծավալի աշխատանք չլինելու պատճառով։ Օրինակ, հացահատիկահավաք կոմբայնները շատ տնտեսություններում հունձ են կատարում 40—80 հեկտար տարածության վրա, աշխատում են 4—5 օր, իսկ որոշ տնտեսություններում՝ 7—8 օր։ Դժվար չէ նկատել, որ այդ տնտեսություններում տեխնիկան ձեռք է բերվում առանց իրական պահանջները հաշվի առնելու։ Տեղի է տրվում տեխնիկայի ավելորդ կուտակման, ուժային մեքենաներն օգտագործվում են ոչ ըստ իրենց նշանակության։ Իսկ մի շարք տնտեսություններում էլ տեխնիկայով լավ ապահովվածության պայմաններում նույնիսկ շատ աշխատատար գործողություններ կատարվում են ձեռքով, որի հետևանքով մեքենայացված աշխատանքների բաժնեմասը ընդհանուր աշխատանքային ծախսումների մեջ փոքր տոկոս է կազմում։

Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակն առանձնապես ցածր է ծխախոտագործության, բանջարաբուծության, խաղողագործության և պտղաբուծության ասպարեզում։ Դրությունը լավ չէ նաև անասնաբուծության մարզում։ 1981 թ. տվյալներով, հանրապետության տավարաբուծական ֆերմաներում ջրամատակարարման մեքենայացման մակարդակը կազմել է 77,4, կերի մեքենայացված բաշխմանը՝ 26,1, գոմաղբի հեռացմանը՝ 81,2, կովերի մեքենայական կթինը՝ 42,7, կոմպլեքսային մեքենայացմանը՝ 20,8 տոկոս։ Այս ցուցանիշները ցածր են միութենական միջինից։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ անասնապահության մեքենայացման ցածր մակարդակը հետևանք է նաև անասնապահական շենքերի մի մասի անմխիթար վիճակի։ Հանրապետության կոլեկտիվ և պետական տնտեսություններում տավարի գլխաքանակի շուրջ 15 տոկոսը, խոզերի 17,5 և ոչխարների 23,1 տոկոսը պահվում են մի կերպ հարմարեցված, գրեթե ոչ պիտանի շենքերում, որտեղ չկան աշխատատար պրոցեսների մեքենայացման, հետևապես և՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման հնարավորություններ։ Շատ տնտեսությունների ֆերմաներում ու կերախոհանոցներում տեղակայված արժեքավոր մեխանիզմներն ու սարքավորումները ռացիոնալ չեն օգտագործվում, հաճախ են խափանումները, ճիշտ չի կազմակերպվում դրանց տեխնիկական սպասարկումը։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում ֆոնդահատույցի բարձրացման կարևոր ռեզերվ են աշխատատար գործողությունների մասնակի մեքենայացումից կոմպլեքսային մեքենայացմանն անցնելը, գյուղատնտեսության մեջ ինդուստրիալ եղանակների արմատավորումը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումում ուղղակիորեն նշվեց, որ կոլտնտեսություններն ու սովխոզները մեծ քանակությամբ արտադրանք պակաս են տալիս գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման դեռևս անբավարար մակարդակի, գյուղատնտեսական տեխնիկայի շատ տեսակների վատ շահագործման ու ցածր որակի հետևանքով։

Տնտեսությունների մի մասում հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետության վրա բացասաբար է ազդել տրակտորների ու գյուղատնտեսական մեքենաների պահպանման, տեխնիկական սպասարկման և նորոգման բազայի անբավարար վիճակը։ Հանրապետության 757 կոլեկտիվ ու պետական տնտեսություններից մեքենաների նորոգման տիպային արհեստանոց ունեն 99-ը, իսկ հարմարեցված՝ 348-ը։ Ընդամենը 12 տնտեսություններում կա տիպային և 14-ում հարմարեցված տեխնիկական սպասարկման կայան։ Մի շարք տնտեսություններ, չունենալով նույնիսկ տարրական պայմաններ, մեքենաների նորոգումները, հատկապես տեխնիկական սպասարկումը, կատարում են բացօթյա։

Ահա թե ինչու կոլտնտեսությունների ու սովխոզների մեծ մասի համար նպատակահարմար է շարժական տեխնիկան կենտրոնացնել մասնագիտացված միջտնտեսային միավորումներում։ Այս դեպքում պայմաններ կստեղծվեն տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մյուս մեքենաների ու գործիքների նորոգումը և տեխնիկական սպասարկումը կատարել լավ սարքավորված արհեստանոցներում, որակյալ կադրերի միջոցով։ Տեխնիկայի կենտրոնացումը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու մեքենաների օգտագործման արդյունավետությունը. այդ է վկայում Միության շատ շրջաններում ստեղծված միջտնտեսային ձեռնարկությունների փորձը։ Այսպես, Մոլդավական ՍՍՀ Ձադիր-Լունգի շրջանում կազմակերպված մեքենաօգտագործման ու նորոգման միջտնտեսային միավորումում երեք տարվա ընթացքում մեկ էտալոնային տրակտորի արտադրողականությունը բարձրացել է 17 տոկոսով, օրական ու հերթափոխային արտադրողականությունը՝ 27—28 տոկոսով, իսկ կատարված աշխատանքների (էտալոնային վարի) ինքնաժեքն իջել է 11,5 տոկոսով։ Այդպիսի փորձ կա նաև մեր հանրապետության Հրազդանի և Վարդենիսի շրջաններում, որտեղ մեքենաօգտագործման ցուցանիշները զգալիորեն, բարձր են նույնիսկ առաջավոր տնտեսությունների համապատասխան ցուցանիշներից։

Հաշվի առնելով գյուղատնտեսության մեքենայացման ասպարեզում միջտնտեսային կոոպերացիայի առավելությունները՝ մեքենաների շահագործման, տեխնիկական սպասարկման, նորոգման և օգտագործման արդյունավետության բարձրացման գործում, նպատակահարմար է հանրապետությունում կազմակերպել մեքենայացման միջտնտեսային միավորումներ։

Հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետության բարձրացման վրա որոշակի ազդեցություն է թողնում նրանց ակտիվ տարրերի (տրակտորներ, գյուղատնտեսական մեքենաներ, բազմամյա տնկարկներ, մթերատու անասուններ և այլն) տեսակարար կշռի բարձրացումը։ 1981 թ. տվյալներով, հանրապետության կոլտնտեսությունների գյուղատնտեսական հիմնական արտադրաֆոնդերի կառուցվածքում բազմամյա տնկարկները կազմել են 16,3, իսկ խաղողապտղաբուծական տնտեսություններում՝ 65—70 տոկոս։ Դժվար չէ նկատել, թե խաղողապտղաբուծական տնտեսություններում ֆոնդահատույցի բարձրացման գործում որքան մեծ է ինտենսիվ այգեգործության դերը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն խաղողի ու պտղատու այգիների նոսրության հետևանքով ամենամյա ոչ արտադրողական աշխատանքային ու նյութական ծախսերը հասնում են կես միլիոն ռուբլու, իսկ ոռոգման ջրի կորուստները կազմում են շուրջ 55 մլն խորանարդ մետր։ Ամեն տարի տնտեսությունները պակաս են ստանում մոտ 20 հազար տոննա խաղող և 13—14 հազար տոննա պտուղ։ Դժվար չէ նկատել, թե լիարժեք այգիների ստեղծումը ինչպիսի մեծ ռեզերվ է հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետության բարձրացման գործում։

Կարևոր նշանակություն ունի արտադրական հիմնական ու շրջանառու



ֆոնդերի օպտիմալ չափերի և այդ ֆոնդերի միջև ճիշտ համամասնության սահմանումը, մի հարց, որին, ցավոք, շատ տնտեսություններ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում։ Նկատի պետք է ունենալ, որ հիմնական արտադրաֆոնդերի միակողմանի ավելացման միջոցով անհնար է ընդլայնված վերարտադրություն ապահովել։ Ահա թե ինչու շրջանառու արտադրաֆոնդերը ժամանակին վերականգնելն ու լրացնելը արտադրությունն ինտենսիվ վարելու անհրաժեշտ պայմանն են։

ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացման համար նախատեսված միջոցառումներում առանձնակի նշանակություն է տրվում բերքատվության բարձրացմանը։ Դա նշանակում է առաջին պլանի վրա դնել սելեկցիան ու սերմնաբուծությունը, արդյունավետ օգտագործել պարարտանյութերի բոլոր տեսակները, յուրաքանչյուր գոտու, շրջանի ու տնտեսության բնատնտեսական պայմանները հաշվի առնելով մշակել ու արմատավորել հողագործության գիտականորեն հիմնավորված սիստեմ։

Անասնաբուծական մթերքների արտադրությամբ մասնագիտացված տընտեսություններում ֆոնդահատույցի մակարդակը մեծապես պայմանավորված է անասունների մթերատվությամբ, որի բարձրացման հիմքը կերի բազայի ամրապնդումն է՝ հիմնականում սեփական արտադրության հաշվին, նախրի, հոտի տոհմային կազմի, անասունների խնամքի ու պահպանման բարելավումը, մսացու անասունների և հատկապես մատղաշի ինտենսիվ աճեցումն ու բտումը, արտադրության մասնագիտացման խորացումն ու համակենտրոնացումը։ Այդ պահանջների կիրառման շնորհիվ հանրապետությունում բարձրացել է անասունների մթերատվությունը։ 1982 թվականին հանրային սեկտորում կովերի կաթնատվությունը, 1981 թվականի համեմատությամբ, ավելացել է 34 կիլոգրամով և յուրաքանչյուր կովից, միջին հաշվով, ստացվել է 2.088 կիլոգրամ կաթ։ Դա 1965 թ. համեմատությամբ կրկնակի ավելի է։ Բարելավվել են անասնապահության որակական ցուցանիշները։ Կոլեկտիվ ու պետական տնտեսություններից վերամշակման ընդունված կաթի շուրջ 55 տոկոսն առաջին տեսակի է, պետությանը վաճառած տավարի 60 տոկոսը եղել է միջակից բարձր գիրության։

Արտադրանքի որակի բարձրացումը համախառն արտադրանքի արժեքի մեծացման, հետևապես հիմնական ֆոնդերի արդյունավետության աճի կարևոր ռեզերվ է։ Ուստի չի կարելի հաշտվել այն վիճակի հետ, երբ հանրապետության շատ կոլեկտիվ ու պետական տնտեսություններ զգալի վնասներ են կրում ցածրորակ մթերքներ արտադրելու պատճառով։

Քիչ չեն այն շրջանները, որտեղ տոհմային աշխատանքներին և գյուղատնտեսական կենդանիների խնամքին անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում։ Դրա հետևանքով դանդաղում է հոտի որակական բարելավման պրոցեսը, տարիներ շարունակ մթերատվության ցուցանիշները մնում են ցածր մակարդակի վրա։ Այսպես, 1981 թ. հանրապետության 7 շրջաններում կովերի միջին կաթնատվությունը 1.600 կիլոգրամից չի անցել, իսկ ոչխարի բրդատվությունը 5 շրջաններում կազմել է երկու կիլոգրամ, շատ շրջաններում պետությանը վաճառվող տավարի միջին կենդանի քաշը զգալիորեն ցածր է։

Արդի պայմաններում անասնապահության ասպարեզում գլխավոր խնդիրը մթերատվության բարձրացումն է։ Իսկ դրան կարելի է հասնել գլխաքանակի որակական կազմի կատարելագործման, տոհմային աշխատանքի բարելավման, բարձր մթերատու ցեղատեսակների պատկանող կենդանիների բազմացման, կերի արտադրության զգալի աճի, դրա որակի բարձրացման և ռացիոնալ օգտագործման միջոցով։

Հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի անասունների լիարժեք կերակրումը, իսկ դրա համար անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր տնտեսություն ստեղծի կերի կայուն բազա։ Ցեղային լավագույն հատկանիշներ ունեցող կենդանիները չեն կարող ապահովել բարձր մթերատվություն, եթե չստանան գիտականորեն հիմնավորված կերաբաժնով նախատեսված կերը։ Մինչդեռ շատ տնտեսություններում ամեն տարի կուտակված կերի զգալի քանակությունը

ցածրորակ է։ Հանրապետությունում արտադրված մեկ կիլոգրամ կերամիավորը պարունակում է 60—65 գրամ մարսելի պրոտեին, նորմայով նախատեսված 110—120-ի փոխարեն։ Դա նշանակում է, որ անասունների պրոտեինի պահանջմունքն ապահովելու համար անհրաժեշտ է ծախսել կրկնակի չափով շատ կերամիավոր։ Ուրեմն, կոշտ և հյութալի կերի մեջ սպիտակուցի նվազ պարունակությունը հանգեցնում է կերի, հատկապես խտացրած կերի, գերածախսի, բացասաբար է անդրադառնում անասունների մթերատվության վրա, որի պատճառով 25—30 տոկոսով պակաս արտադրանք է ստացվում։

ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. հոկտեմբերյան պլենումը համակողմանիորեն քննարկեց հացահատիկային տնտեսության և կերարտադրության բնագավառում կատարվող աշխատանքը և մշակեց այդ ճյուղերի հետագա ինտենսիվացման միջոցառումներ։ Խնդիր է դրված կերարտադրությունը զարգացնել այն հաշվով, որպեսզի հնգամյակի վերջում խոշոր եղջերավոր անասունների մեկ պայմանական գլխի համար տարեկան միջին հաշվով կուտակվի 18—19 ց կերամիավոր։ Դրան կարելի է հասնել ցանովի կերային կուլտուրաների բերքատվությունը շեշտակի բարձրացնելու, ցանքատարածությունների կառուցվածքը կատարելագործելու միջոցով՝ ընդարձակելով բազմամյա խոտաբույսերի, հատիկալոբազգի կուլտուրաների ցանքատարածությունները, լայնորեն արմատավորելով սոյայի, եգիպտացորենի, ոլոռի, վիկի, սիսեռի բարձր բերքատու սորտերը և հիբրիդները։

Պարենային ծրագրի անկապտելի մասն է հոգատարությունը գյուղատնտեսության կադրերի նկատմամբ, գյուղում նրանց ամրացնելու, մասնագետների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու նկատմամբ։ Շատ շրջաններում ու տնտեսություններում խիստ զգացվում է կթվորների, անասնապահների ու հովիվների սեփական կադրերի պակաս, ընդ որում այն կադրերի, ովքեր կարող են ոչ միայն իրենց աշխատանքով ճիշտ կազմակերպել արտադրությունը, ապահովել բարձր ցուցանիշներ, այլև իրենց փորձով ու հմտությամբ օգնել և դաստիարակել երիտասարդ անասնապահներին։ Առանձին տնտեսություններում անասնապահների ու հովիվների զգալի մասը հրավիրվում է դրսից, որոնց կարիքները հոգալը շատ ավելի թանկ է նստում, քան տեղական կադրերի առկայության դեպքում։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Անասնապահության մեջ զբաղված աշխատողներին կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում ամրացնելու լրացուցիչ միջոցառումների մասին» և «Կոլտնտեսություններն ու սովխոզները ղեկավար կադրերով ու մասնագետներով է՛լ ավելի ամրապնդելու, գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու մասին» որոշումները լայն հեռանկարներ են բացում գյուղատնտեսության, այդ թվում՝ անասնապահության մեջ աշխատավորական կայուն կոլեկտիվների ստեղծման, աշխատանքի վարձատրության աճի, բանվորների ու կոլտնտեսականների, ղեկավար աշխատողների ու մասնագետների նյութական շահագրգռվածության բարձրացման և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման համար։

Պարենային պրոբլեմի հաջող լուծման նախապայմանը կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդումն է, տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, միջոցառումների կոմպլեքսի իրականացումը, որի նպատակն է գյուղատնտեսական ձեռնարկություններում ամրապնդել տնտհաշվարկը, արտադրության ավելացման և որակի բարձրացման գործում ուժեղացնել գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումի պահանջներին համապատասխան՝ անհրաժեշտ է առավել լրիվ գործադրել գյուղատնտեսության հզոր արտադրական պոտենցիալը, խնայողաբար, արդյունավետ օգտագործել նյութական, ֆինանսական ու աշխատանքային ռեսուրսները, հողի յուրաքանչյուր հեկտարը, պարարտանյութերի յուրաքանչյուր կիլոգրամը, յուրաքանչյուր մեքենան ու մեխանիզմը։

---

# ԺԱՄԱՆԱԿԻ ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

**Թ. Դ. ՉԱԼՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

Երկրի ժողովրդական տնտեսության ինտենսիվ զարգացման, նրա արդյունավետության բարձրացման բարդ ու մասշտաբային խնդիրների հաջող լուծումն անմիջականորեն կապված է ստեղծված արտադրական պոտենցիալի ռացիոնալ օգտագործման, նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների ըստ ամենայնի խնայողության հետ։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում, «էկոնոմիկան պետք է լինի խնայողական» կոչը ոչ թե ժամանակավոր բնույթ կրող պահանջ է, այլ կոմունիստական շինարարության իրականացման կուսակցության հետևողական քաղաքականություն, մեր սոցիալիստական հասարակության բոլոր անդամներին ներկայացվող մշտական պահանջ։ Մեր երկիրն է՛լ ավելի հզոր, իսկ մեր առաջընթացն է՛լ ավելի մեծ կլինի, եթե մենք սովորենք խնայել աշխատաժամանակի ամեն մի րոպեն, հումքի ու վառելիքի ամեն մի գրամը, մեքենայի ամեն մի դետալը, աշխատանքային ամեն մի կոպեկը։

Խնայողությունը պահանջում է կոմպլեքս միջոցառումներ։ Ամենուրեք և ամեն ինչում խնայողության պահանջը ելնում է այն բանից, որ ՍՍՀՄ էկոնոմիկան, ունենալով բնական, նյութական և աշխատանքային վիթխարի ռեսուրսներ, զարգացել և լայն մասշտաբների է հասել, մի շարք ճյուղերի գծով աշխարհում չունի իր մրցակիցը, բայց և այնպես պատրաստի արտադրանքի մեջ կենդանի և առարկայացած աշխատանքի արդյունավետությունը դեռևս ցածր է։ Մենք ազգային եկամտի մեկ միավորի համար ավելի շատ հումք ու էներգիա ենք ծախսում, քան մի շարք այլ երկրներ։

Այժմ գլխավոր հարցը ոչ միայն այն է, թե որքան է արտադրվել, այլև այն, թե ինչ՝ գնով, աշխատանքի ինչպիսի ծախսումներով է դա ձեռք բերվել։ Նվազագույն ծախսումներով բարձր արդյունքի ստացման մեջ արտահայտվում են հասարակության տնտեսական գործունեության արդյունավետությունը, առկա ռեսուրսների ճիշտ օգտագործումը։

Խնայողությունը լայն հասկացություն է։ Այն իր մեջ ամփոփում է բարդ ու բազմազան մի ամբողջ համակարգ և ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը, ամենից առաջ արտադրության գլխավոր գործոնները՝ աշխատանքի առարկաները, միջոցները և աշխատուժը։ Խնայողությունն ամեն ինչում, մեծում և փոքրում, հանգում է ժամանակի, նյութական և աշխատանքային ռեսուրսների հմուտ ու հաշվենկատ օգտագործմանը։ Խնայողության ամբողջ համակարգում ամենակարևորը ժամանակի, հատկապես աշխատաժամանակի տնտեսումն է։ Ամեն մի խնայողություն, վերջին հաշվով, հանգում է ժամանակի տնտեսմանը։ Ժամանակի խնայողության օրենքը գործում է բոլոր արտադրաեղանակների պայմաններում, սակայն սոցիալիզմի օրոք այն յուրահատուկ ձև և բովանդակություն ունի։ Կ. Մարքսը գրել է. «...ժամանակի խնայողությունը, ինչպես նաև արտադրության տարբեր ճյուղերի միջև աշխատաժամանակի պլանաչափ բաշխումը մնում է որպես կոլեկտիվ արտադրու-

թյան վրա հիմնված առաջին տնտեսական օրենքը» (Архив Маркса и Энгельса, т. IV, стр. 119)։

Մինչդեռ, ինչպես նշում է Յու. Վ. Անդրոպովը «Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր» հոդվածում, սովետական հասարակության զարգացման արդի փուլում աշխատանքի կառավարման ռեալ պայմաններն այնպիսին են, որ մեզ մոտ լրիվ ուժով չի գործում աշխատաժամանակի խնայողության օրենքը։ Դրա պատճառը զգալի չափով ֆիզիկական ծանր, անհրապույր, հնաձև աշխատանքների առկայությունն է, դրանց մեքենայացման, առավել ևս՝ ավտոմատացման դանդաղ տեմպերը (տե՛ս «Լենինյան ուղիով» № 3, 1983, էջ 11)։

Մարդու կյանքն ու գործունեությունն ընթանում է ժամանակի մեջ։ Որքան խելացի և արդյունավետ օգտագործվի ժամանակը, այնքան բովանդակալից կլինի կյանքը։ Ժամանակի երկու մասերը՝ աշխատանքային և արտաաշխատանքային, այդ թվում նաև՝ ազատ ժամանակը, գտնվում են սերտ կապի և փոխգործողության մեջ։ Ժողովրդական տնտեսության ինտենսիվ զարգացումը և դրա արդյունավետության բարձրացումը ենթադրում են ո՛չ միայն աշխատաժամանակի, այլև ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործում։ Ճիշտ է, բոլոր դեպքերում էլ ժամանակի որոշիչ մասը աշխատաժամանակն է, քանի որ այն ընդգրկում է կենսագործունեության գլխավոր ոլորտը՝ արտադրությունը, և պատահական չէ, որ ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց առավել ռացիոնալ օգտագործել աշխատաժամանակը, վերացնել նրա անարտադրողական ծախսումներն ու կորուստները, ավելացնել աշխատավորների ազատ ժամանակը։

Ժամանակի խնայողության օրենքի էությունը հանգում է աշխատաժամանակի և ազատ ժամանակի ամբողջական ծախսերի նվազեցմանն ու տնտեսմանը։ Աշխատաժամանակի խնայողությունը հնարավորություն է ընձեռում նույն ծախսումներով մեծացնելու արտադրվող նյութական բարիքների քանակը։ Եվ հասարակությունն ինչքան քիչ ժամանակ ծախսի իրեն անհրաժեշտ նյութական բարիքների արտադրության վրա, այնքան շատ ժամանակ կունենա նույն պայմաններում այլ անհրաժեշտ կենսագործունեություն իրականացնելու համար։

Ժամանակը, որպես մեծագույն հարստություն, պահանջում է, որ նրա ոչ մի րոպեն անարդյունք չանցնի։ Դրա խնայողությունը և արդյունավետ օգտագործումը կյանքի բոլոր բնագավառներում հասարակության և նրա անդամների զարգացման կարևոր պայման է։ Վ. Ի. Լենինը, բարձր գնահատելով ժամանակի խնայողության դերը, նշել է. «Ժամանակ շահել նշանակում է ամեն ինչ շահել» (ԵԼԺ, հ. 44, էջ 59)։

Ժամանակն անսահմանափակ չէ, և հետզհետե աճում ու մեծանում է դրա տնտեսական ու սոցիալական արժեքը։ 1981 թ. մեկ օրում Հայաստանում արտադրվել է 39,2 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 14,1 հազար կենցաղային ժամացույց, 212,8 հազար զույգ գուլպա, 199 հազար հատ տրիկոտաժե սպիտակեղեն, 1.113 տոննա հանքային պարարտանյութ, 40 հազար զույգ կաշվե կոշիկ և այլն։ Իսկ երկրի մասշտաբով աշխատանքային օրն իր տնտեսական բովանդակությամբ մի վիթխարի մեծություն է, որի ընթացքում ստացվում է մի քանի մլրդ ռուբլու արտադրանք։ Ընդ որում ոչ միայն օրը, այլև ժամը, րոպեն մեծ արժեք ունեն։ 1980 թ. ՍՍՀՄ-ում մեկ րոպեում արտադրվել է ավելի քան 2,5 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, արդյունահանվել է 1.150 տոննա նավթ (ներառյալ գազի կոնդենսատը), ավելի քան 827 հազար խմ բնական գազ, 1.362 տոննա քարածուխ, արտադրվել է 281 տոննա պողպատ, 14 հեռուստացույց, 11 սառնարան և շատ ու շատ այլ արտադրատեսակներ։

Աշխատաժամանակի ընդամենը մեկ րոպեի կորուստը երկրի մասշտաբով համասարազոր է ավելի քան 250 հազար բանվորի ցերեկային լրիվ աշխատանքային օրվա։ Ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի մեկ տոկոս խնայողությունը համասարազոր է ավելի քան 1,2 մլն մարդու աշխատանքի։ Մետաղահատ բոլոր հաստոցների վրա աշխատող բանվորների հերթափոխի ընթացքում մեկ րոպեի պարապուրդը տալիս է ավելի քան երկու



հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիայի կորուստ, որով կարելի է ձուլել 20 տոննա պողպատ, կամ պատրաստել 10 հազար զույգ կոշիկ, կամ 2,5 հազար ձեռքի ժամացույց։ Բնական է, որ տարեցտարի արտադրության տեխնիկական մակարդակի և դրա մասշտաբների աճմամբ բարձրանում են աշխատաժամանակի միավորի արժեքն ու բովանդակությունը։ Մինչդեռ շատ ձեռնարկություններում ու արտադրական օբյեկտներում կորչում են ո՛չ թե րոպեներ, այլև մարդ-օրեր, որոնք հանգեցնում են վիթխարի չափերի հասնող նյութական վնասների։ Աշխատաժամանակի մեծ կորուստներ են առաջանում այն պատճառով, որ զգալի թվով աշխատողներ գործից ուշանում են կամ այն շուտ ավարտում, աշխատանքի ժամին զբաղվում են այլ գործերով։ Միլիոնավոր մարդ-օրեր անարդյունք կորչում են գործալքման, պարապուրդների և նույնիսկ ադմինիստրացիայի թույլտվությամբ աշխատանքի չներկայանալու պատճառով։

Աշխատաժամանակի խնայողությունը և արդյունավետ օգտագործումը չափվում են ո՛չ միայն նյութական արժեքներով, այլև կենդանի աշխատանքով։ Այն հավասարազոր է արտադրության մեջ լրացուցիչ աշխատուժ ներգրավելուն։ Մինչդեռ երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հարաճուն տեմպերին զուգընթաց աշխատուժի պակաս է զգացվելու ինչպես մոտ ապագայում, այնպես էլ հեռանկարային ժամանակաշրջանում։ Դա բացատրվում է բնակչության բնական աճի տեմպերի նվազմամբ և աշխատանքային ռեսուրսների սահմանափակ լինելով։

Տարեցտարի մեծանում է նաև աշխատուժի պահանջը ոչ արտադրական ոլորտում՝ առևտրում, կենցաղսպասարկման, առողջապահության, ժողովրդական կրթության և այլ բնագավառներում։ Վիթխարի ծավալի աշխատանք է պահանջվում երկրի հյուսիսային և արևելյան շրջանների յուրացման ու զարգացման համար։

Եթե անցյալում էկոնոմիկան զարգանում էր գլխավորապես աշխատողների թվի և կապիտալ ներդրումների ավելացման, այսինքն՝ քանակական գործոնների հաշվին, ապա այժմ առաջին պլան են մղվում որակական գործոնները՝ արտադրության ինտենսիվ զարգացումը, դրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ։ Խնդիր է դրված, որ ընթացիկ հնգամյակում առաջին անգամ ազգային եկամտի աճի տեմպերը պետք է գերազանցեն կապիտալ ներդրումների աճի տեմպերին։

Ինչպես երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում արդյունաբերական շատ առաջավոր ձեռնարկություններ արտադրանքի բարձր աճ են ապահովում ո՛չ միայն առանց աշխատողների թվի ավելացման, այլև նույնիսկ դրանց կրճատման պայմաններում։ Դա, ամենից առաջ, աշխատանքի գիտական կազմակերպման, արտադրական կարողությունների, աշխատաժամանակի խելացի և արդյունավետ օգտագործման արդյունք է։ Դրա շնորհիվ հնգամյակի առաջին երկու տարիների սոցիալ-տնտեսական մի շարք հիմնական պլանային առաջադրանքներ հանրապետությունում կատարվեցին ու գերակատարվեցին։ Պլանից ավելի թողարկվեց 339 մլն ռուբլու ապրանքային արտադրանք։ Արդյունաբերական արտադրության աճը պլանավորված 10,5 տոկոսի փոխարեն կազմեց 11,5 տոկոս։ Աշխատանքի արտադրողականությունն աճեց 4,6 տոկոսով։

Հանրապետության արդյունաբերության աշխատողները 1982 թ. տնտեսել են 762 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 15 հազար տոննա գլանվածք, 24 հազար տոննա դիզելային վառելիք ու բենզին և շատ այլ նյութական ռեսուրսներ։ Այս առումով բնորոշ են Ալավերդու լեռնամետալուրգիական և Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատների, Երևանի «Հայէլեկտրալույս» միավորման և մի շարք այլ ձեռնարկությունների ցուցանիշները։ Լավ արդյունքների են հասել նաև սննդի, անտառային և փայտամշակման արդյունաբերության ձեռնարկությունները։ Նրանք արտադրության ծավալի աճի գերակշռող մասն ապահովեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Ցավոք, քիչ չեն և պլանները թերակատարող գործարանները։ Աշխատանքի արտադրողականության, արդյունաբերական արտադրանքի ծավալի և իրացման 1982 թվականի պլանը չկատարեցին զգալի թվով ձեռնարկություններ։

Այդ պատճառով աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ աճեց ընդամենը 1,1 տոկոսով։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումը նշեց, որ «էկոնոմիկայի արդյունավետության գլխավոր ցուցանիշը՝ աշխատանքի արտադրողականությունը, աճում է այնպիսի տեմպերով, որոնք մեզ բավարարել չեն կարող»։ Մինչդեռ արտադրության արդյունավետությունը, վերջին հաշվով, որոշվում է աշխատանքի արտադրողականությամբ։ Եթե Միության մասշտաբով արդյունաբերական արտադրանքի աճի 75 տոկոսն է տասներորդ հնգամյակում ստացվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, ապա մեր հանրապետությունում այդ ցուցանիշը կազմել է ընդամենը 44,5 տոկոս, իսկ անցած տարում՝ ընդամենը 29 տոկոս։ Նշանակում է, արտադրության աճը հիմնականում էքստենսիվ գործոնների արդյունք է, որը չի համապատասխանում ինտենսիվ զարգացման արդի պահանջներին։ Միանգամայն օրինաչափ է ՀԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1982 թ.) պլենումի պահանջը՝ արտադրանքի ծավալի ողջ աճն ստանալ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Աշխատանքի արտադրողականությունն արտահայտվում է միավոր ժամանակում թողարկված արտադրանքի քանակով կամ միավոր արտադրանքի թողարկման աշխատաժամանակի խնայողությամբ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման տնտեսական բովանդակությունն արտադրանքի աճի ստացումն է աշխատանքի նվազ ծախսումներով։ Աշխատանքի արտադրողականության միայն մեկ տոկոսի բարձրացումը երկրի մասշտաբով համարժեք է 5 մլրդ ռուբլու լրացուցիչ ազգային եկամտի, իսկ արդյունաբերության մեջ՝ ավելի քան 6 մլրդ ռուբլու արտադրանքի կամ 500 նոր խոշոր ձեռնարկության գործարկման։ ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց ընթացիկ հնգամյակում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստանալ ազգային եկամտի և արդյունաբերական արտադրանքի աճի ավելի քան 90 տոկոսը և տնտեսել ավելի քան 17 մլն մարդու աշխատանք։ Այդ խնդրի լուծումը պահանջում է արդյունավետ օգտագործել այն բոլոր գործոնները, որոնք ապահովում են աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Տվյալ դեպքում առանձնացնելով միայն ժամանակի խնայողության հարցը, նշենք, որ արդյունավետ աշխատանքը պահանջում է աշխատաժամանակի խելացի օգտագործում, նրա կորուստների կանխում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա բացասաբար են ազդում աշխատաժամանակի ինչպես բացահայտ կորուստները (պարապուրդներ, գործալքումներ, հիվանդության պատճառով գործի չներկայանալ), այնպես էլ քողարկված կորուստները, որոնք արտադրական անձնակազմի հնարավորությունների ոչ լրիվ օգտագործման, աշխատանքի և արտադրության ոչ ճիշտ կազմակերպման հետևանք են։

Աշխատաժամանակի կորուստների կրճատումը, ծախսվող ժամանակի յուրաքանչյուր միավորի արդյունավետության բարձրացումը մեծապես կնպաստեն արտադրության և աշխատանքի արտադրողականության աճին։

Տնտեսագետների հաշվարկներով, երկրի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատաժամանակի կորուստների թեկուզ կիսով չափ կրճատումը կապահովի աշխատանքի արտադրողականության բարձրացումը 4—5 տոկոսով։ Իսկ աշխատանքի արտադրողականության աճի յուրաքանչյուր տոկոսը նշանակում է մի քանի մլրդ ռուբլու լրացուցիչ արտադրանքի թողարկում։ Աշխատաժամանակի կորուստներն արտահայտվում են աշխատաժամանակի օրացուցային ֆոնդի և դրա փաստացի օգտագործված ժամանակի տարբերությամբ։ Աշխատաժամանակի կորուստների վերլուծությունը հնարավորություն է ընձեռում բացահայտելու կոնկրետ պատճառներն այս կամ այն ձեռնարկությունում և համապատասխան միջոցներ ձեռնարկելու դրանց վերացման, կրճատման համար։

Ուսումնասիրությունները վկայում են, որ փաստացի աշխատաժամանակի արդյունավետության մակարդակն էլ դեռևս չի գտնվում պատշաճ բարձրության վրա, այսինքն՝ այդ ժամանակն էլ ռացիոնալ, արտադրողաբար չի օգտագործվում։ Առանձին ձեռնարկությունների օրինակները հաստատում են, որ այնտեղ, որտեղ լավ է կազմակերպված աշխատանքը, լավ են նաև արդյունքները։ Այստեղ վճռական դեր է խաղում աշխատանքի գիտական կազմակերպումը, որը պետք է ընդգրկի ո՛չ միայն աշխատատեղի, արտադրամասի, այլև առանց բացառության ձեռնարկության ողջ գործունեությունը։ Աշխատանքի գիտական կազմակերպումը նպաստում է արտադրության աճին, որակի բարձրացմանը, խնայողությանը, աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործմանը։ Դրա ներդրմամբ ամեն մի աշխատատեղում հերթափոխի ընթացքում ամբողջ 480 աշխատանքային րոպեն օգտագործվում է ռացիոնալ և առավելագույն փոխհատուցմամբ։ Միայն այդ գործոնի հաշվին արտադրանքի թողարկումն ավելանում է 8—12 տոկոսով։

Աշխատաժամանակի կորուստները զգալի չափով անկարգապահության, հանձնարարված գործի նկատմամբ անպատասխանատվության, անկազմակերպվածության հետևանք են։ Այժմ, երբ արտադրության աճին զուգընթաց, ընդլայնվում ու բարդանում են ժողովրդական տնտեսության ճյուղերի և ձեռնարկությունների կապերը, նման վրիպումները դառնում են աշխատաժամանակի և մյուս կորուստների ու վնասների հիմնական պատճառը։

Աշխատանքային կարգապահության ամենակոպիտ խախտումը գործալքումն է, որը, թեև զգալիորեն կրճատվել է, այնուամենայնիվ, դեռևս մեծ չափերի է հասնում։ 1981 թ. այն կազմել է ընդհանուր կորուստների մոտ քառորդ մասը։ Միանգամայն տեղին ընկեր Յու. Վ. Անդրոպովը Մոսկվայի հաստոցաշինարարների հետ հանդիպման ժամանակ նշեց, որ գործալիքը, խոտանարարը, անբանը ոչ այնքան իրեն է վնասում, որքան կոլեկտիվին, ողջ հասարակությանը։

Միայն Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատում 1982 թ. աշխատաժամանակի կորուստները կազմել են հազարավոր մարդ-օրեր, որի կեսը բաժին է ընկնում գործալքումներին։ Անցյալ տարի ձեռնարկությունում աշխատանքի են ընդունվել 464 և աշխատանքից ազատվել 582 մարդ, որից 110-ը գործալքման պատճառով։ Պատահական չէ, որ կոմբինատում 1982 թ., նախորդ տարվա համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունն իջել է 7,9 տոկոսով և դա այն դեպքում, երբ արտադրանքի թողարկման պլանը նվազեցվել է 10 մլն ռուբլով։ Երևանի կաթի կոմբինատում աշխատաժամանակի կորուստների հետևանքով անցյալ տարի պակաս թողարկվեց շուրջ մեկ մլն ռուբլու արտադրանք։ Կաթի արտադրամասում աշխատաժամանակի կորուստները, 1981 թ. համեմատությամբ, ավելացել են 1,8 անգամ, չոր սառույցի արտադրամասում և ավտոտնտեսությունում՝ մոտ կրկնակի չափով, էլեկտրաարտադրամասում՝ 1,4 անգամ։

Կարգապահության կոպիտ խախտումների և թանկարժեք ժամանակի կորուստների են հանգեցնում հանձնարարված գործը պատշաճ ձևով չկատարելը, աշխատաժամանակը ոչ արդյունավետ օգտագործելը, աշխատանքի ժամերին անցկացվող խորհրդակցությունները, ժողովները, սպորտային և այլ կարգի միջոցառումները։

Փորձը վկայում է, որ աշխատաժամանակի կորուստների մեծ մասը սովորաբար բաժին է ընկնում շաբաթվա սկզբին և վերջին, հերթափոխի առաջին և վերջին ժամերին։ Շատ ձեռնարկություններում սննդի հարցը այնպես չի կազմակերպված, որ ճաշարաններում ու բուֆետներում աշխատաժամանակի կորուստներ չլինեն։ Ընդհանրապես ժամանակի մեծ կորուստներ են առաջանում սպասարկման և ծառայությունների ոլորտներում։ Եվ պատահական չէ, որ այսօր կուսակցությունը լուրջ ուշադրություն է նվիրում այդ ոլորտի ընդլայնման, աշխատանքների բարելավման հարցերին։ Բնորոշ է, որ աշխատաժամանակի ընդհանուր կորուստի մեջ մեծ չափերի է հասնում նաև ադմինիստրացիայի թույլտվությամբ աշխատանքի չներկայանալը։

Աշխատաժամանակի մեծ կորուստների պատճառ է աշխատուժի հոսունությունը։ Չնայած վերջին ժամանակներս նկատվում է հոսունության որոշակի նվազում, այնուամենայնիվ, այն դեռևս զգալի է, իսկ վնասը՝ մեծ։ Եթե 1965 թ. հանրապետության արդյունաբերության մեջ բանվորների հոսունու-

Ճյունը հասնում էր 25,1 տոկոսի, ապա 1981 թ. այն բավական նվազեց։ Ամեն տարի իրենց դիմումի համաձայն, ինչպես նաև գործալքման և այլ խախտումների պատճառով հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններից ազատվում են տասնյակ հազարավոր աշխատողներ, որի հետևանքով առաջացած վնասը հասնում է միլիոնավոր ռուբլիների։ Եթե մի շարք ձեռնարկություններում բանվորների հոսունությունը զգալիորեն կրճատվել է («Պոլիվինիլացետատ» գործարանում, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում և այլ ձեռնարկություններում այն կազմում է 10—11 տոկոս), ապա շատ տեղերում այն դեռևս մեծ է։ Այդպես է վիճակը, օրինակ, սննդի արդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության և գյուղական շինարարության մինիստրությունների համակարգում։

1981 թ. Լենինականի գուլպանասկեղենի արտադրամիավորումում ընդունվել է մոտ 300 բանվոր, իսկ ազատվածների թիվն ավելի մեծ է։ Բանվորական կազմի այդպիսի փոփոխությունները ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական լուրջ վնաս են պատճառում։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշխատանքից ազատվելը գործավարձով աշխատանքի պայմաններում արտադրողականությունը գցում է 15—25 տոկոսով, իսկ ժամանակավարձով աշխատողների մոտ՝ կրկնակի չափով։ Նոր վայրում նրանք արտադրողականության միջին մակարդակին են հասնում միայն երկու-երեք ամիս հետո, իսկ մասնագիտությունը փոխելու դեպքում այդ ժամանակամիջոցը տևում է մինչև 5—6 ամիս։ Եթե դրան ավելացնենք, որ հոսունության պատճառով աշխատավայրը փոխողը միջին հաշվով կորցնում է 30 օր և չի մասնակցում նյութական արտադրությանը, ապա պարզ կդառնա, որ ժողովրդական տնտեսության մասշտաբով ժամանակի կորուստները և վնասները շատ ավելի մեծ չափերի են հասնում։ Հոսունության պատճառները բազմազան են, և պահանջվում է արտադրության ամեն մի ճյուղում, ձեռնարկությունում կոնկրետ ուսումնասիրել դրանք և միջոցներ ձեռնարկել դրանց վերացման համար։

Ինչպես ընթացիկ տարվա մարտի 24-ի հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում նշեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, մենք իրավունք չունենք հաշտվելու այն իրողության հետ, որ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ դեռևս մեծ թիվ է կազմում տարբեր պատճառներից բխող աշխատաժամանակի կորուստը։

Եզրակացությունը մեկն է՝ անհրաժեշտ է ըստ ամենայնի և ամենուրեք բարձրացնել աշխատանքային, արտադրական, տեխնոլոգիական կարգապահությունը։ Շատ դիպուկ է ասված՝ դա մեզանից որևէ կապիտալ ներդրում չի պահանջում, բայց տալիս է հսկայական արդյունք։

---



# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՃԳՆԱԺԱՄԸ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

**Վ. Գ. ՕՍԻՊՈՎ**

ՄԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ, որի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից կոմունիզմին հեղափոխական անցումն է, գաղափարական պայքարը խիստ սրվում է։ Երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ։ Իմպերիալիզմը «գործի է դնում միջոցների մի ամբողջ սիստեմ, որոնց նպատակն է քայքայել սոցիալիստական աշխարհը, խարխլել այն» (**ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը**, էջ 13)։ Կուսակցությունը ուսուցանում է, որ երկու աշխարհայացքների պայքարում չի կարող տեղ լինել չեզոքության ու կոմպրոմիսների համար։ Այստեղ հարկավոր է քաղաքական բարձր ըզգոնություն, ակտիվ, օպերատիվ և համոզիչ պրոպագանդիստական աշխատանք, հարկավոր է ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին։ Այդ պայքարը դրսևորվում է նաև կրթության ոլորտում, որի դերը գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում անչափ աճում է։ Այդ պրոբլեմների նկատմամբ հետաքրքրությունը պայմանավորված է ոչ այնքան զուտ կրթական, որքան սոցիալ-գործնական նշանակությամբ։

Կրթության կենտրոնական սոցիալական պրոբլեմներից մեկը, որի շուրջ լայն բանավեճ է մղվում ժամանակակից բուրժուական փիլիսոփայական-սոցիոլոգիական, քաղաքաբանական ու մանկավարժական գիտական գրականության մեջ, կրթական համակարգի ճգնաժամի պրոբլեմն է։

Ճգնաժամը բուրժուական կրթության համակարգի ոչ արդյունավետության ծայրահեղ արտահայտություններից մեկն է։ Կրթության համակարգից դժգոհ են գործնականում բոլորը՝ թե՛ ուսուցիչները, թե՛ ծնողները և թե աշակերտները։ Իրենց խոր դժգոհությունն են արտահայտում նաև հասարակայնության գրեթե բոլոր խավերը և, նույնիսկ, վարչակազմը։ Կրթության անարդյունավետությունը խորապես դրսևորվում է նրա համակարգի կառուցվածքի, ղեկավարման և, որ ամենակարևորն է, պրակտիկ գործառնության մեջ։ Այդ համակարգի կառուցվածքին բնորոշ են կրթության օղակների միջև հուսալի կապի բացակայությունը, միջոցների «փոշիացվածությունը», աճող թանկությունը և պահպանողականությունը։

Բուրժուական կրթության համակարգի ղեկավարման ոճին ներհատուկ է ապակենտրոնացումը, կամայականությունը, հասարակության համար անհրաժեշտ տարբեր մասնագիտությունների տեր մարդկանց թվի նույնիսկ մոտավոր պլանավորման բացակայությունը, որը հանգեցնում է կամ մասնագետների գերարտադրությանը, կամ նրանց թվի կրճատմանը, որակյալ աշխատուժի տարերային վերատեղաբաշխմանը, շրջանավարտների գործազրկությանը և տնտեսության ոչ օպտիմալ գործառնությանը։

Սակայն գլխավորը անարդյունավետության որակական կողմն է. ուսումնական հաստատությունների շրջանավարտների ճնշող մասը պատրաստ չէ լիարժեք կերպով մասնակցելու հասարակության կենսագործունեությանը, քանի որ նրանց գիտելիքների մակարդակը չի

համապատասխանում հասարակության առաջընթացի պահանջներին: Լայն մասշտաբներ են ընդունել «մաղման» բարձր տոկոսը, կարգապահության անկումը, հոգևոր արժեքների, դաստիարակչական-կրթական նպատակների արժեզրկումը: Գիտնականների և հասարակայնության մոտ օրինական տագնապ են առաջացնում գործառնական իմաստով անգրագետ շրջանավարտների թվի բացարձակ և հարաբերական աճը, ինչպես նաև ներդպրոցական և ներբուհական հանցագործությունը, որը հաճախ կազմակերպված բնույթ է կրում: Ճգնաժամ է ապրում բուրժուական հասարակության ու նրա կրթակարգի փոխհարաբերությունների ողջ համակարգը:

Կրթական համակարգի «ճգնաժամ» հասկացությունն սկսել է գործածվել 60-ական թվականների կեսերից: Այդ ժամանակամիջոցում վերանայվեց այն մտայնությունը, ըստ որի կրթությունը դիտվում էր իբրև համադարման սոցիալ-տնտեսական բոլոր տեսակի չարիքների դեմ:

Ճգնաժամի մասին խոսել սկսեցին, երբ բուրժուական կրթական համակարգի անարդյունավետության նշաններն սկսել էին ավելի սուր և խրոնիկական բնույթ կրել: Այդ բանի վկայությունն են իրենց՝ բուրժուական գիտնականների գնահատականները: Օ. Թոֆլերը գրել է. «Հետզհետե ավելանում են վկայություններն այն մասին, որ հասարակության առավել կարևոր ենթահամակարգերից մեկի՝ կրթության գործառնությունը վտանգավոր չափերով խախտվել է... Այն, ինչ այսօր կոչվում է կրթություն, նույնիսկ լավագույն դպրոցներում ու կոլեջներում, այլ բան չէ, քան անհուսալի ժամանակավրիպություն» (Toffler A., Future Shock.— N. Y., 1972, p. 405):

Է. Ռայմերը, շեշտելով կրթության բուրժուական համակարգի սոցիալ-տնտեսական պրոբլեմները, պնդում է, որ այդ համակարգը չափազանց թանկ է համընդհանուր կրթություն ապահովելու համար, հավերժացնում է անհավասարությունը, իր դեմ է տրամադրում մարդկանց ճնշող մեծամասնությանը (տե՛ս Reîmer E., School is Dead.— Harmondsworth, 1971, p. 143): Հետևաբար, կրթական համակարգը, ծառայելով որպես վարքի, ապրելակերպի, անհատի բնութագծերի և բուրժուական բարոյական արժույթների ձևավորման մեխանիզմ, է՛լ ավելի խոր հակասության մեջ է մտնում հասարակական պրոգրեսի այսօրվա պահանջմունքների հետ:

Արևմտյան գիտնականների մեծամասնությունը հնարավորին չափ օբյեկտիվորեն է վերլուծել գործերի վիճակն ազգային կրթական համակարգում և հանգել է անմխիթար հետևությունների: Ֆ. Կումբսը ճգնաժամի աղբյուրները տեսնում է հասարակության կրթության և ապրելակերպի խզվածության մեջ (տե՛ս Ф. Кумбс, Кризис образования в современном мире. Системный анализ. —М., Прогресс, 1970, стр. 10), Օ. Թոֆլերը՝ այն բանում, որ կրթակարգը հարմարեցված չէ ժամանակակից կյանքի պահանջներին, որ այն կողմնորոշված է դեպի անցյալը և ներկան, բայց ոչ դեպի ապագան: Նույն այն սոցիալ-հոգեբանական պրոբլեմները, որոնք Օ. Թոֆլերը քննության է առել մակրոսոցիալական մակարդակով, Հ. Հոուն վերլուծում է միկրոսոցիալականով. նա միջանձնային հաղորդակցությունը քննում է, մի կողմից, որպես սովորողների ու նրանց ծնողների, իսկ մյուս կողմից՝ ուսուցիչների ու վարչակազմի միջև հոգեբանական խզման պրոբլեմ՝ կապված ուսման, կյանքի ու աշխատանքի հանդեպ անբավարարվածության և երիտասարդության համակած հիասթափության հետ (տե՛ս Howe H., The City. as Teacher.— In: The Schoolhouse in the City. Ed. by A. Toffler— N. Y., etc., 1968, pp. 9—13):

Կրթական համակարգի անարդյունավետության մասին են խոսում նաև Ջ. Բոտկինը, Մ. Մալիցան, Մ. Էլմանջրան: Բուրժուական որոշ սոցիոլոգներ, օրինակ՝ Ռ. Բոյսոնը, ճգնաժամի հիմնական պատճառը տեսնում են «պրոգրեսիվիզմի»՝ որպես ուսումնական պրոցեսի կազմակերպման մինչև այժմ իշխող տեսության, իսկ ոմանք՝ ոչ ճիշտ կրթական քաղաքականության մեջ, հիմնավոր կերպով քննադատելով այդ բնագավառի ֆինանսավորման սխալ ձևերն ու մեթոդները:

Եթե խորամուխ լինենք բուրժուական գիտնականների վկայությունների մեջ, ապա կըպարզվի մի հետաքրքիր ու բնորոշ մանրամասն. նրանց մոտ գրեթե լիովին բացակայում է ճգնաժամի բազմաչափ պրոբլեմների վերլուծության նկատմամբ նպատակային, սիստեմային մոտեցումը: Այդ գիտնականներից յուրաքանչյուրը առանձնացնում է մի որևէ տեսանկյուն կամ մի որևէ մոտեցում՝ մերթ սոցիոլոգիական, մերթ մանկավարժական, սոցիալ-հոգեբանական, դպրոցավարական, կրոնական, դաստիարակչական, քաղաքաբանական, բուն «սոցիալական», սոցիալ-տնտեսական և մերթ էլ սոցիալ-կառուցվածքային: Նույնիսկ նրանք, ովքեր հավակնում են ճգնաժամի վերլուծության նկատմամբ սիստեմային մոտեցում կիրառելու, ըստ էության, սահմանափակվում են ճգնաժամ առաջ բերող գործոնների մեխանիկական թվարկմամբ, առանց բացահայտելու դրանց օրգանական փոխկապակցվածությունը և ստորադասությունը, դրանով իսկ աղավաղելով տվյալ երևույթի ամբողջական բնութագիրը: Բուրժուական գիտնականների գլխավոր սխալը, նրանց դատողությունների մեթոդաբանական բուն արատը հասարակական հարաբերությունների համակարգի անտեսումն է, հասարակական կյանքի մյուս բոլոր ոլորտների վրա այդ համակարգի ներգործության կոնկրետ պատմական մեխանիզմներն ի հայտ բերելու անկարողությունը: Ոմանք ճգնաժամի արմատները միայն գիտատեխնիկական առաջընթացում են տեսնում: Մյուսներն անարդարացի կերպով ճգնաժամը և կրթության բուրժուական համակարգի արատները տարածում են նաև սոցիալիստական երկրների վրա, հայտարարելով ճգնաժամի «համընդհանուր» բնույթի մասին: Չարաշահելով հրատապ համընդհանրական պրոբլեմատիկան, որի ուսումնասիրությունն արդեն այժմ իսկ սիստեմային մոտեցում է պահանջում, նրանք կրթության բուրժուական համակարգի ճգնաժամին գլոբալ բնույթ են վերագրում, այսինքն՝ այն դիտում են սոցիալ-տնտեսական կարգերի բընույթից անկախ:

Այդ նույն մեթոդաբանական դրվածքը հանդես է գալիս նաև կրթական համակարգի սոցիալ-կառուցվածքային վերլուծության ժամանակ, երբ կրթական համակարգի դաստիարակչական-սոցիալական ֆունկցիաները, անկախ հասարակական-տնտեսական կարգից, բնութագրվում են իբրև նախապատրաստություն արտոնյալ դասերին անդամագրվելու համար մարդկանց «ձեռնադրելու արարողությանը», իսկ նրա էության ամբողջ իմաստն է պատրաստել հնազանդ քաղաքացիներ, որոնք չեն էլ մտածում արմատական սոցիալական ու քաղաքական հեղաշրջումների մասին (տե՛ս Illich I., Celebration of Awareness.— Harmondsworth, 1978, p. 105):

Մեկ այլ խումբ՝ գլխավորապես տնտեսական համագործակցության և զարգացման կազմակերպությանն առընթեր Էսպենի ինստիտուտի մասնագետները, նախընտրում են ճգնաժամ բառը չակերտների մեջ առնել, գտնելով, թե չարժե իրավիճակին չափազանց դրամատիկական բնույթ տալ: Անշուշտ, պնդում են, այդ «լավատեսները», կրթական համակարգում ամեն բան բարվոք չէ, բայց դա, իբրև թե, աճի օրինաչափ հետևանք է, որի դեպքում տնտեսապես զարգացած երկրները հասել են «հետինդուստրիալ» հասարակության մակարդակին և որի դեպքում տեղի է ունենում ավանդական ձևերի բնականոն խորտակում և դրանց փոխարինում: Նոր «գերտեխնոլոգիական» քաղաքակրթության վերջնական հաստատումով սոցիալական բոլոր հաստատությունների, այդ թվում և կրթական համակարգի գործառնությունը դարձյալ իր բնական հունի մեջ կմըտնի: Ինչպես տեսնում ենք, այստեղ ևս թույլ է տրվում բուրժուական գիտնականներին հատուկ մեթոդաբանական սխալը. անտեսվում է հասարակական հարաբերությունների յուրահատկությունը, ի հայտ է բերվում տարբեր հասարակական-տնտեսական կարգեր ունեցող երկրներում ժամանակակից գիտության ու տեխնիկայի զարգացման մեջ որոշ նման երևույթները որպես հասարակական առաջընթացին բնորոշ ընդհանուր մի բան ներկայացնելու միտում: Տեխնիկական առաջընթացին կուրորեն ապավինելը, սոցիալական երևույթների առանձնահատկությունն անտեսելը օբյեկտիվորեն հանգեցնում են տեխնոլոգիական դետերմինիզմի:

Սովետական գիտնականները մարքսիստական դիրքերից բազմիցս քննադատել են կըրթության ճգնաժամի բուրժուական ըմբռնումները, փաստական հարուստ նյութի հիման վրա ցույց են տվել կրթության ժամանակակից բուրժուական համակարգի սոցիալական արատները: Այնուամենայնիվ, «ճգնաժամ» հասկացությունը դեռևս լիովին չի իմաստավորվել, քննության չեն առնվել դրա դրսևորման տարբեր կողմերն իրենց փոխկապակցության մեջ, չի բացահայտվել դրանում ԳՏՀ-ի դերը:

XX դարի կեսերից ժամանակակից հասարակության մեջ կատարվել և կատարվում են նշանակալից փոփոխություններ: Գիտատեխնիկական առաջընթացի արագանալը հանգեցրեց թե՛ գիտելիքների ծավալի և թե դրանց բարոյական հնացման տեմպերի շեշտակի աճին: Երևան եկավ հասարակական կյանքի բոլոր ոլորտների համար մեծ մասշտաբներով որակյալ կադրեր պատրաստելու պահանջ: Կրթական համակարգի առջև միանգամայն նոր որակավորման կադրեր պատրաստելու խնդիր ծառացավ, որի լուծումը, սակայն, ըսկըսվեց ուսումնական բոլոր տեսակի հաստատություններում ընդունելությունն ավելացնելով: Բայց շուտով պարզվեց, որ ուսուցման ավանդական ձևերը, մեթոդներն ու միջոցները չեն բավարարում ինչպես գիտատեխնիկական, այնպես էլ հասարակական առաջընթացի պահանջմունքներին: Այդ հակասությունները համընդհանրական են՝ դրանք հատուկ են բոլոր երկրներին: Բայց ինչո՞ւ են մի դեպքում դրանք հասնում չտեսնված սրության, ընդունում ճգնաժամի ձև, որը ցնցում է կրթական համակարգը, իսկ նրա միջոցով՝ նաև ամբողջ հասարակությունը (կապիտալիզմի պայմաններում), մյուս դեպքում, երբ սոցիալիստական հասարակական հարաբերություններն են իշխում, այդ հակասությունները խթանում են կրթական համակարգի հե-

կացողներին, բայց շուտով ընդունվածների ավելի քան կեսը մաղվում է: Ինչո՞ւ: Այս հարցի պատասխանը բանալի է ծառայում կապիտալիզմի ջատագովների երկերեսանիությունը մերկացնելու համար: Բանն այն է, որ միջնակարգ դպրոցների շրջանավարտների մեծամասնությունը չի բավարարում բարձրագույն կրթության պահանջները (մի կողմ ենք թողնում բարձրագույն կրթության համար անչափ բարձր վարձի, ինչպես նաև ընտանիքի սովորող անդամի վրա կատարվող ծախսերի, նրան դասագրքերով ապահովելու և այլ հարցեր): Չէ՞ որ կապիտալիստական երկրների մեծամասնությունում ուսման «պարտադիր» լինելը հանգեցվում է սոսկ մի քանի տարի պարտադիր կերպով դպրոց հաճախելուն, բայց դա ամենևին չի ենթադրում գիտելիքների խիստ որոշակի մակարդակի ու ծավալի յուրացում: Այդ ամենը նպաստում է դպրոցների, դասարանների և հոսքերի բաժանմանն ըստ անհամարժեք տիպերի: Դրա հետևանքով հասարակության աշխատավորական խավերից դուրս եկած սովորողներն ընկնում են անմխիթար վիճակի մեջ: Նրանց սովորեցնում են «հեշտացված» ծրագրերով, ձգտելով այդ ուսուցումը հարմարեցնել կապիտալիստական արտադրության համար էժան բանվորական ուժի վերարտադրման նեղ օգտավետության նպատակներին:

Մեր երկիրն ընթացավ սկզբունքորեն նոր ուղիով: Մտցվեց միասնական, գիտականորեն հիմնավորված ծրագիր, ապահովելով բոլոր սովորողների՝ բարձր մակարդակով և խոր բովանդակությամբ ուսումնական նյութի յուրացումը, ուշադրություն սևեռելով ստեղծագործ, ակտիվ ու գիտակից քաղաքացիներ դաստիարակելու գործին: ՍՄԿԿ-ն զարգացած սոցիալիզմի կարևորագույն նվաճումներից է համարում սովետական մարդկանց բարոյաքաղաքական միասնությունը, նրանց քաղաքական կուլտուրայի բարձր մակարդակը, կոմունիստական գաղափարներն իրական գործերի վերածելու պատրաստակամությունը՝ ի բարօրություն իրենց սոցիալիստական Հայրենիքի:

Սոցիալիստական պետությանը հաջողվում է ոչ միայն խուսափել մասնագետների պատրաստման գործում հնարավոր անհամամասնություններից, այլև ընդառաջելու ուսանողների հակումներին: Այդ նպատակին են ծառայում ծրագրայինի ուսուցման կողքին հատուկ և ֆակուլտատիվ դասընթացները, ուսանողական գիտական խմբակները, հասարակական մասնագիտության ֆակուլտետները, բուհի և ողջ երկրի հասարակական կյանքին մասնակցելը և այլն: Դեռ ավելին, սոցիալիստական երկրում բուհերի բոլոր շրջանավարտներին երաշխավորվում է ոչ միայն բարձր մասնագիտական որակավորում, այլև աշխատանք ըստ մասնագիտության: Երիտասարդ մասնագետները վայելում են ձեռնարկությունների ու հիմնարկությունների ղեկավարության, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների ուշադրությունն ու հոգատարությունը: Հասկանալի է, որ ոչ մի «պլյուրալիստական», «դեմոկրատական», «հետինդուստրիալ» կապիտալիստական երկրում նման բան չկա:

Ռեալ սոցիալիզմը, կոմունիստական շինարարության պրակտիկան սովորողներին հաղորդակից է դարձրել սովետական ապրելակերպի արժույթներին՝ հաղթահարելով տեսության և պրակտիկայի խզումը, որը, Վ. Ի. Լենինի խոսքերով, «հին բուրժուական հասարակության ամենանողկալի հատկանիշն էր»:

Բուրժուական կրթության համակարգի ճգնաժամը՝ որպես կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի մասնավոր արտահայտություն, բացահայտում է կրթության համակարգը բարելավելու բուրժուական պետական-բյուրոկրատական մեքենայի փորձերի անհեռանկարայնությունն ու սնանկությունը: Ներհակ հասարակական հարաբերությունների շրջանակներում անհնար է հաղթահարել ճգնաժամը, քանի որ այն բխում է կապիտալիզմի խոր հակասություններից՝ իշխող դասակարգի շահերի և հասարակական առաջընթացի օբյեկտիվ պահանջների միջև եղած սկզբունքային հակադրությունից: Միայն ներհակ հասարակական հարաբերությունների արմատական վերափոխումը, հասարակության սոցիալիստական վերակառուցումը հնարավորություն կընձեռեն անհետևողական կիսաբարեփոխումներից անցնելու կրթության համակարգի արմատական վերակառուցմանը:

---



# ՊԱՏԿԱՆՅԱՆԻ ՊՈԵԶԻԱՅԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՊԱԹՈՍԸ

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

ԱՅՍՕՐ, ԵՐԲ կոմունիստական կուսակցությունը հետևողական աշխատանք է ծավալել նոր մարդու համակողմանի զարգացման նպատակով, հոգևոր սննդի կենարար աղբյուր են մեր գրականության դասականների կյանքն ու գործը. նրանց ստեղծած անանց արժույթները սատարում են մեր հայրենասիրական և քաղաքացիական զգացմունքների հարստացմանը:

Մեր գործիչների այդ անդաստանում իր ուրույն տեղն ունի Ռափայել Պատկանյանը: Ծնվել է նա 1830 թ., հոգևոր մշակների մի քանի սերունդ տված Պատկանյանների գերդաստանում: Նա եկավ՝ գրական ու հասարակական գործունեությամբ, ազգանվեր, մարտաշունչ ու խարազանող քնարով նոր փառք ավելացնելու, անմահացնելու իր տոհմը:

Հոր՝ Գաբրիել Պատկանյանի Նոր Նախիջևանում բացած դպրոցում սկզբնական կրթություն ստանալուց հետո Ռափայելը մեկնում է Մոսկվա, ընդունվում Լազարյան ճեմարանը, աշակերտում Մկրտիչ Էմինին: Ճեմարանն ավարտելուց հետո 20-ամյա Ռափայելը գալիս է Թիֆլիս, ռուսաց լեզու ավանդում Ներսիսյան դպրոցում, որի տեսուչն էր հայրը: Այստեղ էլ, հոր կողմից հրապարակվող «Արարատ» շաբաթաթերթում, տպագրվում են Ռափայելի առաջին բանաստեղծությունները՝ **Մահ Զարմայր Նահապետի հայոց, Ցինական առավոտյան երգը, Ցինականի երեկոյան երգը**: Վերջին երկու ոտանավորներում նա գովերգում է աշխատանքը, ռոմանտիկական պատրանքներով երանգավորված հայրենիքը: Իսկ **Զարմայր Նահապետի** համար կաթողիկոսի հրամանով հեռացվում է Ներսիսյան դպրոցից: Այնուհետև մեկ տարի ուսանում է Դորպատի համալսարանում, ուր շփվում է բազմազգ ուսանողության հետ, համակվում ջերմ, անկեղծ ինտերնացիոնալիզմով: Բնագրով կարդալով գերմանական ռոմանտիկական պոեզիայի հսկաներին՝ Հայնեին, Շիլլերին, Գյոթեին, նա հիանում է նրանց հոգու վեհասքանչ թռիչքով, հարստացնում իր բանաստեղծական հուզաշխարհը: Այդ ամենը նպաստում են Պատկանյանի աշխարհայացքի կերպավորմանը, աշխարհայացք, որ պիտի զարգանար մոսկովյան շփումների, ռուսական գիտության, հասարակական-քաղաքական կյանքի օջախի՝ համալսարանի և տեղի հայ գրական-հասարակական մտքի մթնոլորտում: Մոսկվայում նա ունկնդրում է համալսարանի պատմալեզվագրական ֆակուլտետի դասախոսությունները: 1854 թ. մի խումբ հայ ուսանողների հետ հիմնում է գրական ընկերություն, որի հիմնադիր անդամների՝ Գևորգ Քանանյանի, Մնացական Թիմուրյանի և իր՝ Ռափայել Պատկանյանի անուն-ազգանունների առաջին, երկրորդ տառերի միացումից կազմվում է ընկերության անունը՝ Գամառ-Գաթիպա: Համազգային էին այս «Ուխտի» անդամների ազգանվեր նպատակները, զերծ անձնական փառքի, շահի ակնկալիքից. ասես նրանց նշանաբանն էր. «Մի՛ սպասեք ազգից շնորհակալություն, մեղվին չեն շնորհակալ լինում մեղր վայելողները»: Հետագայում ընկերության ցրվելուց հետո (1857), այն դառնում է Պատկանյանի ծածկանունը: 1860-ին Պատկանյանն ավարտում է Պետերբուրգի համալսարանի արևելյան բաժինը՝ ստանում արևելյան լեզուների թեկնածուի աստիճան: Պետերբուրգում էլ Պատկանյանը հրապարակում է «Գամառ Քաթիպա» նշանավոր ընկերության հինգ տետրերը, որտեղ տպագրված բանաստեղծությունների մեծ մասն իրենն էին:

Անգերազանց աշխատասիրությամբ օժտված, կյանքի դաժան հարվածներից բնավ չընկճվող այս լավատես մարդը իր նամակներում գրում էր. «...Մենք պիտի հարթենք մեր ճանապարհը, կատաղաբար պիտի մարտնչենք ամեն դժվարությանց և արգելքների հետ, աղքա-

Ծնվում է Խաչատուր Աբովյանի անմահ հիշատակին նվիրված **Աղասու մոր երգը**: Ո՞րն է ազատագրական պայքարի հիմնական ուժը՝ ռամիկ Աղասին՝ որպես հերոսականության, անձնազոհ հայրենասիրության մարմնացում: Գյուղացիությունը և դեմոկրատական մտավորականությունը— ահա երկրի նյութական ու բարոյական հիմնական ուժը:

Հայ ժողովրդի քաղաքական զարթոնքի այս երգում մայրը Հայաստանն է, ազատության համար սուր վերցնող, ոտքի ելնող Աղասին՝ հայության խորհրդանիշը, հայ ժողովուրդը: Մայրը պատրաստել է որդու զենքն ու ազատաբեր թուրը, ձին էլ սպասում է նրան. գերության մեջ, ձեռքն ու ոտքը շղթայված հեծում է հայ ազգը. «Զարթի՛ր, որդյակ, քանի՞ քնես...», ահազանգում է մայրը և հուսալի երգում.

*Չէ՛, իմ որդին շուտ կըզարթի, ձին կըհեծնե սանձակոծ,*
*Հայի արցունքը կըսըրբե, կըդադրեցնե լաց ու կոծ,*
*Հայ եղբայրներ, քիչ էլ կացեք, իմ Աղասին զարթեցավ,*
*Գոտին կապեց, թուրը կապեց ու իր նժույգ ձին հեծավ:*

Ռազմաշունչ այս ստեղծագործությամբ բանաստեղծը նաև ուզում է ասել, որ մարտնչող, մաքառող հերոսներ դաստիարակելու համար անհրաժեշտ են հերոս մայրեր, որ պատրաստեն իրենց զավակների զենքն ու զրահը, ուղարկեն նրանց մարտի դաշտ՝ ազատագրելու իրենց ոտնահարված, արյունածածկ հայրենիքը:

Այդ ժամանակներում կային մտածողներ ու գործիչներ, որոնք փարելով անցյալի փառքին, գովերգում էին անցյալը որպես փրկության խարիսխ: **Հայ պատանին երգում է** բանաստեղծությամբ Պատկանյանը հակահարված է տալիս այդ ծույլ, անգործունյա հնամոլներին, նրանց հակադրում նոր, մանուկ-Հայաստանը, ոչ երազական հայրենիքի գաղափարը և կոչ անում.

*Հայկ ու Լևոնին մոռանանք, եղբարք,*
*Թափ տանք մեզանից հնության փոշին,*
*Վերածնենք մեր մեջ նոր կյանք ու նոր բարք,*
*Կեցցե՛ շատ օրեր մանուկ-Հայաստան:*

Մանուկ-Հայաստանը ձեռքում ունի բահ ու հրացան, սրտում՝ ազնիվ խորհուրդներ... Բահով հայ պատանին կվաստակի իր ապրուստը, հրացանով՝ կպաշտպանի իր անձն ու ունեցվածքը օտար ու ներքին կեղեքիչներից: Պետք չէ մեծատուններին նպաստը մուրալ, մուրացողը ստրուկ է դառնում, մուրացվածը՝ մահաբեր թույն:

Մայրը չի կամենում քնեցնել որդուն (**Վանեցի մոր երգը**), քակելով սիրասուն զավակի բազուկները, թուլիկ աջի մեջ պողպատե սուր է դնում ու պատվիրում՝ «Ստրուկ գնա՛ արյան դաշտը, վերադարձի՛ր ազատված»: Հասել է արդեն վանեցի գեղջուկի համբերությունը. գութանից պետք է կռել հաղթանակի զենքեր, համոզվում է շինականը (**Վանեցի գեղջուկի տաղը**):

Հայաստանը փրկելու միակ ու ճշմարիտ ուղին Պատկանյանը համարում է ազգային-ազատագրական զինված պայքարը: Պայքար, ռազմի շեփոր, այդ է տենչում տակավին օրորոցում լացող երեխան (**Օրորոցի երգը**): Մայրը կանչում է սոխակին, աբեղաձագին, տատրակին, կաչաղակին, որ իրենց երգով քուն բերեն որդուն, բայց որդին լալիս է, նա չի կամենում դառնալ տիրացու, աբեղա, չի կամենում դառնալ սգավոր, սովդաքար, և մայրը կանչում է բազեին, որի ռազմի երգերին է ծարավ իր որդին:

Մկրտիչ Պեշիկթաշլյանի հայրենաշունչ, ազատաբաղձ երգերի նման Ռափայել Պատկանյանի հայրենասիրական բանաստեղծությունները, նրա **Ազատ երգերը** ևս անմիջապես ստանում էին իրենց մեղեդին, հնչում որպես երգ, տարածվում բովանդակ երկրով, ժողովրդին ոգեկոչում դեպի մաքառումներով ու դժվարություններով լի ազատագրական պայքարը, երգեր, որ այսօր էլ սիրով ու ջերմությամբ են հնչում՝ զարթեցնելով հայրենասիրական նվիրական խոհեր ու զգացումներ:

Ահա թե ինչու Հայրենական պատերազմի ծանրագույն օրերին ամենուր հնչում էր Պատկանյանի երդումը: Միքայել Նալբանդյանի նման նա ևս գիտե, որ դյուրին չէ ստրկության շղթաները փշրել-թոթափելը, որ կա շղթա ու բանտ, սուր ու կախաղան, դահիճ ու արհավիրք, կա անգութ կտտանք, բայց նա անհողդողդ է իր երդմանը՝ սուրը պատյան չդնել, քանի դեռ ազատված չէ հայրենիքը, չի դադարել ժողովրդի սուգն ու լացը: Իր անձը, ողջ ունեցվածքը ողջակեզ է հայրենիքի սեղանին, վկան են Նոյան տապանի ամուր պատվանդանը՝ Արարատ լեռը, մայր Հայաստանը ողողող Արաքսը, վկա են հայության ազգաշեն նախնիները:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ևս հայրենիքի ազատության սուրբ գործին էին ողջակիզվում հայ հազարավոր քաջեր՝ սովետական մեծ, բազմազգ ընտանիքի միլիոնավոր որդիների հետ, հիշելով բանաստեղծի տողերը.



*Թե խնըրդ չանես քու գլխու ճարը,*
*Ե՞րբ պիտի օգնե քեզի օտարը:*

Բալկանյան ժողովուրդների հաջողություններից գազազած, սուլթանական Թուրքիան սկսեց ավելի ուժգին ճնշում գործադրել Հայաստանի վրա: «Արյունածարավ Եվրոպան» նոր ասպարեզ գտավ ծավալելու իր դիվանագիտական խաղերը: Հայերի արյան գնով անգլիացիները տիրացան Կիպրոս կղզուն:

Թեպետ կարճատև, բայց շատերի նման Պատկանյանը ևս որոշակի ակնկալիքներ ուներ քաղաքակիրթ Եվրոպայից. եթե հաջողվեր շարժել անգլիացի մի նշանավոր քաղաքագետի գութը, գրում էր նա Գլադստոնին ուղղված իր նամակում, հնարավոր կլիներ հայերի փրկությունը: Սակայն այդ նամակում արդեն իսկ ցայտուն արտահայտված է եվրոպական երկրների մեքենայությունների ահավոր հետևանքները տեսած մեծ հայրենասերի զայրույթը... «Մի՞թե անգլիական շահը կպահանջե, որ երկրիս վրա չլսված, չի տեսնված չարագործություններ կատարեն, որպեսզի միլիոնատեր լորդերը սնդուկների մեջ դիզեն հայի արյան ու մահվան գնով ձեռք բերված ստեղինգները»:

Հաղթանակում է սթափ ռեալիզմը: Ցրվում են նման պատրանքները: Նա անբարոյական է համարում ֆրանսիական, անգլիական կառավարությունները, երկրներ, որ անասունն ավելի շատ իրավունք ունի, քան թշվառ, հալածական հայը: Եվ ստեղծվում է «կույր ու խուլ», «լուսավոր Եվրոպայի» շահադիտական, դավադիր քաղաքականությունը մերկացնող բանաստեղծությունների շարքը:

Ահա **Տաճիկի բանտը** (1876): Վայրագ վագրի են նման դահիճ դռնապանները մութ ու մռայլ, զնդաններով, կտտանքի սարսափազդու առարկաներով լի բանտի, որի պատերին շղթայված են բյուրավոր կմախքացած մարդիկ: Նրանց մեղքը հայ լինելն է միայն: Հազարավորներն էլ սովամույն են լինում. այդ ամենը կատարվում է լուռ, անտարբեր ականատեսի՝ Եվրոպայի աչքի առաջ:

1879 թ. Պատկանյանը գրում է իր նշանավոր **Վեհաժողովը** բանաստեղծությունը: Տաճկի քավության նոխազ է դարձել արյունածոր Հայաստանը: Անգութ Եվրոպան հայության համար արել է իր Պիղատոսի դատաստանը.

*Նախ՝ անմեղության մեր խոստովանեց,*
*Ապա չարերուն մեզ ի խաչ մատնեց:*

Պատկանյանը, սակայն, չի կորցնում լավագույն ապագայի հույսը՝ «Հուսով եմ, վաղ-ուշ դարուն պիտի գա» (**Հյուսիս, 1880**):

Ընդունելով, ամբողջ էությամբ համակրելով ռուս ռազնոչին մտավորականության մաքառումները ցարական կառավարության դեմ, տարված ռուս հեղափոխական դեմոկրատների գաղափարներով, հայ հասարակության համար ներքին պայքարը նա համարում էր մեծ շռայլություն և բանաստեղծի իր երևակայությամբ միավորում այդ հակադիր ուժերը մեկ նպատակի հասնելու՝ Հայաստանը օտարների լծից ազատագրելու համար: Ըստ Պատկանյանի, բոլոր հայերը (մանավանդ լուսավորյալ) պետք է մի կողմ նետեին ներքին անբավականությունները և միասին պայքարեին հանուն օտար լծից ազատագրվելու: «...Ազգը մինչև ազատություն, ինքնակառավարություն չի ստանա, ոչ դաստիարակություն կստանան նորա որդիք, ոչ ինքյան կիրթ ու բարոյական կըդառնան»,— գրում էր Պատկանյանը: Ինչպես դավանաբանական հարցերում նա չէր կարողանում տեսնել ազգը պառակտող ուժերին և երազում էր մի միասնական, մի միադավան հայ զանգվածի մասին, այստեղ նույնպես ցանկանում էր վերացած տեսնել հոսանքների պայքարը՝ հանուն համահայկական ընդհանուր շահերի:

Հայ ազգային-ազատագրական շարժման խոշոր արտահայտիչներից մեկն էր Պատկանյանը, որ իր ստեղծագործությամբ խթանեց հայ ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարգացումը, դառնալով մեր ժողովրդի գոյության, անձնապաշտպանության իրավունքի ջերմ ու հետևողական ջատագովը:

Այսօր ևս, երբ աշխարհի խաղաղասեր ուժերը համախմբվում են՝ մշտապես խաղաղ պահելու կապույտ երկինքը մարդկության համար, Պատկանյանի հայրենաշունչ քնարի արգասիքները համակում են ընթերցողին անխառն, բոլորանվեր հայրենասիրությամբ, մըղում ազնիվ, անդադրում աշխատանքով շենացնելու, բազմապատկելու մեր բազմազգ երկրի պաշտպանունակությունն ու հզորությունը: Իրոք որ՝ անկախությունն ու ազատությունը երբեք չեն շնորհվում. ձեռք բերելուց հետո պետք է կարողանալ պահպանել այն՝ իբրև գոյատևման միակ երաշխիք:

1858 թ. «Հյուսիսափայլ» ամսագրի 11-րդ համարում հրապարակվեց Միքայել Նալբանդյանի **Նամակ առ հրատարակողը** հոդվածը, որտեղ խավարի ընդդեմ պայքարող համարձակ հրապարակախոսը գրում է. «Մինչև այսօր մեր ազգի մեջ հրապարակախոս բերան չլինելով, պաշտպանություն է գտել, անպատիժ է մնացել ամենայն տեսակ վատթարություն, ոչինչ չի խոսվել, ոչինչ չի ընկել գրչի դատապարտության տակ: Թող չարագործ և եղեռնագործ մարդիկ զգաստանան՝ տեսնելով, որ

տանելու համար (**Կտակ**), քանի որ ճարտար լեզուն իսկ մունջ է դառնում, երբ խոսել է սկսում ոսկին։

Սոցիալական անարդար կարգերի կենդանի զոհն է ինքը Պատկանյանը՝ Սյուլլուկը, որի համար ուսումը վեր է ամեն բանից. ուրիշները հարստացել են, ամեն ինչի տեր դարձել, իսկ ինքը ոչինչ չունի։ Գերմանացի գրականագետ Արթուր Լայստը, գնահատելով Պատկանյանի ազգանվեր գործունեությունն ու գրական վաստակը, հիշեցնում է հայ հասարակությանը այն մեծ երախտիքը, այն ինքնամոռաց հսկայական գործունեությունը, որ ծավալել է բանաստեղծը հանուն իր ժողովրդի բարոյական սթափման։ Մինչդեռ նա անձնվեր, ծանր, տաժանելի դրության մեջ է, իսկ ամենահարուստ վաճառական կոչված հայերը ոչինչ չեն անում նրան այդ վիճակից հանելու համար։

Պատկանյանը ծաղրել է և «սնագլուխ մըրքավոր» հոգևորականությանը, նրան ևս համարելով ժողովրդի թշնամի, որը բռնությամբ ու խաբեությամբ ամեն ինչ անում է հային թմրության մեջ պահելու, նրա քաղաքական քունը հարատև դարձնելու համար (**Օրորք Հայաստանի**)։ Այստեղ նրա երգիծանքն ստանում է քաղաքական սուր սարկազմի բնույթ։

**Դև մրուս** ազգային ավանդության մեջ նըկարագրում է դժոխքի դահլիճը, ուր յոթ չարեր նստած են խորհրդի, և եթե գործ դառնա նրանց խորհուրդը, աշխարհը կկործանվի։

Աղքատ, անտուն-անտեր չմնալու, ընտանիք ունենալու համար անգրագետ մարդը որոշում է տերտեր դառնալ (**Տերտեր**)։ Ուրիշ ոչինչ անել չի կարող. փիլոն կհագնի, խաչ ու ավետարան կվերցնի ձեռքը և՝

*Տղա ու մեռել կառնում, կխոթիմ*
*Մեկին ավազան, մեկին գերեզման։*

Բանաստեղծը գրում է, թե պապերի արհեստը մոռացած, բոլորը բազիրգան են դարձել։ Շիտակ ճանապարհի վրա դառնալու միջոցը նա համարում է պապական-ավանդական արհեստը։ Դրա համար երեխաները կարդալու հետ մեկտեղ «մի հացառու-ձեռնարվեստ ևս» պետք է սովորեն, որպեսզի «վարժատունեն» դուրս գալուց հետո ոչ որի օգնության կարիքը չունենան, գլուխները չծռեն, չիմանան «ինչ ասել է ստորաքարշ խոնարհություն»։

Հասարակական կյանքի բազում աղետալի արատները մերկացնելու, ձաղկելու և ծաղրելու նպատակով է, որ նա ցանկանում էր իբրև խարազան հրատարակել քաղաքային մի լրագիր, որը պիտի լիներ «խամչի», անարգանքի սյուն, կախաղան, կաղափնարան միլիոնատեր դարձած ներքին կեղեքիչների, շահագործողների համար։

Պատկանյանի երգիծական բանաստեղծությունները ինչպես իր ժամանակին, այսօր առավել ևս, հարուցում են ընթերցողի նողկանքը նրա ձաղկած արատները կրողների հանդեպ, տոգորում անկեղծ համակրանքով ազնիվ վաստակով, համեստորեն ապրող աշխատավոր մարդու նկատմամբ։

Ըստ Պատկանյանի, ո՞րն է իսկական մարդը, ո՞վ իրավունք ունի մեծ մարդ կոչվելու։ Նա միայն, ով ունակ է իր անձը զոհելու հանուն իր եղբայրների (**Մեծ**)։ Որդին աշխատում է, հարստանում, կուտակում մեծ գանձ. հայրը գտնում է, որ նա բորսայի զարդ է։ Որդին դառնում է գիտուն ու հանճար, դառնում է անապատական՝ հրաշքներ գործում, դառնում քաջությամբ ու խելքով հռչակված զորավոր... Հայրը տակավին որդուն մեծ չի համարում։ Բայց երբ իր կյանքը վտանգելով ազատում է գերված եղբորը, վերականգնում ավերվող տունը, այս անգամ ողջ բնությունն ու բյուրավոր մարդիկ գոչում են.

*Մեծ մարդու անուն դու այժմ ստացար,*
*Եղբորդ հիշեցիր ու քեզ մոռացար։*

1890 թվականին հիվանդանոցում պառկած էր Պատկանյանը, երբ նրան հասավ Կարինում տեղի ունեցած ժողովրդական ցույցի լուրը։ Թուրքական զորքը արյունոտ հաշվեհարդար էր տեսել ցուցարարների հետ։ Մի նոր ծանր վերք մեծ ազգասերի սրտին, և ծնվում է **Կարինի կոտորածը** ողբ-ոտանավորը՝ իբրև նախատինք բարբարոսներին, չհուսահատվելու հորդոր իր ժողովրդին։

Բազում խնդրանքներից հետո, բժիշկ Քեչեկի թույլտվությամբ, Պատկանյանը գալիս է հայրենիք, առաջին անգամ տեսնում է իր այնքա՜ն երգած Հայաստանը, հիանում Արաքսի կոհակներով, մոտիկից տեսնում հայրենի երկրի ծանր վիճակը, շփվում հայրենակիցների հետ... Երևանում նա գրում է իր ռազմաշունչ քայլերգը՝ «Ստրուկ եմ եկել, կդառնամ ազատ»...

«1892 թվականի օգոստոսի 26-ին կյանքից հեռացավ Ռափայել Պատկանյանը, որի ողջ կյանքը մի երկունք էր, և որի ստեղծած բանաստեղծական համայնապատկերի մեջ հայ ժողովուրդը նշմարում էր ո՛չ միայն իր մարմնացրած երազանքը, այլև ազգային ինքնատեսությունը, որը կանխատեսում էր գալիքը ոչ որպես մարգարե, այլ կռվի դուրս եկած (արտաքին և ներքին թշնամիների դեմ— Է. Ս.) զինվոր, որի համար մահը կամ ազատությունը փյունիկի պես հառնած հայրենիքի մեծ տեսիլքի մեջ երկու ծայրաթևեր էին, հանուն որի նա ապրում և ապրեցնում էր մի ամբողջ ժողովուրդ»,— այսպես է ավարտում Մ. Ս. Սաղյանը 1980 թ. լույս տեսած իր **Ռափայել Պատկանյան** ուսումնասիրությունը, ուր հանգամանորեն արտացոլել է մեծ հայրենասերի կյանքը և գործը։

Դոնի Ռոստով։ Հյուսիսային բնակելի զանգված։ Մյասնիկյավան։ Պատկանյանի փողոցը հատում է Մյասնիկյանինը.... և հեռվից երևում է Խաղաղ Դոնի Տեմեռնիկ վտակի ափին ձգվող կանաչազարդ բլրակի վրա բարձրացող գողտրիկ շինության կանաչ գմբեթը։ Դա հայկական Սուրբ խաչ եկեղեցին է՝ կառուցված 1779-ին և վերականգնված 1968—1972 թվականներին. այն այսօր վերածվել է ռուս-հայկական բարեկամության թանգարանի։ Ամենուր զգացվում է մեր ռոստովցի բարեկամների հոգածու, խնամքոտ ձեռքը։ Այնտեղ սրբությամբ պահպանվում են հայոց մեծերի մասունքները։ Մ. Նալբանդյանի ցուցափեղկի վերնամասում փայլատակում են հեղափոխական դեմոկրատ-բանաստեղծի մարգարեական խոսքերը՝ **Մեր փրկությունը մեր կապն է ռուս ժողովրդի հետ**։ Պատկանյանի ցուցափեղկում զետեղված է Լատվիայի ժողովրդական բանաստեղծ Յան Ռայնիսի հիացական գնահատականը. «Չկա մի հայ, որ անգիր չիմանա Պատկանյանի բանաստեղծությունները, չկա երկրի վրա մի անկյուն, ուր հայերը չերգեն նրա «Արաքսի արտասուքը»... Պատկանյան պոետ-հայրենասերը լալիս է թուրքական գազանների զոհերի համար և ամենուր զգացվում են նրա արյունաթոր սիրտը և ջերմ հայրենասիրությունը»։

Տեմեռնիկին նայող բակի մի կողմում ուսուցիչ, գիտնական, զինվոր, բանաստեղծ Հարություն Ալամդարյանի խաչակիր հուշարձանն է՝ մոխրագույն գրանիտից, մյուս կողմում, սև մարմարյա հատակին բարձրանում է Միքայել Նալբանդյանի կիսանդրիակիր հուշարձանը՝ ճերմակ-երկնագույն, սև փետրագրչով։ Կողքին՝ վարդագույն գրանիտյա պատվանդանի վրա, հայ գրականության դասական Ռափայել Պատկանյանի կիսանդրին է։ Խորդուբորդ գրանիտի վրա երեք տեղ հղկված ու փորագրված է երեք քառատող.

*Մի՛ կարծեք, որ ես սին փառքի համար*
*Իմ հառաչանքով լցրի աշխարհ։*

Հայրենասիրական իր ոգորումներով, արծարծած սոցիալական կենսահույզ հարցերով երբեք չի հնանա Պատկանյանի քնարը։ Այսօր էլ նա մեզ հետ է, մարդկային արատների դեմ մղած մեր անհաշտ ու հետևողական պայքարում, բարձրացնելով իր անողոք, չհանդուրժող ձայնը՝ ընդդեմ կեղծ ազգասիրության, ընչաքաղցության, փառատենչության...

Պետք է ասեմ, որ ավիացիայում աշխատելու երկրորդ տարում կործանիչ ու ռմբակոծիչ ավիացիայի վերաբերյալ հետաքրքրական, լավ հոդվածներ էր ուղարկում նա խմբագրություն, որոնք աչքի էին ընկնում օդագնացության գործի քաջիմացությամբ:

Մի նամակ ևս.

«Հարգելի Վ. Պ.

Ուղարկում եմ գնդապետներ Զաբալուևի և Բայդուկովի երկու հոդվածները: Տեսությունը նրանցն է, իսկ փաստերի համար ինքս եմ զորամասերը գնացել: Մնացել եմ այստեղ երեք օր, հարուստ նյութեր եմ ժողովել թշնամու ավիացիայի պրակտիկայում նկատվող նորույթների, հակառակորդի նոր մանյովրների վերաբերյալ: Երկու օր աչք չեմ փակել, առաջադրանքը կատարել եմ: Թարմ տպավորություններով եմ ուզում գրել նյութը, չնայած այդ ևս նշանակում է անքուն գիշերներ: Ցերեկն այստեղ գրելը դժվար է: Երեկ և նախորդ օրը ես ականատես եղա հսկական օդամարտի: Զաբալուևի կործանիչներն այնպիսի մի համերգ տվեցին հակառակորդի համար, որ ցնցվում և այրվում էր գետինը: Զաբալուևը բարևում է քեզ: Դառնացած է, որ ուշանում է վաղօրոք ուղարկված նյութերի հրապարակումը: Կամ գուցե ուրի՞շ պատճառ կա: Ես հին լրագրող եմ, մի՛ վախենա անհաջողություններով ինձ վշտացնելուց ու վրդովվելուց: Ինքդ գիտես, որքան կարևոր է տպագրվելը. այդ ժամանակ հաճույքով են քեզ թռիչքի վերցնում: Կուզնեցովին հայտնիր, որ մնացել եմ առանց ծխելիքի, թող ուղարկի մի կերպ:

Էլ-Ռեգիստան»:

Եվ այսպես, բացի հոդվածներից ու ակնարկներից, նա գրում էր ինձ նամակներ, որոնցում հաճախ լրագրի համար հրատապ թեմաներ էր հուշում և խնդրում էր միայն մի կերպ թութուն ուղարկել կամ իր սիրած ծխախոտը՝ «Կազբեկը», որն այն ժամանակ ճարելը հեշտ չէր:

Իսկ ինչպիսի՛ անգերազանց զվարճախոս էր նա: Նույնիսկ ամենատխուր օրերին նա կարողանում էր լավ տրամադրություն ստեղծել, հետաքրքրական դարձնել ընկերների ազատ ժամանակը:

Մի անգամ, 1943 թվականի ամառային մի երեկո, Միխալկովի հետ միասին եկան ինձ մոտ և համոզեցին մի ժամով գնալ Վագանկովի գերեզմանատունը: Առիթը հիմնավոր էր. Միխալկովի մոր մահվան քառասունքն էր, իսկ ես լավ գիտեի ու հարգում էի այդ բարի կնոջը: Գնացինք, նստեցինք գերեզմանի մոտ, թախծեցինք: Նեղ մի արահետ այդ գերեզմանից տանում էր դեպի Սերգեյ Եսենինի շիրիմը: Տխուր նստած էինք Եսենինի շիրմի մոտ, Ռեգիստանը հանկարծ ասաց. «Տղանե՛ր, այս մասերում, ինչ-որ տեղ թաղված է և Տիմիրյազևը»: Իսկ այդ ժամանակներում պատրաստվում էին նշելու Տիմիրյազևի ծննդյան 100-ամյակը: Ռեգիստանը թաղման բյուրոյից իմացավ, թե որտեղ է նրա գերեզմանը, և մենք գնացինք մեր հարգանքի տուրքը մատուցելու մեծ գիտնականին: Գնացինք ու ի՞նչ տեսնենք, գերեզմանաթումբը մացառներով ծածկված, մետաղյա խաչը ծռմռված, մի խոսքով բարձիթողի վիճակում: Դե՛, պատերազմ էր, խառը վիճակ... Տեղեկատուից իմանալով գիտնականի ծննդյան հոբելյանը կազմակերպող հանձնաժողովի հեռախոսահամարը՝ մեզ հաջողվեց կապվել պատասխանատու անձնավորության հետ: Նրան խնդրեցինք անմիջապես գալ գերեզմանատուն: Նա հավաստիացրեց, որ մյուս օրն իսկ կսկսեն բարեկարգել Տիմիրյազևի գերեզմանը:

Շատ բան կարելի է պատմել մեր ընկերոջ՝ Էլ-Ռեգիստանի մասին, սակայն ասվածից էլ ակնհայտ է, թե ինչպիսի հիանալի մարդ ու ժուռնալիստ էր մեր Գաբոն,— այդպես էինք կոչում նրան ընկերական շրջապատում:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԻ ՀԵՂԻՆԱԿԱԿԻՑԸ

Սովետական Միության Հիմնի ստեղծման համար հայտարարված էր մրցույթ: Մամուլում այդ մասին ոչինչ չէր գրվել, սակայն երկրի լավագույն պոետներն անհապաղ ձեռնամուխ էին եղել այդ գործին:

Սերգեյ Միխալկովն ու Էլ-Ռեգիստանն այդ ժամանակ գործուղման մեջ էին ռազմաճակատներից մեկում և մրցույթի մասին չգիտեին: Բավականին ուշ, գործուղումից վերադառնալուց հետո, իմացան ստեղծվելիք հիմնի բովանդակության վերաբերյալ մանրամասները, պայմաններն ու պահանջները:

Հայտնելով, որ զբաղված են պետական կարևոր գործով՝ նրանք խնդրեցին մոտ ժամանակներս իրենց ոչ մի տեղ չգործուղել և սկսեցին ելակետային տվյալներ փնտրել ապագա հիմնի համար. արդեն գրվել էին տասնյակ տարբերակներ, որոնք, սակայն, չէին արտացոլում ո՛չ մեր երկրի զարգացման փուլերը, ո՛չ էլ նրա վիճակը պատերազմի ահեղ տարիներին:

Սկսվեցին աշխատանքով լի օրերն ու անքուն գիշերները: Սերգեյն ու Էլը պրպտում էին հին ու նոր հանրագիտարանները, ծանոթանում շատ երկրների հիմներին, բայց այդ ամենն այն չէին, ինչ պետք էր իրենց: Նրանք հասկանում էին, որ հիմնը լոկ հանդիսավոր երգ չէ, այլ ժողովրդի քաղաքացիական ներքողը, նրա հրճվանքը ստեղծվածի համար, հայրենիքին հավատարիմ մնալու երդումը, մեր սոցիալիստական հայրենիքի պատվի, ազատության ու անկախության դեմ ոտնձգություն կատարած թշնամու ջախջախման գործում անսասան հավատը հաղթանակի, հավատը կոմունիզմի հաղթանակի նկատմամբ: Այդպիսի երգի համար նրանք ելակետային տվյալներ գտան հենց ՍՍՀՄ սահմանադրության տեքստի մեջ: Խորամուխ եղեք Հիմնի խոսքերում և կտեսնենք, որ դրանցում արտացոլված են մեր սահմանադրության, մեծ Լենինի գաղափարները մեր բազմազգ պետության վերաբերյալ, ցարական միապետության երբեմնի բոլոր ծայրամասերի ժողովուրդներին ՌՍՖՍՀ-ի շուրջը համախմբելու գործում ռուս ժողովրդի խաղացած դերի մասին, Լենինի կուսակցության մասին, որն անդուլ ջանացել ու ջանում է, որ ավելի ամրակուռ դառնա ժողովուրդների բարեկամությունը, լիովին հաղթանակի ինտերնացիոնալիզմը:

Մի քանի օր անց հեղինակներն ինձ ծանոթացրին Հիմնի տեքստի առաջին տարբերակին: Համակողմանի քննարկեցինք, վեր ու դիր արեցինք, որոշ բաներ ուղղեցինք, և հեղինակները գնացին Դմիտրի Շոստակովիչի մոտ՝ երաժշտության համար պայմանավորվելու: Համաձայն մրցույթի պայմանների, հեղինակներն իրավունք ունեին իրենք ընտրելու կոմպոզիտորին:

Հասավ ունկնդրության օրը: Հեղինակներն անսահման հուզված էին: Մեծ թատրոնի Բեթհովենյան դահլիճում նստած էր պետական հանձնաժողովը, որի նախագահն էր Մ. Բ. Խրապչենկոն (այժմ՝ ակադեմիկոս), գրականագետներ, մշակույթի այլ գործիչներ: Հեղինակները կատարողների հետ միասին, հերթով բեմ էին բարձրանում: Ընտրության հնարավորությունը մեծ էր, ուստի և մի ունկնդրումից վերջնական որոշում կայացնելը դժվար էր: Պետք էր շարունակել աշխատանքը:

Որոշ ժամանակ անց պարզվեց, որ հատկապես ուշադրության է արժանացել Միխալկովի և Ռեգիստանի ներկայացրած տեքստը:

1943 թվականի հոկտեմբերի 23-ին նույն դահլիճում կայացավ հերթական ունկնդրումը: Ներկա էր կուսակցության ու կառավարության ողջ ղեկավարությունը: Եզրակացությունը մեկն էր. անհրաժեշտ է ունկնդրել այն սիմֆոնիկ նվագախմբի նվագակցությամբ: Հավանության էր արժանացել Ալեքսանդրովի երաժշտությունը: Պատրաստի տեքստը հանձնվեց Ալեքսանդրովի նվագախմբին:

1944 թվականի նոր տարվա գիշերը համամիութենական ռադիոյով ողջ երկրով մեկ հնչեց Սովետական Միության նոր Հիմնը:

*Փա՜ռք հայրենիք ազատ, մեր երկիր հարազատ,*
*Ժողովրդոց բախտի հույս-հենարան:*
*Դրոշը սովետական, դրոշը ժողովրդյան*
*Հաղթանակից տանի դեպ հաղթանակ:*

Գեղեցիկ տպագրված տեքստի առաջին օրինակներից մեկը հեղինակները նվիրեցին ինձ այսպիսի անմոռաց ընծայագրով. «Մեր թանկագին պատասխանատու խմբագրին՝ Վասիլի Պետրովիչ Մոսկովսկուն, որը մեր նկատմամբ ցուցաբերած իր սրտացավ, ուշադիր վերաբերմունքով, խորհուրդներով ու ցուցումներով օգնեց մեզ Հիմնը ստեղծելիս:

Ս. Միխալկով, Էլ-Ռեգիստան»:

Խնամքով պահում եմ ես պատմական այդ մասունքը: Մեզ հետ չէ այլևս Գաբոն, բայց կենդանի է նրա գործը: Ընտանեկան ավանդույթները շարունակում է նրա որդին՝ Հարոլդ Ռեգիստանը, որ սերտորեն կապված է իր հոր և նախնիների պատմությանը, մշակույթին: Ինչքա՜ն պիտի ուրախանար սիրելի Գաբոն, տեսնելով թե որքա՜ն լավ է թարգմանել կրտսեր Ռեգիստանը ժամանակակից հայ պոեզիայի լավագույն գործերից մեկը՝ Պարույր Սևակի «Անլռելի զանգակատունը», որը ռուսերենի միջոցով այսօր դարձել է մեր Միության բոլոր ժողովուրդների հոգևոր սեփականությունը: Ինչպե՜ս կուրախանար նրան սովետահայ պոեզիայի խոշորագույն վարպետի՝ Եղիշե Չարենցի անվան գրական մրցանակը, որին արժանացել է Հարոլդ Ռեգիստանը այդ բարձրորակ թարգմանության համար:

**Մոսկվա**

# ՄԻՇՏ ՇԱՐՔՈՒՄ

**Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
**պաշտոնաթող փոխգնդապետ, հանրապետության վաստակավոր ժուռնալիստ**

ԱՎԵԼԻ ՔԱՆ ՎԱԹՍՈՒՆ տարի առաջ ընտանիքով Բաքվից Երևան փոխադրվեց Հովհաննես Մարտիրոսյանը: Բաքվի Կոմունայի օրերին նա եղել էր ակտիվ կարմիրգվարդիական, ծանր վիրավորվել, հաշմանդամ դարձել: Նորաստեղծ սովետական իշխանությունը և քաղաքի կոմունիստները ձեռնամուխ էին եղել գաղթականներով ու որբերով լցված ոստանի շենացմանը:

Այն ժամանակ Երևանի միակ «ինդուստրիալ» ձեռնարկությունը մետաղամշակման արհեստանոցն էր, որտեղ, որպես ենթավարպետ, աշխատել սկսեց Հովհաննեսի որդին՝ տասնիննամյա Հայկը: Ընդունակ էր, ուշիմ, կարճ ժամանակամիջոցում տիրապետեց մետաղից մասեր ու գործիքներ պատրաստելու արհեստին: Կոմերիտական էր Հայկը և ակտիվ մասնակցում էր կոմերիտբջջի կազմակերպած միջոցառումներին, ազատ ժամերին զբաղվում ինքնակրթությամբ: Մի օր էլ Հայկին կանչեցին ՀԿԵՄ Կենտկոմ:

— Պատրաստվե՛ք կոմերիտական ուղեգրով մեկնելու Թիֆլիս՝ ռազմաքաղաքական դպրոցում ուսանելու:



Երիտասարդի մեծագույն բաղձանքն էր այդ: Տակավին Բաքվի պաշտպանության օրերին, երբ կարմիր գվարդիայի շարքերում կատարում էր կապավոր-հեռագրիչի պարտականությունը, նա երազում էր դառնալ կարմիր հրամանատար: Զինվորական դպրոց ոտք դնելու առաջին իսկ օրվանից համոզվեց, որ այդ ռազմական ուսումնարանում ապագա հրամանատարները զինվում են նաև մարքս-լենինյան ուսմունքով, ստանում բազմակողմանի կրթություն: Նա ջանում էր խորությամբ յուրացնել ծրագրով նախատեսված առարկաները:

1924 թ. Մանգլիսում և Դուշեթում մենշևիկ ավանտյուրիստները խռովություն կազմակերպեցին ընդդեմ սովետների: Տեղի աշխատավորական զանգվածները, Վրաստանի կոմկուսի ղեկավարությամբ, համախմբեցին իրենց ուժերը՝ բնում խեղդելու խռովարարներին: Նրանց օգնության հասած Կարմիր բանակի ստորաբաժանումների կազմում էր նաև ուսանող Հայկը:

Զինվորական դպրոցը հաջողությամբ ավարտելուց հետո Մարտիրոսյանը նշանակվեց հայկական հրաձգային դիվիզիայի առաջին գնդում՝ որպես վաշտի քաղղեկ: Քաղաքական պարապմունքների և մասսայական աշխատանքների ժամերին նա անմիջական, համոզիչ խոսքով կարմիրբանակայիններին պարզաբանում էր կոմունիստական կուսակցության քաղաքականությունը, ռազմիկներին կոչ անում միշտ լինել զգոն ու պատրաստ՝ պաշտպանելու հայրենիքի սահմանները օտար նվաճողներից: 1926 թվականին Հ. Մարտիրոսյանն ընդունվեց կուսակցության շարքերը: Քաղղեկը, վաշտապետի հետ մեկտեղ, մեծ ուշադրություն էր նվիրում ստորաբաժանման մարտական պատրաստությանը: Հաշվի առնելով Հ. Մարտիրոսյանի հրամանատարական ունակությունն ու ձեռներեցությունը՝ զորամասի հրամանատարությունը նրան նշանակեց մի այլ վաշտի միանձնյա պետ:

Կարմիր բանակը զինվում էր նորագույն մարտական տեխնիկայով: Հ. Մարտիրոսյանը, որ նվիրվել էր հայրենիքի պաշտպանության գործին, ձգտում էր ստանալ ռազմական բարձրագույն կրթություն: Նա ընդունվեց Մոսկվայի Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիան, 1936 թվականին հաջողությամբ ավարտեց այն և նշանակվեց 21-րդ կարմրադրոշ դիվիզիայի շտաբի օպերատիվ բաժնի պետ, որը գտնվում էր Պրիմորիեի երկրամասի Խանկա լճի ափին, հազարավոր կիլոմետրեր հեռու իր ծննդավայրից:

«Մեր լայնարձակ երկիրն է իմ հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների ողջ Միությունը: Եվ ուր էլ լինեմ, սրբությամբ պիտի պաշտպանեմ նրա ամեն մի թիզ հողը»,— մտածում էր նա: Իսկ այդ ժամանակ ճապոնական սամուրայները, Չինաստանից զավթելով Մանջուրիան, փորձում էին ներխուժել մեր սահմանները: Շուտով Մարտիրոսյանը նույն բանակում նշանակվեց մի այլ դիվիզիայի շտաբի պետ, միաժամանակ կատարելով նաև զորամիավորման հրամանատարի պարտականությունը:

Նոր նշանակումը զուգադիպեց մի կարևոր դեպքի: Այդ օրերին Հայաստանից Հեռավոր Արևելք փոխադրվեց հրետանային մի դիվիզիոն, որի անձնակազմի մեծ մասը հայեր էին: Դիվիզիոնի հրամանատարն էր Լյուդվիգ Կարապետյանը, շտաբի պետը՝ Խորեն Ղազարյանը: Զորահրամանատարներից շատերի կանայք նախընտրեցին լինել իրենց ամուսինների կողքին: Եկավ նաև Մարտիրոսյանի կինը՝ Մարգարիտը: Նրանք ապրում էին զորականի կյանքով: Ռուս, ուկրաինացի, հայ հրամանատարները երբեմն հավաքվում էին ընտանեկան երեկույթների, յուրաքանչյուրն իր մայրենի լեզվով երգում էր, արտասանում: Հայերը հաճախ էին երգում իրենց կարոտաբաղձ երգը՝ **Երազը.**

*Ես լսեցի մի անուշ ձայն.*
*Իմ ծերացած մոր մոտ էր,—*
*Փայլեց նշույլ ուրախության,*
*Բայց ափսոս, որ երազ էր...*

Դիվիզիան սահմանամերձ գոտում էր: Լարված էին անցնում օրերն ու գիշերները: 1938 թ. ամռանը Խասան լճի շրջանում ճապոնական սամուրայները, խախտելով սահմանը, փորձեցին առաջ տողալ դեպի Վլադիվոստոկ: Նրանց դեմ ծառացան կարմիր բանակի զորամիավորումները: Հ. Մարտիրոսյանին ենթակա գնդերին վիճակվեց ջախջախել ճապոնական գվարդիական զորամասերը: Մարտիրոսյանը կարողանում էր ճիշտ կողմնորոշվել մարտական դժվարին պարագաներում, հստակ վերլուծել տակտիկական առաջադրանքները: Շուտով նրան շնորհվեց գնդապետի կոչում, հանձնարարվեց կազմավորել 239-րդ մոտոմեքենայացված դիվիզիան, որի հրամանատարը նշանակվեց ինքը: Զորամիավորումը հիմնականում համալրում էին սիբիրյան դաժան կլիմայական պայմաններում կոփված զորակոչիկներ, որոնք ունակ էին հաղթահարելու բազում դժվարություններ: Զորավարժությունները, տակտիկական պարապմունքները, հրաձգությունը տեղի էին ունենում մարտական պայմաններին համապատասխան...

Մեր երկրի վրա ֆաշիստական հորդաների հարձակման պահին 239-րդ դիվիզիան, որ գտնվում էր Պրիմորիեի երկրամասում, Հեռավոր Արևելյան ռազմաճակատի զորքերի կազմում էր: Սովետական ինֆորմբյուրոն տխուր լուրեր էր հաղորդում ռազմաճակատից: Հակառակորդի գերակշռող ուժերի ճնշման ներքո Կարմիր բանակի զորամասերը ստիպված էին ժամանակավորապես թողնել գյուղերն ու քաղաքները: Կուսակցության կոչով սովետական մարդիկ ելել էին սրբազան պատերազմի: 1941 թվականի նոյեմբերին գնդապետ Հ. Մարտիրոսյանի հրամանատարությանը ենթակա դիվիզիայի մարտիկներին տանող գնացքները ուղղվեցին դեպի արևմուտք:

...Ցուրտ էր, սառնամանիք մերձմոսկովյան տափաստաններում ու անտառներում: Կատաղի մարտեր էին մղվում մայրաքաղաքի մատույցներում: Թշնամին ամեն գնով ձգտում էր հյուսիսից ու հարավից շրջանցել Մոսկվան, գրավել այն:

Կոմունիստական կուսակցության մարտակոչով ֆաշիստական հորդաների դեմ ծառացել էին ո՛չ միայն մոսկվացիները, այլև ողջ երկիրը։ Ամենուր կառուցվում էին բարիկադներ, հակատանկային արգելքներ։ Գերագույն գլխավոր հրամանատարությունը նորանոր ուժեր էր նետում մարտի մեջ։ Կենաց ու մահու այդ օրերին 239-րդ մոտոմեքենայացված դիվիզիան՝ սիբիրցիների դիվիզիան, Տուլայի մարզի Ուզլովայա քաղաքի մոտակայքում գոտեմարտի բռնվեց թշնամու 112-րդ և 167-րդ հետևակային դիվիզիաների հետ։ Զորամիավորման մարտական խնդիրն էր՝ փակել թշնամու առաջխաղացման ճանապարհը ռազմաճակատի Իլինկա—Ուզլովայա կայարանի հատվածում։ Դիվիզիայի հրամանատար Հ. Մարտիրոսյանն ու կոմիսար Նիկոլայ Ռոդիոնովը եղան զորամասերում, ելույթներ ունեցան կարմիրբանակային միտինգներում, բոցաշունչ խոսքով ոգևորեցին ռազմիկներին հերոսական սխրանքների։

Հակառակորդ ուժերի միջև կռիվն սկըսվեց նոյեմբերի 17-ին, բորբոքվեց այն հաջորդ օրը վաղ առավոտյան։ Սիբիրցիները կռվում էին դյուցազնաբար, ետ մղելով հիտլերականների գրոհները։ Դիվիզիայի հրամանատարն այնտեղ էր, ուր վիճակը ծանր էր, վճռվում էր ճակատամարտի բախտը։ Միայն նոյեմբերի 19-ին 239-րդ դիվիզիայի զորամասերը ոչնչացրին մեծ թվով ֆաշիստների, հակառակորդի 36 տանկ, ռազմավար վերցրին 18 հրանոթ, 76 ականանետ։ Ոռխի դեմ մղված մարտերում արիաբար կռվեցին գնդի զինկոմ Վ. Կուրենկովը, Մ. Ոսկանյանը, Դ. Լուկինը և ուրիշներ։ Ամենուր առջևում էին կոմունիստները։

Կռվի դաշտում դիվիզիայի ստորաբաժանումների և ռազմիկների ցուցաբերած քաջագործությունները արժանացան վերադաս հրամանատարության բարձր գնահատականին։ Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովը, հետագայում անդրադառնալով այդ մարտերին, գրել է. ...Հակառակորդին դիմագրավելու համար Ուզլովայա քաղաքի շրջակայքը փոխադրեցինք 239-րդ հրաձգային և 41-րդ հեծելազորային դիվիզիաները։ Կռիվներն այստեղ չէին դադարում գիշեր ու զոր։ Կատաղի մարտերում նրանք աչքի ընկան իրենց հերոսությամբ...։ Իսկ «Պրավդա» թերթի 1941 թվականի նոյեմբերի 25-ի համարում կարդում ենք. ...Տուլա քաղաքի հարավարևելյան մատույցներում յոթերորդ օրն է, ինչ ահեղ կռիվներ են տեղի ունենում։ ...Թշնամու հիմնական ուժերը ձգտում են կտրել Ստալինոգորսկ—Տուլա տանող խըճուղային ճանապարհը։ Ընկեր Մարտիրոսյանի զորամասերը, մահացու հարված հասցնելով հակառակորդի խմբավորման թևերին, մարտեր են մղում «Ու» կայարանի շրջանում...։

Հիտլերյան բանակի գեներալ Գուդերիանը, հետագայում վերհիշելով Մոսկվայի մատույցներում տեղի ունեցած ճակատամարտի օրերը, գրել է. ...Մեր 112-րդ հետևակային դիվիզիան, ընդհարվելով Սիբիրից եկած թարմ զորամասերի, ինչպես և ռուսական տանկերի հետ, չդիմանալով հակառակորդի ուժեղ գրոհներին, խուճապի մատնվեց...։ Ստեղծված ծանր պայմաններում գնդապետ Հ. Մարտիրոսյանը շտաբի և քաղբաժնի հետ կարողացավ համախմբել զորամիավորման հիմնական ուժերը։ Առավելապես գիշերային մարտերի ընթացքում ոչնչացնելով ֆաշիստական ստորաբաժանումները, նրանք դուրս եկան շրջապատումից, միացան բանակի հիմնական ուժերին։ Դիվիզիայի հրամանատարը միշտ զինվորների հետ էր, տոկունության և արիության օրինակ էր հանդիսանում նրանց համար։ Օլխովեց գյուղում սիբիրցիները ջախջախեցին ֆաշիստական մի գունդ, Գերմանովկա բնակավայրում գրավեցին թշնամու 29-րդ մոտոմեքենայացված դիվիզիայի շտաբը, գերի վերցրին շտաբի պետին և գրավեցին արժեքավոր շատ փաստաթղթեր։ Հետագա պաշտպանական մարտերում 239-րդ դիվիզիան, կատարելով մարտական առաջադրանքը, մեծ կորուստներ պատճառեց հակառակորդին։

Սովետական զինված ուժերը, նրանց հետ Մոսկվայի աշխարհազորայինները կարմիր մայրաքաղաքի մատույցներում մղված արյունալի ծանր մարտերում ջախջախեցին ֆաշիստական զորագնդերը, խափանեցին Հիտլերի «Թայֆուն» նվաճողական պլանը և անցան հակահարձակման։ Այդ օրերին 239-րդ դիվիզիան մարտական գործողությունները հակառակորդի դեմ սկսեց Արևմտյան ռազմաճակատի 10-րդ բանակի կազմում, որը մարտեր էր մղում Տուլայից հարավ։

Զորականներին հասավ Արևմտյան ռազմաճակատի ռազմական խորհրդի՝ զինվորներին ուղղված կոչը։

...Ընկեր մարտիկնե՛ր, հրամանատարնե՛ր,— ասված էր այնտեղ,— օգտագործեցե՛ք ստեղծված իրադրությունը, թշնամուն մի՛ թողեք ուշքի գա։ Գործեք վճռական ու համարձակ։ Անողոք եղեք և ոչընչացրե՛ք ֆաշիստական զավթիչներին...

Ազատագրված քաղաքներում ու գյուղերում, տեսնելով ֆաշիստների գործած գազանությունները սովետական մարդկանց նկատմամբ, այրված, մոխրակույտերի վերածված շեները, մեր զինվորները վրեժով լցված գրոհում էին թշնամու դեմ։ Ծանր, դժվարին ժամանակներ էին։ Զորամասերի հարձակումը նոր թափ հաղորդելու համար դիվիզիայում ստեղծվեցին դահուկավորների ջոկատներ, ստորաբաժանումների մի մասը առաջ էր շարժվում սահնակներով։ Դիվիզիայի հրամանատար Մարտիրոսյանը հմտորեն էր կազմակերպում հետևակի, հրետանավորների ու տանկիստների փոխգործողությունները։ Նա հույժ կարևորում էր հետախուզության տվյալները, որոնք հակառակորդին պարտության մատնելու գրավականներից էին։ Մարտիրոսյանը միշտ հաշվի էր առնում ենթակաների կարծիքը, դիտողություններն ու առաջարկությունները։

Հարձակման երկու շաբաթվա ընթացքում 239-րդ դիվիզիան ազատագրեց մոտ 60 բնակավայր։ Հաջողությամբ էին ընթանում մարտերը նաև ռազմաճակատի մյուս զորամիավորումներում։ Ձախ թևում արդեն ազատագրվել էին Եպիֆան, Յասնայա-Պոլյանան, Ալեքսինը։ Թշնամին 130 կիլոմետր ետ էր մղված Տուլայից արևմուտք, վերացված էր քաղաքին սպառնացող վըտանգը։ 239-րդ դիվիզիան, բանակի մյուս զորամիավորումների փոխգործողությամբ, դեկտեմբերի 19-ին ազատագրեց Պլավսկ քաղաքը, փրկելով մոտ 900 գերիներ։ Մարտերում ծնվում էին նորանոր հերոսներ, որոնց քաջագործությունների լուրը տարածվում էր ամենուր։ Տանկիստներ Ս. Հակոբյանը, Գ. Մալովը ոչնչացնում էին հակառակորդի կրակակետերը, շարքայիններ Մալենենկովն ու Մեսրոպյանը, սերժանտ Սմիռնովը խոր ձյան միջով, քողարկված, սողեսող հասան թշնամու դզոտին, նռնակներով ոչնչացրին կրակակետերը։ Զոհվեցին նրանք՝ Մեսրոպյանն ու Մալենենկովը...

Սովետական Միության մարշալ Ֆ. Գոլիկովը, **Մոսկվայի ճակատամարտում** հուշագրության մեջ, անդրադառնալով 239-րդ դիվիզիայի հարձակողական կռիվներին, գրում է. ...Իր հրամանատար Հ. Մարտիրոսյանի և կոմիսար Ռոդիոնովի տոկուն ու հմուտ ղեկավարությամբ 239-րդ դիվիզիան առաջ էր շարժվում դեպի երկաթուղին։ Խոտեն ու Իզբովիա կիսակայարանների մոտ այն հանդիպեց հակառակորդի դիմադրությանը։ Խոտեն հենակետը գրավելիս դիվիզիան ոչնչացրեց հակառակորդի հետևակի մեկ գումարտակ, ավտոմատավարների ջոկատը և 56-րդ դիվիզիայի 234-րդ գնդի շտաբը...

Սրընթաց շարունակելով հարձակողական մարտերը՝ դիվիզիան դեկտեմբերի վերջերին հասավ Սուխինիչի քաղաքին։ Հակառակորդն այստեղ կատաղի դիմադրությամբ փորձում էր կասեցնել հարձակվող զորամասերի առաջխաղացումը։ Գիշերը քաղաքից ռազմաճակատի գիծը գաղտագողի անցել էր մի պատանի և հասել դիվիզիայի ստորաբաժանումները. նրան անմիջապես ներկայացրին դիվիզիայի հրամանատարին։ Նա ստույգ տեղեկություններ հաղորդեց թշնամու հարձակման վերաբերյալ։ Գնդապետը համբուրեց պատանուն և կարգադրեց տեղավորել նրան մի տաք անկյունում... Ողջ գիշեր դիվիզիայի ստորաբաժանումները նախապատրաստվում էին դիմադրելու ոսոխին։ Լուսաբացին, երբ հակառակորդը փորձեց հարձակվել, նրա գլխին տեղաց հրետանաականանետային կրակը։ 324-րդ դիվիզիայի հետ մեկտեղ 239-րդ դիվիզիան ազատագրեց Սուխինիչին։

Դիվիզիան թշնամուն հետապնդելով արդեն մտել էր Սմոլենսկի մարզը, հրաման ստացվեց ռազմաճակատի հարավ-արևելյան հատվածից՝ Կիրով քաղաքից փոխադրվել դեպի արևմտյան հատվածը՝ Մոժայսկ։ Զորամասերի համակենտրոնացումից հետո գնդապետ Հ. Մարտիրոսյանը հրավիրեց գնդերի հրամկազմի ու քաղաշխատողների խորհրդակցություն։ Պարզաբանեց պատերազմական գործողությունների իրադրությունը ռազմաճակատի այդ հատվածում։

Սկսվեց գրոհը։ Որոտացին 239-րդ դիվիզիայի թնդանոթներն ու ականանետները։ Մարտի մեջ մտան օժանդակ զորատեսակները։ Կրակի տարափի տակ, բոցերի միջով գրոհում էին քաջարի սիբիրցիները։ Գնդապետ Հ. Մարտիրոսյանը կյանքը վտանգելով հասնում էր այնտեղ, ուր, ըստ կանոնագրքերի, արգելված էր լինել զորահրամանատարին։ Բայց նա միշտ զինվորների կողքին էր, անձնական օրինակով ոգեկոչում էր նրանց նորանոր սխրանքների։ Կրնկակոխ հետապնդելով նահանջող հակառակորդին՝ 239-րդ դիվիզիայի զորամասերը մոտեցան Վոլգայի վերին հոսանքի ափի Զուբցով քաղաքին, համառ մարտերով գրավեցին այն։ Ռժևի

համար մղված արյունալի կռիվներից մեկում թշնամու ռումբի բեկորի հարվածից ծանր վիրավորվեց Մարտիրոսյանը, հուժկու պայթյունից կոնտուզիա ստացավ: Գիտակցությունը կորցրած գնդապետին դուրս բերեցին կրակագծից: Բուժաշխատողները ամեն ջանք գործադրեցին՝ փրկելու նրա կյանքը:

Ապաքինվելուց հետո Մարտիրոսյանը դարձավ գլխավոր շտաբին կից Վորոշիլովի անվան զինվորական ակադեմիայի բարձրագույն դասընթացի ունկնդիր: Այն ավարտելուց հետո, հակառակ ռազմաճակատ մեկնելու իր բուռն ցանկությանը, նշանակվեց Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիայում ամբիոնի վարիչ: Այստեղ նրան շնորհվեց գեներալ-մայորի կոչում, բայց կրակի ու բոցերի միջով անցած զորականը չէր կամենում մնալ ակադեմիայում, ձգտում էր մեկնել գործող բանակ: Ահա ինչ է գրել Հ. Մարտիրոսյանի մասին գեներալ-գնդապետ Ֆեոդոր Կուզնեցովը. Գնդապետ Հ. Մարտիրոսյանը նվիրված է կոմունիստական կուսակցությանն ու սոցիալիստական հայրենիքին: Քաղաքականապես ու բարոյապես կայուն է: Դասընթացներում լիովին օգտագործում է իր մարտական փորձը... Օպերատիվ խնդիրները լուծում է հմտությամբ ու ճշտորեն կազմակերպում զորքերի փոխգործողությունները...:

Բազմաթիվ դիմումներից հետո Հ. Մարտիրոսյանը նշանակվում է 43-րդ բանակի հրամանատարի տեղակալ՝ շարային գծով: Այդ բանակը մտնում էր Մերձբալթյան առաջին ռազմաճակատի մեջ: 1945 թվականի սկզբին Նեմանի ափին հույժ կարևոր մարտական առաջադրանք կատարելուց հետո Մարտիրոսյանը նշանակվեց 90-րդ կորպուսի հրամանատար:

Քառասունհինգ թվականի ապրիլ: Գեներալ-մայոր Հ. Մարտիրոսյանը կրկին 43-րդ բանակում էր, նրա հրամանատարի շարային գծով տեղակալը: Սովետական զինված ուժերի մյուս զորամիավորումների հետ հայրենի հողը ֆաշիստական հորդաներից մաքրելուց հետո, 43-րդ բանակը մտել էր Արևելյան Պրուսիա, հասել Քյոնիգսբերգի մատույցներին: Պրուսական միլիտարիզմի այս հնագույն ամրոցի շուրջը հիտլերականներն ստեղծել էին պաշտպանական ամուր բնագծեր: Մերձբալթյան առաջին ռազմաճակատի զորքերը ձեռնամուխ էին եղել վերջին, վճռական գրոհի, որը վարում էր բանակի գեներալ Հ. Բաղրամյանը: 43-րդ բանակի ռազմական խորհրդի որոշմամբ զորամիավորման տակտիկական օպերատիվ մարտական առաջադրանքների ղեկավարությունը հանձնարարվեց գեներալ-մայոր Հ. Մարտիրոսյանին: Նրա նախաձեռնությամբ մարտադաշտի իրենց հատվածում կազմակերպվեցին գրոհային հատուկ ջոկատներ՝ հագեցված զենքի բոլոր տեսակներով: Ընդհանուր հարձակման հենց առաջին օրը 43-րդ բանակի զորամիավորումները ճեղքեցին իրենց ուղղությամբ գործող հակառակորդի պաշտպանական գիծը, իսկ հաջորդ օրը մարտեր ծավալվեցին քաղաքի կենտրոնական թաղամասերում: Քաջարի ռազմիկները, մահն աչքներն առած, սլանում էին առաջ: Կռիվն առավել կատաղի դարձավ միջնաբերդում:

Սովետական ռազմիկների ջախջախիչ հարվածներից ապրիլի 10-ին անձնատուր եղավ Քյոնիգսբերգի կայազորը: Մայիսի 8-ին հիտլերյան Գերմանիայի զինված ուժերը անվերապահ կապիտուլյացիայի ենթարկվեցին:

Մեծ հայրենականի հաղթական ավարտից երկու տարի անց գեներալ-մայոր Հ. Մարտիրոսյանը նշանակվեց հրաձգային Թամանյան հայկական դիվիզիայի հրամանատար. գեներալ Նվեր Սաֆարյանն ստանձնեց մի այլ զորամիավորման հրամանատարությունը: Ճիշտ է, երկրում արդեն խաղաղություն էր, կոմունիստական կուսակցությունն աշխատավորների ուշադրությունը բևեռել էր ժողովրդական տնտեսության վերականգնման նպատակին, բայց զորականը մնում է զորական. նրա սրբազան պարտքն է՝ միշտ լինել զգոն ու մարտական վիճակում, պատրաստ պաշտպանելու հայրենիքը:

Դիվիզիայի հրամանատարը օրվա մեծ մասն անցկացնում էր ստորաբաժանումներում, մասնակցում զորավարժություններին, դաշտային պարապմունքներին, հրաձգություններին: Զորապետը իր ողջ մարտական հմտությունն ու եռանդը գործադրում էր, որպեսզի զինվորներն ու հրամանատարները վարպետորեն տիրապետեն ժամանակակից տեխնիկային, մարտեր վարելու արվեստին: Նա միաժամանակ զբաղվում էր մարտիկների քաղաքական դաստիարակությամբ, նրանց իրազեկ դարձնում միջազգային կյանքում տեղի ունեցող իրադարձություններին:

Եվ, պատահական չէ, որ տեսչական ստուգումների ժամանակ դիվիզիան միշտ արժանանում էր բարձր գնահատականի:



Մարտական քաղաքական պատրաստության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների, անձնակազմի նկատմամբ ցուցաբերած հոգատարության համար գեներալ-մայոր Հ. Մարտիրոսյանը հաճախ արժանանում էր Անդրկովկասյան զինվորական օկրուգի հրամանատարության շնորհակալությանը: Սերտ էր Հայկ Մարտիրոսյանի կապը տեղի բնակչության հետ: Հաճախ էր նա ելույթներ ունենում բանվորների ու կոլտնտեսականների ժողովներում, նրանց սրտերում բորբոքում սովետական հայրենասիրության կրակը: Նա ընտրվել է ՀՍՍՀ Գերագույն սովետի երկրորդ և երրորդ գումարման դեպուտատ, ՀԿԿ XIII համագումարի պատգամավոր:

1951 թվականի հունվարին գեներալ-մայոր Հ. Մարտիրոսյանը նշանակվեց ավելի խոշոր ստորաբաժանման հրամանատար: Տարիներ անց նա փոխադրվեց աշխատելու պահեստի հրամանատարական կազմում: Այդ օրերից անցել է երկար ժամանակ: Արդեն բոլորում է գեներալ Հ. Մարտիրոսյանի ութսուն տարին: Բայց նա միշտ եռանդուն է, տոկուն...

Գրեթե քսան տարի է գեներալ-մայոր Հ. Մարտիրոսյանը հասարակական կարգով նախագահն է պատերազմի վետերանների երևանյան սեկցիայի, Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչությանն առընթեր ռազմական գիտելիքների պրոպագանդման գիտամեթոդական խորհրդի նախագահը: Նա հաճախ է հանդես գալիս աշխատավորական կոլեկտիվներում, զրուցում դպրոցականների ու պիոներների հետ, պատմում նրանց սովետական հայրենասեր զինվորների քաջագործությունների մասին: Գեներալը միշտ ջանում է ընթացք տալ պատերազմի վետերանների, Մեծ հայրենականում զոհվածների ընտանիքների անդամների խնդրանքներին ու դիմումներին՝ լուծելու նրանց հուզող հարցերը...

Գեներալ-մայոր Հ. Մարտիրոսյանը սերտ կապի մեջ է սիբիրցիների ազատագրած քաղաքների աշխատավորության հետ, նամակներ, հեռագրեր է ստանում այդ վայրերից: Նա ընտրված է Ուզլովայայի պատվավոր քաղաքացի:

Գեներալ Հայկ Մարտիրոսյանը իր խոհերով ու հիշողություններով հաճախակի հանդես է գալիս պարբերական մամուլում: Նրա գրչին են պատկանում **Մոսկվայի ճակատամարտում, Ռժևի ուղղությամբ, Նեմանից մինչև Քյոնիգսբերգ, Առավել ուշադրություն երիտասարդության հայրենասիրական դաստիարակությանը** գրքույկները, որոնց վերնագրերն իսկ ցույց են տալիս, որ սովետական հայրենիքի պաշտպանության, մատաղ սերնդի՝ ապագա զինվորների, մեր քաղաքացիների ռազմահայրենասիրական դաստիարակության գործը միշտ հուզել և հուզում է ռազմի ճամփաներում թրծված ու կոփված հայրենանվեր մարտիկին՝ պաշտոնաթող գեներալ-մայոր Հայկ Հովհաննեսի Մարտիրոսյանին:

---

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՆՈՃԻՆԵՐԻ ՊՈՒՐԱԿՈՒՄ

ԿՈՄԻՏԱՍԻ ՊՈՂՈՏԱՆ բազմաթիվ խաչմերուկներ ունի, որոնք գոյանում են աջ ու ձախ ուղղահայաց ձգվող փողոցներից: Այդ խաչմերուկներից մեկի բաց անկյունում արաբկիրցիների հիշատակին նվիրված հուշարձան կոթողն է՝ երկաթակերտ շատրվանների համալիրը: Խոսքս պիտի վերաբերի հենց այդ հատվածում պողոտան կտրող փողոցին և մի քանի այլ հարցերի...

Ես սիրում եմ քայլել (բժիշկներն էլ մյուս կողմից են պարտադրում) մաքուր օդի որոնումներում, նաև աղմուկից փախչելով, ընտրում եմ քիչ ծանրաբեռնված, պակաս թեքություն ունեցող, դեպի ծայրամասերը տանող փողոցներ: Զբոսնում եմ գերազանցապես գիշերով, ժամը 10-ից, նույնիսկ, պատահում է, 11-ից հետո: Սա էլ՝ հեռուստացույցից, նաև գրասեղանից փախչելու, անքնության երկյուղից, ֆիզիկապես հոգնելու և դրանով անապաստան քունը մոտեցնելու համար....

## ԱՐԳԵԼԱԶՈՂԻՑ ԱՆԴԻՆ

Անցյալ տարվա հոկտեմբերի վերջերին էր, մի զով ուշ երեկո: Արաբկիր թաղամասում պտտվելիս, Կոմիտասին զուգահեռ ներքևից ձախակողմյան մի փողոցով բարձրացա-բարձրացա մինչև վերջ, այսինքն՝ մինչև դեմ առա ճանապարհը եզրափակող մի բարձրության, որի վրա հին տներ ու տնակներ էին կուտակված: Բնապատկերը գեղատեսիլ էր՝ տների թեք ու ճերմակ կտուրներով, լուսավորված պատուհանների անհամաչափ դեղին քառակուսիներով, հոգնել էի ու այլևս վեր բարձրանալու ցանկություն չկար, ուստի թեքվեցի դեպի ձախ և ընկա հիշատակածս փողոցը: Արաբկիրցիների հուշահամալիրը հետո տեսա, երբ վերադառնում էի և ճանապարհս շարունակեցի դեպի Կոմիտաս ու դենը, իսկ այդժամ բռնեցի ասֆալտապատ ճամփան ու քայլեցի դեպի ձախ, դեպի Հրազդանի կիրճի կողմը, դեպի մաքուր օդ ու լռություն, դեպի անդորր:

Փողոցը գնաց-գնաց դեմ առավ անձնական օգտագործման ավտոմեքենաների գիշերօթիկ մի կանգատեղի: Ցանցապատից ներս արդեն տեղ ու դադար չկար, և շատ մեքենաներ՝ մեծ մասամբ գույնզգույն ու սիրունիկ «Ժիգուլիները», կանոնավոր ու խիտ, շարվել էին նաև դրսում, դարպասի առջև: Մուտքի մոտ պահակի ճերմակապատ տնակն էր՝ փոքրիկ պատուհանի սև քառակուսիով, մի բան, որը վկայում էր, թե մեր քաղաքացիների անձնական սեփականության ամենաթանկ ունեցվածքի «արթուն պահապանը» արդեն քուն է մտել կամ ննջում է կիսարթուն՝ ականջն օտար ձայների... Մենավոր էլեկտրասյան բարձր բարձունքից առանց լուսամփոփի լամպը՝ երևի մի հազար մոմանոց, առատ ու հզոր լույս էր սփռում կանգատեղի վրա, որտեղ, իրենց տերերին սպասելով, օրվա վազվզուքից հանգստանում էին ժամանակակից նժույգները, որ սակայն գույնզգույն ու պսպղան խաղալիքբզեզներ էին հիշեցնում...

Իսկ դեպի ձորաբերանի մութն էր ձգվում ինչ-որ ծառուղի՝ երկու կողմից բարձրաձիգ ու մութ-անթափանց ծառապարիսպներով թիկնապահված: Ծառուղու մուտքը կտրված էր երկաթյա արգելափակոցով: Ես անցա երկաթաձողի մոտով և շատ անսպասելի հայտնվեցի մթին ու զարմանալի մի պուրակում: Գիշերվա թանձր ստվերների մեջ, որ առաջանում էին կիսված լուսնի և հեռվում մնացած էլեկտրասյան լամպից, կոկիկ շարասյուներով երկու կողմից զգաստ ու անշարժ կանգնել էին փարթամ ու սլացիկ նոճիների զույգ շարքերը: Նոճիները, որ մեր հայերենում ավելի հայտնի են կիպարիս անունով, լուռ էին, անսպասելի, հետևաբար՝ հետաքրքրական, խորհրդավոր: Եվ օդն էլ անսովոր թարմ շնչով ու միանգամից խուժեց թոքերս՝ իսկույն զորացնելով շնչառությունս:

## ՆՈՃԻՆԵՐԻ ՊՈՒՐԱԿՈՒՄ

Բավական ժամանակ անցկացրի այստեղ, նոճիների պուրակում՝ ինչպես ինքս ինձ համար կնքեցի այս գողտրիկ անկյունը: Մթության մեջ, ասում են, որ ամեն ինչ գեղեցիկ է թվում, և այդ տեղը ինձ համար այդ պահից թանկ ու հարազատ դարձավ: Կանգնել էի ձորաբերանին, որտեղ ավարտվում էր պուրակը, և նայում էի դեպի Հրազդանի աջ ափը, որը շատ ավելի ցածր էր: Իսկ կիրճն այնքան մութն էր ու խոր, որ գետի խշշոցը չէր հասնում ինձ, բարձրանում-մագլցում էր վեր ու վեր և հալվում, կորչում էր ժայռեղեն ափի ծերպերում: Դիմացի խորը մթնում աներևույթ մի ավտոմեքենա, լուսարձակների դեղնավուն շողքը խճուղու ասֆալտին քսելով, դանդաղ ու զգույշ առաջ էր ընթանում...

Շուրջս խաղաղ էր, հանգստավետ, բայց և պաղ ու զովացուցիչ օդը մտքեր էր արթնացնում, մղում շարժվելու, գործելու: Շրջեցի պուրակում: Ինչ-որ խճաքարերի թափոններից պնդացած գորշավուն կույտեր ու բլրակներ խաթարում էին խոտի փափուկ հպումը կոշիկներիս... Ակամա զարմանում էի, թե ինչո՞ւ այստեղ ոչ մի նստարան չկա, ինչո՞ւ է պուրակն այսքան անխնամ: Ինչ-որ մարդիկ՝ երևի կանաչապատման տրեստի մասնագետներ, միանգամայն բարի նպատակներով, ո՞վ գիտե երբ, ստեղծել են այս կանաչ օազիսը. ավտոների գիշերօթիկը, անշուշտ, հետո է եկել գրավել այս մաքրօդ տարածությունը, որպեսզի «Ժիգուլիների» բարակ թիթեղն ու պլպլան լաքը շուտ չփչանան՝ քաղաքի բանուկ տեղերում իրենց իսկ արտավիժած գազախտերից: Բայց այդ նույն մարդիկ հետագայում ինչո՞ւ են այսպես մոռացության մատնել նոճիների պուրակը, թողել անխնամ ու վայրի. սկսած լավ գործը ինչո՞ւ մինչև վերջ չեն հասցրել... Իսկ պուրակը, թեկուզ և ոչ մեծ, իսկապես շատ գողտրիկ է թվում, հարմարավետ, Զանգվի զով պռնկին, աղմուկներից բավական զերծ, օդը թարմացուցիչ: Պուրակը կարելի էր և ընդարձակել՝ մանավանդ դեպի ցած ու վեր: Իսկ այսպես, հավանորեն թողնված է թաղի երեխաների տնօրինությանը: Ասենք, այժմյան երեխաները գուցե և իսկի ժամանակ էլ չեն ունենում հեռուստացույցներից ու դասագրքերից պոկվելու և արկածալից խաղերի տրամադրող այսպիսի մի տեղում մինչև քափ ու քրտինք վազվզելու... Հիշեցի իմ մանկությունն ու վաղ պատանեկությունը Թիֆլիսում. մեր թաղում էլ, հենց մեր շենքի ետևում, այսպիսի մի վայրի տեղ կար, որտեղ նոճիների փոխարեն մացառուտ էր, գորշ կավահող, ծերացած ծալքավոր լեռնապարներ, որ պոկոտում էինք մեր անզեն ձեռքերով, ու ընտացված քարաբեկորները՝ ռումբ-նռնակ-զինամթերք դարձրած, կիտում տարբեր տեղեր, ապա «պլի՛» հրամանով միանգամից ու միահամուռ տառացիորեն ռմբակոծում էինք ցածում գտնվող տների ապակեբանդ պատշգամբներն ու կղմինդրածածկ կտուրները: Մեր Գորկան, որտեղից շատ լավ երևում էր Քռի արծաթ ժապավենը, զերծ էր կանաչից, ամառները այնտեղ կարիճ ու մորեխներ էինք որսում, հավաքածը բերում մեր կատվին էինք հյուրասիրում: Ու երևի մեծահասակներից ոչ մեկի մտքով էլ չէր անցնում, որ այստեղ կարելի է կանաչապատել, ծառատունկ կազմակերպել, հող ու ճիմ բերել... Ուրի՛շ տարիներ էին: Իսկ հիմա, խնդրե՛մ, ես այստեղ, նոճիների այս պուրակում հուզվում եմ, որ մարդիկ իրենց սկսած լավ գործը կիսատ ու անխնամ են թողել... Իսկ մի քանի տարի առաջ, երբ այցի էի գնացել մեր նշանավոր Գորկան, այնտեղ այնպիսի՛ փարթամ բուսականություն տեսա, որ ընդամենը նեղլիկ մի անցուղի էր մնացել դեպի բլրակի «գագաթը» հասնելու համար, որտեղից առաջվա պես արծաթին էր տալիս Քռի ոլորուն ժապավենը: Զարմանալին, սակայն, այն էր, որ պատերազմի դժվար տարիներին ու հետո մարդիկ այս հողատարածությունը չէին մշակում, իսկ հիմա ամբողջն առնված էր ցանկապատերի մեջ, որտեղ տնամերձ մարգեր էին, մրգատու ծառեր: Ինչևէ՛, կանաչը կանաչ է՝ զբոսավայրի թե բոստանների տակ— հողը չկորչի, մարդիկ զբաղմունք ունենան, հանգստանալու, մաքուր օդ շնչելու տեղ, ստվեր՝ գլխավերևում, ամռան արևից պաշտպանվելու հովանի:

Եվ պատահական չէր, որ այժմ, նոճիների այս պուրակում, կեսգիշերային մի պատահական այցի ժամանակ, խնդրե՛մ, կանգնել և հուզվում եմ, ինչ է թե նստարաններ չկան, մոխիր ու խճաքար կա, որ պնդացել, կանաչը խաթարել են... Ուրի՛շ տարիներ են հիմա, ուրի՛շ ժամանակներ. մարդկանց ազատ ժամանակը շատացել է, շենքերն իրենց աննախընթաց բարձրությամբ թեպետ փակել են հորիզոնը, բայց նրանց մտահորիզոնն է ընդլայնվել, և պահանջներն էլ ավելի բծախնդիր են ու համառ, նաև հետևողական:

## ԺԱՆԱՉԵՆՔ ՄԵՐ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ

Նորից հայտնվեցի կիրճի պռնկին... Դիմացը, ցածում սողացող ավտոմեքենան վաղուց իր դեղնալույսը տարել էր հետը, և խճուղին վերածվել էր խավարում կորած մի չգոյության: Ուշադրությունս գրավեցին դիմացի ցածրավանդ մի տեղում անկանոն խմբված շինությունները. բազմաթիվ պատուհաններում դեռևս լույս էր ցոլում: Փորձեցի կռահել դրանց ինչ լինելը, մանավանդ մի հսկա, ալրաղացի պես բարձրաբերձ ու անպատուհան, ցածրից ամբողջովին լուսավորված, ամրոցատիպ մի շենքի նշանակությունը, բայց ապարդյուն: Վա՛տ գիտենք

մեր քաղաքը, մտածեցի՝ երևի թե օրը ցերեկով էլ չկարողանայի կռահել:

Շատ անգամ է պատահել՝ մտածել եմ նստել առաջին հանդիպած ավտոբուսը և գնալ մինչև երթուղու վերջը, իջնել մի տեղ, թափառել մի քիչ, նայել-ծանոթանալ հեռավոր թաղամասին, ճանաչել-հիշել գոնե նրա արտաքին տեսքը... Բայց... ավտոբուսները գրավիչ չեն, ցերեկները գործ է պետք անել, ժամանակ չկա, գիշերները քայլել է պետք ու մաքուր օդ... Բայց ուրիշ բան էր ասելիքս, որ մտածեցի այնտեղ, նոճիների պուրակում. մեր հեռուստատեսությունը, որն այնքան մեծ ձգտում, նաև հնարավորություններ ունի՝ իր ծրագրերը հետաքրքրական, բովանդակալից, նաև նպատակային դարձնելու, ավելի հաճախ պիտի կազմակերպի կինոէքսկուրսիաներ մեր մայրաքաղաքի տարբեր թաղամասերում, հատկապես արվարձաններում: «Ճանաչենք մեր մայրաքաղաքը» խորագիրը շատ խորիմաստ կարող է լինել. ընդ որում՝ ոչ թե զուտ դիդակտիկ նպատակներ պետք է հետապնդել, այլ, աստիճանաբար խորանալով, լուծել բազում գործնական մեծ ու փոքր խնդիրներ: Ամեն թաղամաս, երևի, իր ուրույն դեմքն ունի և ամեն կարգի հոգսեր: Ինչպե՛ս են զարգանում, ի՛նչ կարևոր նորություններ կան, ի վերջո, որո՞նք են, իսկապես, մեր հին ու նոր թաղամասերի բնորոշ առանձնահատկությունները: Մալաթիա, Նոր Արեշ, Ծենգավիթ, Կիլիկիա, Հին Նորքն ու Նոր Նորքը, նույն Արաբկիրն ու Մարաշը... Անունները բոլորս էլ, երևի, գիտենք, բայց քիչ չէ՞ այդքանը...

Մենք հաճախ գրեթե քամահրանքով ենք խոսում տեղային պատրիոտիզմի մասին, մինչդեռ, եթե մի քիչ մտածենք, այստեղ կարելի է գտնել ու հայտնաբերել շատ հետաքրքրական և օգտակար կողմեր: Մարդուն հատուկ է սերը իր ծննդավայրի հանդեպ, հպարտության զգացումը փոքր հայրենիքի՝ իր տան, իր բակի, իր հարևանների, իր փողոցի, իր թաղամասի, իր քաղաքի, իր հանրապետության հանդեպ: Առանց այսպիսի պատվազգացության՝ հնարավոր չէ պատկերացնել մեծ հայրենասիրությունը: Այնպես որ՝ մենք պետք է զարգացնենք նաև տեղային հայրենասիրությունը, և վերջ տանք քամահրական վերաբերմունքին այդպիսի զգացման հանդեպ: Որտեղի՞ց կամ ինչի՞ց է սկսվում Հայրենիքը. գուցե հենց մեր թաղամասի՞ց... իսկ գուցե ավելի փոքր ու աննշան տեղի՞ց, ասենք թե՝ նոճիների պուրակի՞ց...

## ԳԵՏԱՌԻ ԶԲՈՍԱՀԱՄԱԼԻՐԸ

Նոճիների պուրակ եկանք հանգստանալու, օրվա հոգսերից թեթևանալու, բայց տե՛ս, թե որքան լրջացանք և ուր հասանք... Միշտ չէ, ուրեմն, որ խաղաղ անդորրը, գեղատեսիլ բնապատկերը նույնքան անմեղ մտքեր են հարուցում:

Ի դեպ, զարմանալի է, որ Երևանում այդպիսի ծառեր են աճում՝ նոճիներ, որոնց հանդիպել եմ սևծովյան ափերին: Եթե այդպես է՝ մերձարևադարձային այդ ծառերը, որ այդպես փարթամորեն հասակ են նետել Զանգվի զովաշունչ ափերին, ապա մեր հին ու ցածրադիր զբոսայգիներում, առավել ևս՝ նոր զբոսավայրերում, որտեղ շատ բետոն կա ու բազալտ, որտեղ նաև շատրվաններ են խփում՝ զարմանահրաշ ձևեր ընդունած, ու թափվում գեղաքանդակ ավազանների մեջ, մի՞թե չի կարելի բուծել նաև այս զմայլելի ծառատեսակը, որ ուղղակի աչք է շոյում ու, եղևնազգի լինելով, առատ թթվածին արտադրում:

Ով հիշում է, թե ինչպիսին էր Գետառի ձախ ափը Խանջյան փողոցի երկարությամբ, չի կարող չուրախանալ նրա այսօրվա տեսքով, իսկ վաղը, երբ արդեն ավարտված կլինեն այդ մեծ զբոսահամալիրի (ուրիշ կերպ չես անվանի) կառուցապատման աշխատանքները՝ առավել ևս... Արդյունաբերական եղանակով արտադրված բետոնասալերը պատել են ճեմուղիները, որոնք շրջապատում են մեծ ու փոքր ջրավազանները, ուղեկցում առուները, զարդարում կամուրջը: Պետք է հուսալ, որ առհասարակ շատ խնամքով մտածված այս զբոսակառույցը շուտով կդառնա երևանցիների սիրված զբոսավայրերից մեկը: Կառուցապատման հեղինակներն աշխատել են ռացիոնալ օգտագործել տեղանքի ընձեռած հնարավորությունները. անձեռնմխելի են թողել որոշ սաղարթաշատ ու պտղատու ծառեր, որ մնում են հին այգիներից, կանոնավոր հունի մեջ են դրել Գետառը և այլն:

Ամբողջ հսկա տարածքում ինձ պատկերանում են նույնքան խնամքով ընտրված ծառատեսակներ, որոնց տակ գեղեցիկ ու հարմար նստարաններ կլինեն, իսկ Խանջյան փողոցի երկարությամբ կձգվեն կապտին տվող մուգ կանաչ նոճիների զուգահեռ շարքերը: Ե՛վ գեղեցիկ կլինի, և՛ զորավոր մի պատնեշ՝ փողոցի աղմուկի ու փոշու դեմ:

Կարելի է զարմանալ ու նաև ափսոսալ, թերևս, մի բանի համար. Վարդան Մամիկոնյանի արձանից ցած բավական տեղ Գետառն առնված է բետոնե կոկիկ ափերի մեջ և իր բարձրագոչ խշշոցով խլացնում է փողոցային երթևեկության աղմուկը, բայց շուտով տառացիորեն «գետնի տակն» է անցնում: Նրան փոխարինում են հինգ բավական տարողունակ ու զանազանակերպ ջրավազանները, որոնց առավելությունները, անշուշտ, բազմաթիվ են, բայց ունեն մի էական պակասություն՝ լուռ են: Եվ շատրվանների նշմարներ էլ չկան, առա՛յժմ գոնե: Բայց գետի խշշոցին ու քչքչոցին չի փոխարինի ոչ մի շատրվանային աղմուկ: Հիշո՞ւմ եք, որքան էր սիրում Չարենցը գնալ Զանգվի ափերը և «ջուր լսել»: Առանց այն էլ «գետից աղքատ» Երևանը, մանավանդ զբոսայվայրում, չարժե զրկել ջրի բնական ձայնից:

## ԱԿԱՄԱ, ԲԱՅՑ ԱՆԽՈՒՍԱՓԵԼԻ ՇԵՂՈՒՄՆԵՐ

Քանի որ խոսք բացվեց ջրի մասին, թերևս, արժե նշել նաև հետևյալը. առհասարակ Երևանում, նույնիսկ զբոսավայրերում, փողոցներում մեր նշանավոր ոճավորված ցայտաղբյուրները, որ մայրաքաղաքիս բնապատկերի անբաժան ու օրգանական բաղադրիչներն են եղել ու մնում են, հետզհետե սկսել են պակասել: Հատկապես այնպիսի տեղերում, որտեղ անմիջապես կամ մոտերքում տարբեր տեսակ ջրերի վաճառակետեր կան: Ցայտաղբյուրները նախ ջրազրկվում են, հետո, մեկ էլ տեսար, վերանում: Երբեմն էլ դրանք այնքան սակավաշիթ են, որ միայն վրդովմունք են հարուցում... Չգիտեմ, թե ինչ եզրակացություն կարելի է անել, բայց ծարավ մարդն այդպիսի դեպքերում ի՛նչ ասես կարող է ենթադրել...

Երևանցուն ամռան կիզիչ արևից պաշտպանվելու համար, մեր սառնորակ ջրից բացի, շատ կանաչ է պետք ու մանավանդ՝ ստվեր, սաղարթների հովանի, զովություն: Այս տարվա մեր այսքան երկարած ու ցրտաշունչ ձմռանը կարճատև գարունից հետո հաջորդելու է երևանյան ամառը. արևի տակ դիմանալ չի լինում, իսկ ստվերում հաճելի զովություն է. սա էլ մեր բնակլիմայական բազմաթիվ պարադոքսներից մեկը, որը պետք է հաշվի առնել և խելացի օգտագործել: Մինչդեռ ահա Ալ. Մյասնիկյանի հուշահամալիրը՝ հարյուրավոր շատրվաններով զարդարված, գեղեցիկ է, գրավիչ, հյուսիսային երկրամասերից ժամանած տուրիստների համար՝ նույնիսկ էկզոտիկ, բայց այստեղ ստվեր չկա, հանգստանալու համար աթոռ ու նստարան չկա: Լավ է, որ գեղեցիկ է, բայց հսկայական տարածքը ամայի է, բանուկ չէ, լոկ անցուղու դեր է կատարում, որովհետև հանգրվանելու տեղ չունի: Ոչ մի ցայտաղբյուր. այդքան առատ ջրաշիթերի մեջ ջուր խմելու հնար չկա: Թե՞ պիտի կռանանք շատրվանից ջուր խմենք. երեխաները՝ գուցե հաճույքով դիմեն այդ միջոցին, իսկ մեծահասակնե՞րը... Գուցե արժե՞ մի թևասլաց տաղավար տեղադրել՝ պաղպաղակի, սուրճի, զովացուցիչ ջրերի համար. դա շունչ ու կենդանություն կտա համալիրին:

Էլ չեմ ասում, որ կարելի է այստեղի համար նստարանների հատուկ թեթևասահ ձևը մտածել, միա՛յն այստեղի համար, ի՛ր տեսակի: Մի ուրիշ տեսակ էլ, ասենք, Գետառի համալիրի համար: Չէ՞ որ հայկական ճարտարապետությունը ձևերի կրկնություն չի սիրում: Իսկ զբոսավայրերի նստարանները ինչո՞վ չեն ճարտարապետական բաղադրիչներ: Եվ տեղն է եկել, նշենք, որ չի կարելի ասել, թե մեր զբոսայգիների նստարանների մասին մտածողներ չկան. կա՛ն, բայց հակառակ ծայրից... օպերային թատրոնի հրապարակի նստարանները, որ իրենց տեսակի ու հարմարավետության առումով անփոխարինելի էին, հանկարծ վերացան, և հրապարակը միանգամից ամայացավ: Իմ կարծիքով՝ թոշակառուների խմբերը, որ հավաքվում էին այստեղ, հանդիպում իրար, միմյանց հալուհալբաթից տեղեկանում, զրուցում աշխարհի բաներից, նարդի ու հայկական տամա խաղում, յուրատեսակ գույն ու բովանդակություն էին հաղորդում շրջապատին և բնավ ոչ պատահականորեն հաճախ էին մտնում երևանյան թեմաներով վավերագրական ժապավենների կադրերի մեջ: Հիմա երեկոները միայն հեծանվավոր ու շնավոր տղաներն են իշխում այստեղ: Իսկ ցերեկները հրապարակն ամայի է, խորթ, օտար ու անհետաքրքիր: Լճակի շուրջը տեղադրված թեթև նստարանները լավ են մտածված, բայց կասկածելի են իրենց երկարակեցության առումով: Դրանց ձևի ու պակաս հարմարավետության իմաստն այն է, որ նստողները երկար չմընան անշարժ, այլ, հոգնելով նստելուց, ելնեն ու քայլեն: Բայց մեջտեղ են եկել նաև այնպիսի նստարաններ, ավելի շուտ՝ ձողաշար կոպիտ իշտոնուկներ, որոնց վրա ո՛չ երկար նստել կարող ես, ո՛չ էլ հանգստանալ, որովհետև թիկնակ չունեն և, լավագույն դեպքում, պիտի սեփական ծնկներիդ ու արմունկներիդ ապավինես: Սրանք հայտնվել են հատկապես այնպիսի տեղերում, որտեղ երիտասարդ զույգերը փորձում են թաքնվել անհամեստ աչքերից: Ի՛նչ ասես, մեկնաբանությունները ավելորդ են թվում...

Երկու խոսք հիշատակածս հուշարձանների մասին: Ինձ համոզիչ չի թվում, որ Մյասնիկյանի արձանը դեմքով դեպի փողոց է նայում. շատրվանների համալիրը բոլորովին այլ հնչողություն կունենար, եթե հակառակը լիներ: Կամ գոնե սյունաշարի այս կողմում մեր հանրապետության առաջին նախագահի գործունեությունն ու այդ տարիները խորհրդանշող ինչ-որ արձանախումբ կարելի էր դնել. զբոսահամալիրի ու սյունաշարի մոնումենտալու-

թյունն այդ են պահանջում: Սա, կարծում եմ, լրացվելիք բացթողում է:

Ինչ վերաբերում է Վարդան Մամիկոնյանի ձիարձանին՝ մի նկատառում ևս. գիշերները արձանը մշտապես չի լուսավորվում և հեռվից կիսամութի մեջ ինչ-որ հեքիաթային զարզանդ բան է հիշեցնում: Առհասարակ հարկ է մտածել, որ մեր գեղեցիկ ու իմաստալից հուշարձան-կոթողները գիշերները ևս արժանի ձևով ու իմաստով հնչեն: Այս դիտողությունը վերաբերում է նաև շատ այլ արձանների:

Առանձին խոսակցության տեղիք է տալիս Գրիբոյեդովի արձանի ներկա դիրքը՝ «Ռոսիա» կինոթատրոնի առաջ: Երբ դեռ չէր երևում արձանի շարունակությունը կամ սկիզբը կազմող զբոսահամալիրի հսկայական բաց տարածությունը՝ որևէ առարկություն գտնել դժվար էր: Իսկ այժմ մեր մեծ ռուս բարեկամը մի տեսակ մեկուսի ու կողքի, մենակ է մնացել: Սա, իմ տպավորությամբ, այն դեպքը չէ, երբ ասիմետրիան մտածված ձևով արդարացնում է իրեն, որովհետև այդ կետում արձանը հուշահամալիրից դուրս է մնում: Ես ճարտարապետ չեմ, բայց մակետավորող **գագետչիկի** իմ աչքաչափը պահանջում է, որ արձանը մի քիչ ետ ու խորք տարվի, այնպես, որ օրգանապես մերվի համալիրին, «գլխավորի» այն, երևա ու բանուկ խաչմերուկի փոշիներից, գազախտերից հեռու լինի:

## ԱՆԱՆՈՒՆ ՓՈՂՈՑԸ

Բայց վերադառնանք այնտեղ, որտեղից ընկրսեցինք, այսինքն՝ այն փողոցը, որն ինձ գիշերային զբոսանքի ժամանակ այնպես անսպասելի տարավ հասցրեց ննջիների պուրակն ու այսքան շեղումների առիթ ու նյութ տվեց: Հուսով եմ՝ շեղումներս, որքան էլ ակամա, երևի, իզուր և անտեղի չէին...

Այսպես, ուրեմն, երբ քայլում էի այդ փողոցով, բնականաբար, ուզեցի իմանալ անունը: Եվ մի նոր խաչմերուկի անկյունային շենքի եզրին էմալապատ ցուցանակ տեսա: Դեռ հեռվից էլ թվաց, թե ցուցանակը կա, բայց անունը չկա, անգրել է մնացել: Երևի մութն է, մտածեցի, ու տառերը լավ չեն երևում: Մոտեցա: Ո՛չ, անգրել չէր, գրերի հետքեր կային, բայց լոկ այդքանը: Ոչինչ, մխիթարեցի ինքս ինձ, էլի ցուցանակ կհանդիպի, կիմանամ, թե ինչ փողոցով եմ քայլում: Սակայն ցուցանակները, որ չգիտես ինչու (երևի՝ խնայողական նկատառումներով), միայն խաչմերուկների անկյունային շենքերի եզրերին էին, բոլորն էլ նույն վիճակում գտա: Գնացի հասա ննջիների պուրակը և այդպես էլ չիմացա փողոցի անունը:

Վերադարձիս կտրեցի Կոմիտասի պողոտան, որոշելով անպայման բացել գաղտնիքը, շարունակեցի ճամփաս մինչև փողոցի վերջը: Ցուցանակները նույն վիճակում էին: Զարմանալի է, բայց այդպես էր: Հատուկենտ անցորդներ էին հանդիպում, ժամը 12-ն անց էր (իսկ մեր քաղաքում 10-ից հետո են փողոցները դատարկվում), ուզում էի ինքնուրույն պարզել առեղծվածը, առանց կողմնակի օգնության, և ոչ մեկին չդիմեցի, թե՝ ներեցեք, չե՞ք ասի ո՛ր փողոցն է սա: Զուզեցի գիշերվա կեսին ո՛չ զարմացնել, ո՛չ էլ զբաղեցնել որևէ մեկին: Էլի՛ խաչմերուկներ անցա, էլի՛ ցուցանակներ տեսա՝ ո՛րը բոլորովին մաքուր, ո՛րը նախկին գրերի թույլ նշմարներով...

Ինքս ինձ դրեցի մեկի տեղ, որն ուշ գիշերով մի ուրիշ քաղաքից եկել հասել է Երևան, բարեկամի հասցեն ծոցատետրում, իր կայտառ «Ժիգուլին» հեծած (և վա՜յ նրան, ով սեփական ոտքերին պիտի ապավինի կամ մեր տաքսիստներին, որոնք երբեմն զարմանալի վատ գիտեն մեր քաղաքը), փողոցից-փողոց է պտտվում և ոչ մի կերպ չի կարողանում գտնել փնտրած հասցեն: Մարդ չկա, որ հարցնի, ցուցանակներն էլ այդպես համր ու կույր, անօգտակար: Ու եկվորը հենց այս փողոցն է որոնում. ի՞նչ պիտի անի, գիշերվա 2-ին առաջին պատահած դռ՞ւռը թակի...

Չեմ ստուգել, բայց ամենայն հավանականությամբ, երևանյան դաժան կլիման, այրող արևն ու ավազախառն քամին, ցուրտ անձրևն ու մարդկային սառն անտարբերությունը ինչո՞ւ պիտի խնայած լինեն մյուս փողոցների նույն որակի ցուցանակների թույլ ներկը: Եթե բոլոր մյուս փողոցների ցուցանակները առողջ վիճակում լինեն՝ իմ պատկերացրած մարդը, մոտավորապես իմանալով թաղամասը, կարող է գոնե բացասման եղանակով գտնել որոնածը...

Բայց հանգիստ թողնենք այդ ուշացած այցելուին և շեշտենք, որ մենք մեր անուշադրության, մեր անտարբերության մեջ երբեմն շատ, զարմանալիորե՜ն շատ հետևողական ենք:

## ՀԱՐՈՒՍՏ ԵՆՔ, ԲԱՅՑ...

Չգիտեմ ովքեր են այս գործի տերն ու պատասխանատուն՝ քաղաքայի՞ն սովետը, թե շրջանայինը, երևի՝ երկուսն էլ իրենց չափով, բայց կարևորը դա չէ... Պարզ է, սակայն՝ միայն պողոտաները չէ, որ պիտի երկաթափոր ցուցանակներ ունենան: Ամերիկացիները մի ասացվածք ունեն. ես, ասում են, այնքան հարուստ չեմ, որ էժան գործ բռնեմ: Մոտավորապես այսպես է՝ մի քիչ ձևափոխված... Թե՞ մենք այնքան հարուստ ենք, որ կարող ենք տարին մեկ ցուցանակ փոխել կամ նորոգել, ինչպես վարվում ենք, օրինակ, մեր քաղաքի բազում փողոցների հետ...

Այո՛, հարուստ ենք, գիտե՛նք, բայց չէ՛ որ բանն այդ չէ, այլ այն, որ իրականում ո՛չ մեկն ենք անում, ո՛չ մյուսը: Այս տարվա ձյունառատ ու զարմանալի ձմեռվա ամիսներին՝ եթե մայրուղիներն ի վերջո որոշ ժամանակ մաքրվում-ազատվում էին ձնակույտերից, ապա դրանց հարևան շարքային ու երկրորդական փողոցներով քայլել չէր լինում: Իսկ արևոտ հալոցքներին կտուրների վրա կուտակված ձնաշերտերն ու սառցալուլաները քանի՜ անցորդի են վնաս հասցրել և քանի՞սն է լոկ թեթև վախով ազատվել: Իսկ երբ փողոցներն ազատվեցին այդ պինդ ու սառը կապանքներից՝ քանի՞ փողոցի ասֆալտ մնաց անվթար: Որքա՜ն տասնյակ ու հարյուր-հազարներ պիտի ծախսվեն դրանց նորոգման ու կարկատելու վրա: Ինչո՞ւ: Որովհետև հարուստ ենք, բայց անտնտեսվար, և ընդամենը մի քանի մայրուղի ունենք հիմնավոր ասֆալտած:

Այդ նույն վերաբերմունքի պատճառով է, որ մեր փողոցների ցուցանակները էմալապատ բծերի են վերածվում՝ զարդարելով քաղաքի խաչմերուկների անկյունային շենքերի եզրերը երկրորդական կամ շարքային փողոցներում: Ասե՛նք, պողոտաներին էլ երբեմն այնքան երես տվող չկա: Այն բազմահարկը, որտեղ ահա արդեն 9-րդ տարին է բնակվում եմ, իր չորս բլոկներից ոչ մեկի վրա ո՛չ հասցե ունի, ո՛չ համար, և Բարեկամության պողոտայի 70 շենքը կարելի է գտնել միայն հարցուփորձով կամ հանգամանալի նկարագրությամբ: Իսկ եթե մարդը չի սիրում դատարկ բաներով ուրիշ մեկին անհանգստացնե՞լ կամ պարզապես տրամադիր չէ՞ որևէ մեկի հետ, թեկուզ այդչափ աննշան, մի նյութի շուրջ խոսակցության բռնվել...

Ի՛նչ արած՝ պիտի հարցնես: Հարցնելով, ասում են, կարելի է ոչ միայն Երուսաղեմ հասնել:

## Ո՞ՒՐ ՀԱՍԱ Ի ՎԵՐՋՈ

Սակայն մոռացա ասել, թե ո՛ւր հասա ինքս ի վերջո:

Կոմիտասի պողոտան կտրել-անցնելով՝ իմ փողոցը գնաց հասավ ինչ-որ միահարկ երկար ու ձիգ գործարանատիպ շինության: Ծանոթ տեղ թվաց: Գնացի դեպի դարպասը, որպեսզի իմանամ, թե ինչն ինչոց է: Երկու կոլոտիկ շուն՝ մեկը գիրուկ. մյուսն ավելի նվազ, մեծ աղմուկով սկսեցին հաչել, խաթարելով համակ անդորրը, և ծուլորեն, անհամարձակ առաջանալ իմ կողմը: Սրանք էլ, երևի. պահակին արթնացնելու համար են, մտածեցի, և արհամարհելով դրանց հաչոցները, համարձակ մոտեցա շինության գլխամասին, որի ցուցանակին կարմիրով սևի վրա գրված էր՝ «Արաբկիրի կահույքի ֆաբրիկա»: Դե, իհա՛րկե. ժամանակին, շատ տարիներ առաջ այստեղ եմ գնել իմ գրապահարաններից երկուսը, որոնցից անչափ գոհ եմ, որպիսիք, սակայն, այլևս, ցավո՛ք, չեն արտադրում. մինչդեռ հենց այդպիսի գրապահարանների կարիքը հիմա էլ ունեմ ու, երևի, ոչ միայն ես...

ԻՄ ԳԻՇԵՐԱՅԻՆ ԶԲՈՍԱՆՔԻ այս տպավորությունները բնավ հակասական չեմ համարում, ոչ էլ կարելի է իբրև մանրուք գնահատել, այլապես չարժեր խոսել դրանց մասին: Հայտնի բան է. ինչպես ամեն մի մեծ գործ՝ այնպես էլ մեծ քաղաքը, որը մանավանդ անվերջ կառուցապատվում է ու բարեկարգվում, նաև մանրուքներով է իր դեմքը որոշում, իր գույնն ու նրբերանգները հաստատում: Քաղաքային ավանդույթները փոքր, աննշան թվացող մանրամասներից են առաջանում, բայց զարգանալով ու հաստատվելով, մեծ նշանակություն և խոր իմաստ են ձեռք բերում: Եվ մեծ գործերն էլ իրե՛նց հերթին՝ բայց մանրուքները ևս հեղինակություն ու համբավ են բերում, հիշողություն են ու սովորություն, վարք ու բարք, կենցաղ ու բնավորություն: Այո՛, քաղաքն էլ շնչավոր է, միլիոնասիրտ ու միլիոնաթոք, և նույնպես իր բնավորությունը պետք է ունենա: Իսկ ամեն բնավորություն իր վարկն ու հեղինակությունն ունի, իր բարի կամ տխուր համբավը: Եվ այդ նույն մանրուքները կարող են և վնասել, աղարտել ամենամեծ հեղինակությունն անգամ, օտարի ու սեփական աչքում գցել-ոտնահարել մեր ազգային արժանապատվությունը, հարված հասցնել մեր հայրենասիրական զգացումներին: Իսկ մեր քաղաքի բարի համբավն ու հատկապես քաղաքային հեղինակությունը պետք է բոլոր միջոցներով բարձրացնել, այո՛, նաև առաջին հայացքից փոքր ու աննշան թվացող գործերով:

**ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ**

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԸ

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՏԵՍԱԿԱՆ ժառանգության մեջ առանձնապես կարևորվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հեղափոխական երիտասարդական շարժման պրոբլեմը: Վերջինիս ուսումնասիրությանն է նվիրված պատմական գիտությունների դոկտոր Հ. Ա. Ավետիսյանի աշխատությունը, որը հրապարակել է Հայաստանի ԳԱ պատմության ինստիտուտը՝ ռուսերեն երկու գրքով*:

Աշխատությունն ընդգրկում է մոտ 40 տարվա պատմական ժամանակաշրջան՝ 1893—1930 թթ.:

Այդ դարաշրջանը կյանքի էր կոչել բազմաթիվ հակադիր ու հակամարտ քաղաքական կուսակցություններ ու հոսանքներ՝ ժամանակի սոցիալ-քաղաքական պրոբլեմների լուծման տարբեր տեսակետներով ու գործելակերպով:

Հեղինակին հաջողվել է ստեղծել ամբողջական, կուռ, գիտատեսական բարձր մակարդակով գրված ուսումնասիրություն: Հարուստ փաստական նյութի վերլուծման հիման վրա նա լուսաբանել է քննարկվող պրոբլեմը: Գրքում հանգամանորեն հետազոտված է Վ. Ի. Լենինի հիրավի տիտանական, բազմակողմանի տեսական ու պրակտիկ գործունեությունը, որը տոգորված էր երիտասարդությանը մարքսիզմով զինելու, նրան հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու, հեղափոխության մեջ ընդգրկելու և կյանքը սոցիալիստականորեն վերափոխելու նպատակով:

Դա ժամանակի հրամայական պահանջն էր, երբ երիտասարդական շարժումը, ինչպես նշում է հեղինակը, աստիճանաբար ազդեցիկ հասարակական ուժ էր դառնում: Եվրոպական մի շարք երկրներում ստեղծվել էին բանվորական երիտասարդական կազմակերպություններ, որոնք ձգտում էին միավորվել ո՛չ միայն ազգային, այլև ինտերնացիոնալ առումով: Հասարակական-քաղաքական կյանքի, հեղափոխական շարժման մեջ ընդգրկված երիտասարդությունը որոնումների մեջ էր: Այդ ժամանակաշրջանում զանազան հակապրոլետարական, հետադիմական ուժերը, քաղաքական կուսակցություններն ու հոսանքները փորձում էին ապակողմնորոշել երիտասարդությանը: Ռուսական էկոնոմիստները, միջազգային օպորտունիստները թերահավատ էին երիտասարդության նկատմամբ՝ ժխտելով նրա ակտիվ, հեղափոխական դերը հասարակական կյանքում: Էսէռներն ու տրոցկիստները, ընդհակառակը, իդեալականացնում ու բացարձակացնում էին երիտասարդության հեղափոխականությունը:

Այսպիսի բարդ պայմաններում պահանջվում էր Լենինի հանճարը, որպեսզի մերկացվեր երիտասարդության բոլոր կեղծ «բարեկամների» դիմակը: Լենինը բարձր էր գնահատում երիտասարդության դերն ու նշանակությունը հասարակական-քաղաքական կյանքում և հեղափոխական շարժման մեջ, շեշտում երիտասարդական ինքնուրույն կազմակերպությունների, միությունների ստեղծման անհրաժեշտությունը դասակարգային պայքարի հաջող ելքի համար: Բայց այդ պայքարը, սովորեցնում էր Լենինը, իր նպատակին կհասնի միայն այն ժամանակ, եթե այն սերտորեն կապվի պրոլետարական հեղափոխական շարժման հետ և ղեկավարվի մարքսիստական կուսակցության կողմից:

Միանգամայն այլ կերպ էին մտածում ու գործում այս հարցում II Ինտերնացիոնալի պարագլուխները և նրանց ռուսական կամակատար գործակիցները: Սրանք դեմ էին երիտասարդության ինքնուրույն միություններին, նրա հեղափոխական դաստիարակմանը և ընդհանուր պրոլետարական պայքարի մեջ ընդգրկմանը՝ ճնշվող մասսաների ազատագրման համար: Այդ օպորտունիստական գործիչները ջանում էին երիտասարդությանը հեռացնել հեղափոխական գործունեությունից, նրան ներ-

* Г. А. Аветисян. В. И. Ленин и пролетарский интернационализм в революционном молодежном движении, Изд. АН Арм. ССР, Ереван, 1979, Под знаменем пролетарского интернационализма, Изд. АН Арм. ССР, Ереван, 1982.



թարկել բուրժուական ազդեցությանը և այդպիսով թուլացնել դասակարգային պայքարի ճակատը: Նրանք ձգտում էին երիտասարդությանը պարփակել բուրժուական գաղափարախոսությամբ ներթափանցված նեղ կուլտուր-լուսավորչական երիտասարդական կազմակերպությունների շրջանակներում, զրկել նրանց միակ ճիշտ՝ մարքսիստական կուսակցության ղեկավարությունից:

Հանգամանորեն ցույց տալով Վ. Ի. Լենինի անհաշտ ու հետևողական սկզբունքային պայքարն այս և նման այլ սխալ տեսակետների ու գործելակերպի դեմ, Հ. Ա. Ավետիսյանը հիմնավորում է այն ճիշտ եզրահանգումը, որ աշխարհի երիտասարդական շարժման վիճակի խոր ուսումնասիրման հիման վրա, «Լենինը խորապես և հետևողականորեն մշակել է աշխատավոր երիտասարդության կազմակերպությունների կուսակցական ղեկավարման սկզբունքները, ստեղծել մի ամբողջական ուսմունք երիտասարդության տեղի ու դերի մասին՝ հեղափոխության մեջ և պրոլետարական պայքարի պայմաններում», և որ այդ ուսմունքն «ունի ոչ թե նեղ ազգային, այլ միջազգային նշանակություն»: Բոլշևիկյան կուսակցությունը հետևողական աշխատանք էր ծավալում երիտասարդությանը մարքսիզմ-լենինիզմով զինելու և պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո համախմբելու համար:

Հեղինակի ուշադրության կենտրոնում գերազանցապես մեր մեծ հայրենիքն է, առավելապես Անդրկովկասը, նրա եղբայրական ժողովուրդների հերոս զավակների անվեհեր գործունեությունը աշխատավոր մասսաներին, երիտասարդությանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի, լենինիզմի ոգով դաստիարակելու ասպարեզում:

Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին և տարիներին, երբ իմպերիալիստական պետություններն ու նրանց գաղափարախոսները հանուն իրենց նեղ դասակարգային նվաճողական շահերի ու նպատակների իրար դեմ էին հրահրել ու անարդարացի արյունահեղ պատերազմի հորձանուտը նետել միլիոնավոր աշխատավոր մասսաների, իսկ II Ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական կուսակցություններն ու նրանց պարագլուխները, հրաժարվելով իրենց նախկին հեղափոխական դիրքերից, գլորվել էին օպորտունիզմի գիրկն ու վերածվել սոցիալ-շովինիստների ու «հայրենիքի պաշտպանության» կեղծ լոզունգի ներքո փաստորեն նացիոնալիզմ էին քարոզում և նպաստում եղբայրասպան պատերազմին: Այդ պայմաններում Վ. Ի. Լենինը, բոլշևիկյան կուսակցությունը հետևողականորեն մերկացնում էին պատերազմի իմպերիալիստական՝ թալանչիական բնույթը, դիմակազերծում օպորտունիզմով վարակված II Ինտերնացիոնալի կեղծ հայրենասիրությունը և ցույց տալիս միակ ճիշտ ելքը:

Հայրենասիրականի, ազգայինի և ինտերնացիոնալի միասնության, փոխադարձ կապի ու փոխպայմանավորվածության, շովինիզմի ու նացիոնալիզմի դեմ անհաշտ պայքարելու անհրաժեշտության ոգով էր դաստիարակում Վ. Ի. Լենինը աշխատավորներին, երիտասարդությանը: Բոլշևիկյան կուսակցությունը աշխատանք էր ծավալում աշխատավորության, երիտասարդության շրջանում նաև Փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության ընթացքում, ձգտելով այն վերածել սոցիալիստականի: Այստեղ ցույց է տրված, որ երիտասարդական սոցիալիստական ու կոմունիստական շարժումը ծավալվել էր և՛ լայնքով, և՛ խորությամբ: Բարձր գնահատելով երիտասարդության հեղափոխական հնարավորությունները, հաշվի առնելով նրա շահերն ու պահանջները կապիտալիզմի բաստիոնը գրոհելու համար, բոլշևիկյան կուսակցությունը Լենինի գլխավորությամբ, աշխատավոր զանգվածների հետ միասին, ոտքի էր հանում նաև բանվորագյուղացիական երիտասարդությանը: Այդ գրոհի առաջին պանծալի հաղթանակը եղավ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը և սովետական կարգերի հաստատումը մեր երկրում՝ երկրագնդի մեկ վեցերորդ մասում:

Աշխատության մեջ հարուստ ու խոսուն փաստերով ցույց է տրված մեծ Հոկտեմբերի և նրա արգասիք սովետական պետության դերն ու նշանակությունը՝ հողագնդի աշխատավորներին ու երիտասարդությանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո համախմբելու գործում:

Աշխարհի ինտերնացիոնալ ուժերի, այդ թվում նաև երիտասարդության, համախմբման, նրանց պայքարը նպատակասլաց կազմակերպելու գործում հսկայական նշանակություն ունեցավ Լենինի ջանքերով ստեղծված III Կոմունիստական ինտերնացիոնալը, որին հեղինակը զգալի տեղ է հատկացրել: Քննարկելով Կոմինտերնի վեց կոնգրեսների (1919—1928 թթ.) աշխատանքը, Վ. Ի. Լենինի դերն ու նրա առաջին չորս կոնգրեսներում կարդացած զեկուցումների նշանակությունը, այստեղ նշված է, թե ինչպես էր տարբեր երկրներում երիտասարդությունը համախմբվում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո և կազմակերպչորեն ձևավորվում երիտասարդական հեղափոխական պրոլետարական միություններում, որոնք սահմանազատվում էին օպորտունիզմից և ակտիվ պայքար

մղում Կոմինտերնի սկզբունքների հաղթանակի համար:

Պայքարի ընթացքում երիտասարդության կոմունիստական շարժման մեջ թույլ էին տըրվում նաև «ձախության» մանկական հիվանդությանը հատուկ սխալներ, որոնց վերացման համար վճռական նշանակություն ունեցավ Լենինի **«Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ** աշխատությունը, որտեղ մեծ առաջնորդը, հենվելով բոլշևիզմի փորձի վրա, բացահայտեց այդ երևույթի վնասակարությունը, օգնեց այն հաղթահարելու և այդպիսով հսկայական դեր կատարեց համաշխարհային կոմունիստական շարժման գաղափարական և կազմակերպչական ամրապընդման գործում: «Բոլշևիկների բազմամյա փորձը,— գրում է հեղինակը,— դարձնելով եղբայրական կուսակցությունների սեփականությունը, Լենինը այդպիսով կատարեց Ռուսաստանի կոմունիստական կուսակցության ինտերնացիոնալ պարտքը միջազգային կոմունիստական շարժման հանդեպ, օգնեց նրանց հասկանալ իրենց սխալներն ու թերությունները, տիրապետել հասարակական երևույթները իսկապես մարքսիստորեն հասկանալուն»:

Հեղինակը երիտասարդության կոմունիստական ինտերնացիոնալը դիտում է որպես նոր ուղենիշ ամբողջ աշխարհի պրոլետարական երիտասարդության կյանքում, որպես իսկական հեղափոխական կազմակերպությունների ստեղծման լենինյան սկզբունքների հաղթանակ: Այս տեսանկյունով է դիտվում ու գնահատվում նաև տարբեր երկրներում ինքնուրույն կոմունիստական երիտասարդական միությունների առաջացումն ու գործունեությունը: Հեղինակը առանձնապես շեշտում է մեր երկրի կոմերիտմիության դերը, որը վառ օրինակ է բոլոր երկրների երիտասարդությանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու առումով:

Ուշագրավ է նաև գրախոսվող աշխատության գիտական ապարատը, մասնավորապես ծանոթագրությունները: Այստեղ, նշելով օգտագործված բազմաթիվ ու բազմազան աղբյուրներն ու գրականությունը, հեղինակը շատ դեպքերում դրանց տալիս է սեփական գնահատականներ, անում արժեքավոր ճշտումներ ու մեկնաբանություններ, որոնք օգնում են շարադրված նյութի ավելի խոր ըմբռնմանը:

Այդ ծանոթագրությունները փաստորեն ուսումնասիրվող պրոբլեմի աղբյուրագիտական և պատմագրական ակնարկ են և լրացնում են այն պակասը, որը, մեր կարծիքով, ընդհանուր առաջաբանի կամ ներածականի բացակայությունն է: Աշխատությունը չունի նաև վերջաբան-եզրակացություն, տեղ են գտել որոշ կրկնություններ:

Հ. Ա. Ավետիսյանի աշխատությունը զգալի ներդրում է սովետական պատմագիտության շատ կարևոր՝ լենինապատումի բնագավառում:

**Ն. Ա. ԹԱՎԱՔԱԼՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր**

---



---

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

---

*Հանձնված է շարվածքի՝ 18.05.83 թ.: Ստորագրված է տպագրության 7.06.83 թ.: ՎՖ 03750: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15832: Պատվեր 1403:*

---

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.